ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1961 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVIII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԱՆՀԱՂԹ ԴՐՈՇՈՎ

Մարդկության բազմադարյան պատմության ընթացքում ոչ մի ժողովուրդ չի ապրել այնպիսի մեծ իրադարձություններ, չի կատարել այնքան խոշոր գործեր, արտադրության և կուլտուրայի բոլոր բնագավառներում չի հասել այնպիսի փիթխարի հաջողությունների, որպիսի հաջողությունների հասել է մեր ժողովուրդը Սովետական իշխանության 44 տարիների ընթացքում: Պատմական մեծագույն նվաճումներով մեր երկրի աշխատավորները դիմավորում են ՍՄԿՊ *XXII* համագումարը, որը հանդիսանում է դարագլուխ կազմող մեծագույն իրադարձություն:

Գիտական կոմունիզմի նշանավոր փաստաթուղթը՝ ՍՄԿՊ նոր Ծրագիրը, որը կընդունի *XXII* համագումարը, հանդիսանում է ժողովրդի ամենանվիրական մտքերի և իղձերի, առաջավոր մարդկության ամենախիզախ երազանքների մարմնացումը:

Իր ժամանակին բուրժուազիան դեկլարացիա հռչակեց ազատության, հավասարության և եղբայրության մասին, բայց դրա փոխարեն ստեղծեց գիշատիչ կուտակման, էգոիզմի, շահագործման և ժողովրդի իրավազրկության հասարակություն: Իրականում բուրժուազիայի լոզունգները դարձան միայն կապիտալիստների դասակարգի շահերի արտահայտություն: Ազատությունը ազատություն եղավ շահագործողների համար: Բուրժուական հավասարությունը ավելի ուժեղացրեց աշխատավորների կեղեքումը: Իսկ եղբայրություն ամենևին չստեղծվեց մրցության ու կուտակման հասարակության մեջ:

Կապիտալիզմի օրոք մարդիկ եղբայրներ չդարձան, որովհետև այնտեղ իշխում է մարդը մարդու համար գայլ է դաժան օրենքը:

Մեր օրերի կոմունիստական մանիֆեստը՝ ՍՄԿՊ Ծրագիրը և՛ս մեկ խոշոր քայլ է դեպի իսկական ազատության, հավասարության ու եղբայրության հասարակությունը՝ դեպի կոմունիզմ: Ոչ մի ազնիվ մարդ չի կարող մեծագույն հպարտության զգացումով չլցվել դեպի կոմունիստները և ամենախոր հավատ չունենալ դեպի մարդկության լուսաշող ապագան, երբ Ծրագրի մեջ կարդա այն մասին, որ կոմունիզմը կատարում է բոլոր մարդկանց սոցիալական անհավասարությունից, ճնշման ու շահագործման բոլոր ձևերից, պատերազմի սարսափներից ազատելու պատմական միսիան և երկրի վրա հաստատում է Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն և Երջանկություն բոլոր ժողովուրդների համար:

Ավելի քան հարյուր տարի առաջ պրոլետարիատի մեծ ուսուցիչներ Կարլ Մարքսը և Ֆրիդրիխ Էնգելսը իրենց նշանավոր «Կոմունիստական մանիֆեստում» սահմանեցին պրոլետարիատի նպատակներն ու խնդիրները՝ հասարակությունը կոմունիստական սկզբունքներով վերակառուցելու համար մղվող պայքարում, նշեցին ապագա կոմունիստական հասարակության հիմնական գծերը և նրա կառուց-

ման ուղիները: Կոմունիստական պարտիայի հիմնադիր Վ. Ի. Լենինը, ստեղծագործաբար կիրառելով մարքսիզմը, մշակեց պրոլետարական ռևոլյուցիայի թեորիան և տակտիկան իմպերիալիզմի դարաշրջանում: Նրա ղեկավարությամբ մեր պարտիան մշակեց և իրականացրեց իր առաջին Ծրագիրը. Ռուսաստանի ռևոլյուցիոն բանվոր դասակարգը տապալեց ցարական ինքնակալությունը, ապա՝ բուրժուական կարգերը և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա: Պարտիան իրականացրեց նաև իր երկրորդ Ծրագիրը՝ կենսագործեց Մեծ Լենինի մշակած սոցիալիզմի կառուցման պլանը:

Ինդուստրիալ, տեխնիկական հզոր բազայի առկայությունը, պարտիայի միաձույլ համախմբվածությունը աշխատավոր մասսաների հետ, սովետական ժողովրդի հարաճուն սոցիալական և քաղաքական միասնությունը, մեր երկրի ժողովուրդների՝ պարտիայի կոփած անսասան բարեկամությունը, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի քաղաքական ու աշխատանքային բարձր ակտիվությունը, այս ամենը հուսալի երաշխիք են, որ հաջողությամբ կիրականանա նաև Կոմունիստական Պարտիայի երրորդ Ծրագիրը՝ կոմունիստական հասարակության կառուցման ծրագիրը:

Պարտիայի նոր Ծրագրի իրականացումը մի վիթխարի թռիչք կլինի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, ժողովրդի բարեկեցության, կուլտուրայի, մասսաների հասարակական հարաբերությունների և գիտակցության բնագավառում:

Տնտեսական բնագավառում պարտիայի և ժողովրդի գլխավոր խնդիրն է՝ երկու տասնամյակի ընթացքում ստեղծել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան: Այս խնդրի իրականացման շնորհիվ ՍՍՌՄ-ը կգերազանցի առավել զարգացած երկրների արդյունաբերական արտադրանքի մակարդակը և բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի չափով առաջին տեղը կգրավի աշխարհում: Դա հիմք կծառայի սոցիալիստական հասարակությունը վերափոխելու կոմունիստականի, հնարավորություն կտա առատորեն բավարարելու հասարակության և նրա բոլոր քաղաքացիների պահանջմունքները:

Ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման բնագավառում պարտիան համաշխարհային պատմական նշանակություն ունեցող խնդիր է դնում՝ Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակը կապիտալիզմի որևէ երկրի համեմատությամբ: ՍՍՌՄ ազգային եկամտի ծավալը առաջիկա 10 տարվա ընթացքում կավելանա համարյա 2,5 անգամ, իսկ 20 տարում՝ մոտավորապես 5 անգամ: Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները 20 տարվա ընթացքում կաճեն ավելի քան 3,5 անգամ, կլուծվի բնակարանային պրոբլեմը: Սովետական Միությունը կդառնա աշխարհում ամենակարճ և միևնույն ժամանակ ամենաարտադրողական և ամենից բարձր վարձատրվող աշխատանքային օրվա երկիր:

Այս բոլոր նվաճումները էլ ավելի ակնառու կերպով ամբողջ աշխարհին ցույց կտան սոցիալիստական հասարակական սիստեմի մեծագույն առավելությունը կապիտալիստական սիստեմի հանդեպ և երկրագնդի բոլոր անկյուններում նորանոր միլիոնավոր մարդիկ կգրավվեն սոցիալիզմի ու կոմունիզմի կողմը:

ՍՄԿՊ XXII համագումարը կլուծի սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման կարևորագույն խնդիրները: Պարտիան միջոցներ է ձեռք առնում ամրապնդելու սոցիալիստական պետությունը, որը ժողովրդի գլխավոր զենքն է կոմունիստական հասարակարգ կառուցելու, երկրի պաշտպանությունն ու անվտանգությունն ամրապնդելու, ամբողջ աշխարհում խաղաղությունը պահպանելու համար մղվող պայքարում: Միաժամանակ պարտիան նշում է, որ սկսվել է պետության՝ սոցիալիստական հասարակության աշխատավորների համաժողովրդական կազմակերպության վերաճելու պրոցեսը: Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման պրոցեսում պետական իշխանության օրգաններն աստիճանաբար կդառնան հասարակական ինքնավարության օրգաններ:

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումն ամենևին չի նշանակում պետական կարգապահության թուլացում: Ընդհակառակը, ավելի ու ավելի է ընդարձակվում աշխատավորների մասնակցությունը պետությունը կառավարելու գործում, բարձրացնում է յուրաքանչյուր աշխատավորի գիտակցական կարգապահությունը և պատասխանատվությունը հանձնարարված ամեն մի գործի նկատմամբ, բոլոր օրգանների, հիմնարկությունների և առանձին աշխատողների գործունեությունը դնում է ժողովրդի վերահսկողության տակ:

Ազգային հարաբերությունների բնագավառում ՍՄԿՊ XXII համագումարը նախատեսում է այնպիսի միջոցառումներ, որոնք էլ ավելի կամրապնդեն Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունն ու փոխադարձ օգնությունը, կնպաստեն ազգերի հետագա մերձեցմանը:

ՍՄԿՊ Ծրագրում նշված է, որ պարտիան առաջվա նման կիրառելու է այնպիսի քաղաքականություն, որը կապահովի բոլոր ազգերի ու ժողովուրդների հավասարությունը, լիովին հաշվի առնելով նրանց շահերը, սովետական բոլոր ազգերի էկոնոմիկայի և կուլտուրայի համակողմանի զարգացումը:

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության ճշտությունը կյանքն է հաստատել: Դա երևում է սովետական բոլոր ռեսպուբլիկաների, այդ թվում նաև Սովետական Հայաստանի աննախընթաց բարգավաճման օրինակով:

Սովետական իշխանության տարիներին ռուս ժողովրդի և մեր բազմազգ Հայրենիքի բոլոր ժողովուրդների անշահախնդիր օգնությամբ նախկին ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասից Հայաստանն այսօր դարձել է բարձր զարգացած ինդուստրիայով և սոցիալիստական գյուղատնտեսությամբ ռեսպուբլիկա, չտեսնված հաջողությունների է հասել ազգային կուլտուրայի ծաղկման բնագավառում:

Էլ ավելի հոյակապ հեռանկարներ է բացում ամբողջ սովետական ժողովրդի, ինչպես և մեր ռեսպուբլիկայի առջև Կոմունիստական պարտիայի XXII համագումարը:

Ահա թե ինչու աշխատավորներն ամենուրեք քաղաքական չտեսնված վերելքով և ստեղծագործական պաթոսով տոգորված՝ վիթխարի խանդավառությամբ պայքարում են արտադրական ցուցանիշները բարձրացնելու համար, հարգանքի տուրք մատուցելու հարազատ պարտիայի XXII համագումարը դիմավորում են առաջադրանքների և համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման հիանալի հաջողություններով: Հայաստանի Կոմպարտիայի վերջերս կայացած XXII համագումարը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեին զեկուցեց, որ ռեսպուբլիկայի աշխատավորներն արդյունաբերության համախառն արտադրանքի 1961 թ. 8 ամսվա պլանը կատարել են 102,4 տոկոսով:

Արդյունաբերական շատ ու շատ ձեռնարկությունների կոլեկտիվներ իրենց

կազմակերպված ու ստեղծագործական աշխատանքի շնորհիվ հրաշալի օրինակներ են ցույց տալիս պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման ուղղությամբ: Նրանք ամեն կերպ ձգտում են համախառն արտադրանքի 1961 թվականի 10 ամսվա պլանը կատարել հոկտեմբերի 17-ին՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի բացման օրը: Ավելին, առանձին առաջավոր ձեռնարկությունների ու ցեխերի կոլեկտիվներ, գործի դնելով բոլոր միջոցները, արդեն կատարել են իրենց ստանձնած պարտավորությունները: Այդպիսիներից է Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի № 1—5—6 ցեխի՝ Տ. Աճեմյանի ղեկավարած կոլեկտիվը, որը աշխատելով բարձր արտադրողականությամբ, պարտավորված ժամկետից շուտ՝ հոկտեմբերի 3-ին կատարեց 10 ամսվա պլանը:

ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ծավալված մրցությունում ստանձնած պարտավորությունները և պլանային առաջադրանքները հաջողությամբ կատարելու գործում հրաշալի օրինակներ են ցույց տալիս նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները: Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները հոկտեմբերի 5-ին զեկուցեցին պետությանը խաղողի վաճառքի առաջադրանքը ժամկետից շուտ կատարելու մասին: Նրանք պետությանը վաճառել են 15954 տոննա խաղող, պլանով նախատեսված 15175 տոննայի փոխարեն: Շրջանի խաղողագործները պարտավորվել են մինչև ՍՄԿՊ XXII համագումարի բացման օրը պետությանը լրացուցիչ վաճառել ևս 2500 տոննա խաղող:

ՍՄԿՊ XXII համագումարը կարևոր և բարդ խնդիրներ կդնի իդեոլոգիական աշխատանքի բնագավառում: Նոր մարդու՝ կոմունիզմ կառուցողի դաստիարակությունը պարտիան միշտ համարել է իր կարևորագույն խնդիրներից մեկը: ՍՄԿՊ նոր Ծրագրում նշվում է, որ կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում իդեոլոգիական աշխատանքն ավելի ու ավելի հզոր գործոն է դառնում: Որքան բարձր է հասարակության անդամների գիտակցականությունը, այնքան ավելի լրիվ և ավելի լայն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա ստեղծելու գործում, աշխատանքի կոմունիստական ձևեր և մարդկանց միջև նոր հարաբերություններ կարգացնելու գործում, և, հետևապես, այնքան ավելի արագ ու ավելի հաջողությամբ են լուծվում կոմունիզմի շինարարության խնդիրները:

Իդեոլոգիական աշխատանքի բնագավառում պարտիայի նշած խնդիրները
պարտիական կազմակերպություններից պահանջում են ուժերի ավելի մեծ լարում,
օգտագործելու իդեոլոգիական ներգործության բոլոր միջոցները, գտնելու պարտիա-
կան պրոպագանդիստական աշխատանքի նորանոր ձևեր ու մեթոդներ՝ կոմունիս-
տական շինարարության պրակտիկային և կյանքին ավելի մոտ կանգնելու համար:

Մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական բնույթը պահանջում է ստեղծագործական մոտեցում ունենալ նրա պրոպագանդային: Մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, գրականությունը, արվեստը, բանավոր պրոպագանդան, իդեոլոգիական բոլոր հիմնարկություններն ու կազմակերպությունները պետք է իրենց գլխավոր խնդիրը համարեն աշխատավորների դաստիարակությունը մարքսիզմ-լենինիզմի ոգով, բարձր գաղափարայնության և կոմունիզմին նվիրվածության ոգով: Պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունների գործունեության նպատակը պետք է լինի կոմունիստական վերաբերմունք դաստիարակել աշխատանքի հանդեպ՝ ապահովել անհատի համակողմանի և ներդաշնակ կարգացումը: Իդեոլոգիական աշխատանքի՝ դաստիարակության, կրթության, գիտության



և կուլտուրայի բնագավառներում պարտիայի կիրառած բոլոր միջոցները կստեղծեն հոգեկան կուլտուրայի իսկական հարստություն:

ՍՄԿՊ Ծրագրի նախագիծը՝ գիտական կոմունիզմի այդ հիանալի փաստաթուղթը իսկական համաժողովրդական քննարկման ենթարկվեց: Մեր ռեսպուբլիկայում Ծրագրի նախագծի քննարկմանը պարտիական ժողովներում մասնակցել են ավելի քան 160 հազար կոմունիստներ ու անպարտիականներ, դրանցից հանդես են եկել ավելի քան 11 հազար մարդ: Բացի դրանից ՍՄԿՊ Ծրագրի առթիվ աշխատավորները պարտիական օրգաններին և մամուլին տվել են մոտ 5 հազար առաջարկություն, դիտողություն ու լրացում, որոնցից ավելի քան 1500-ը տպագրվել են մամուլում, հաղորդվել ռադիոյով և հեռուստատեսությամբ:

Բոլոր հանդես եկողները միահամուռ կերպով հավանություն են տվել կոմունիզմի կառուցման մեծ ծրագրին: Քննարկման ժամանակ արված առաջարկություններն ու դիտողությունները տոգորված են հոգատարությամբ սոցիալիստական հասարակության շահերի նկատմամբ: Կոմունիզմի կառուցման ծրագրի իրականացումը հիրավի դարձել է համաժողովրդական գործ:

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պատմության մեջ առաջինն է ճանապարհ հարթում դեպի մարդկության լուսաշող ապագան՝ դեպի կոմունիզմ: ՍՄԿՊ XXII համագումարը հսկայական ազդեցություն կունենա ամբողջ մարդկության բախտի վրա, համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա՝ մոտեցնելով ամենաարդար և ամենամարդասիրական հասարակության՝ կոմունիզմի հաղթանակը: Աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց մեջ հիացմունք և խոր հարգանքի զգացմունք է հարուցում կոմունիստների պարտիան, որն իրեն նպատակ է դրել լիովին կենսագործել «Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար» լոզունգը:

Պարտիայի Ծրագրում նշվում է, որ Սովետական պետության ամրապնդումը, սոցիալիստական համաշխարհային սիստեմի ստեղծումը պատմական քայլեր են դեպի մարդկության դարավոր երազանքի իրագործումը՝ դեպի պատերազմների վերացումը հասարակության կյանքից: Պարտիան կրկին անգամ հայտարարում է ամբողջ աշխարհին, որ Սովետական Միությունը հետևողականորեն պահպանել և պահպանելու է տարբեր հասարակական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականությունը:

Սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը բարձրացնում է մեր երկրի միջազգային հեղինակությունը, աշխարհի բոլոր երկրների միլիոնավոր մարդկանց համակրանքն է հարուցում կոմունիզմի հանդեպ, որը ժողովուրդներին բերում է խաղաղություն ու երջանկություն:

Մեր երկրում կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը հաջողությամբ կկատարվի, որովհետև սովետական մարդիկ ՍՄԿՊ նոր Ծրագիրն ընդունում են որպես իրենց հարազատ գործ, որպես իրենց կյանքի մեծագույն նպատակ և ուժեր չեն խնայի նրա կենսագործման համար:

ՍՍՌՄ բոլոր ժողովուրդները մարքսիզմ-լենինիզմի անպարտ դրոշով, մեծագույն խանդավառությամբ և աննախընթաց ստեղծագործական սխրանքներով, իբրև մեկ մարդ միակամ դիմավորում են իրենց ավանգարդի՝ մեծագործ Կոմունիստական պարտիայի XXII համագումարը:

Մարքսիզմ-լենինիզմի այդ նույն անհաղթ դրոշը դեպի կոմունիզմ է առաջնորդում սոցիալիստական լագերի բոլոր ժողովուրդներին ու երկրագնդի բոլոր կեղեքվողներին:

---

# ԴԵՊԻ ՆՈՐ ԲԱՐՁՈՒՆՔՆԵՐ

Մարքսի ու էնգելսի հանճարով ավելի քան մեկ դար առաջ կյանքի կոչված կոմունիզմի կենսահաստատ ուսմունքը, հանձինս մեծ Լենինի ու նրա կոփած Կոմունիստական պարտիայի, իր կլասիկ կատարումն ու փայլուն զարգացումը գտավ քաղաքականապես հասուն Ռուսաստանի պատմության թատերաբեմում: Դյուցազնական պայքարով և անօրինակ վարպետությամբ կենսագործելով իր առաջին ու երկրորդ ծրագրերը, լենինյան պարտիան սովետական ժողովրդի անձնուրաց ջանքերով ավարտեց սոցիալիզմի լիակատար ու վերջնական կառուցման պատմական պրոցեսը:

Իսկ այժմ, երբ հին աշխարհի կեղեքվածները սոցիալիզմի հաղթական երթից ոգեշնչված ծառս են լինում իմպերիալիզմի մարդակուլ կարգերի դեմ, Սովետական Միության Կոմունիստական պարտիան աշխարհով մեկ հնչակեց մարքսիզմ-լենինիզմի վսեմ գաղափարներով տոգորված կոմունիզմի գործնական կառուցման անդրանիկ ծրագիրը: Ահա թե ինչու երկրագնդի առաջադեմ մարդկությունն ամենուր հափշտակված ուշադրությամբ է հետևում կոմունիզմ կառուցողների զարմանահրաշ սխրանքներին: Հպարտության խոր գիտակցությամբ պետք է նշել, որ հիմա, երբ սովետական ժողովուրդն այդ լուսապայծառ ծրագրի իմաստալի էջերից իր երջանկության բերկրանքն է կանխանաշակում, սոցիալիզմի ափերից այն կողմ տառապյալների ականջին ավելի ուժգին, ավելի հոգեբով են հնչում մեր պարտիայի նոր Ծրագրի անմար կոչերը, կոչեր, որոնք կապիտալիզմի մայրամուտն են ազդարարում:

Անսահման ոգևորիչ է քաղաքական այն մեծ ակտիվությունը, որով մեր Հայրենիքը դիմավորեց ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագիծը: Ինչպես ՍՍՌՄ մյուս ռեսպուբլիկաներում, այնպես և մեզ մոտ, ժողովուրդն արտակարգ գնծությամբ ընդունեց կոմունիզմի կառուցման այդ միանգամայն ռեալ, մեր երկրի պատմական հարուստ փորձով խորապես հիմնավորված պատմական Ծրագիրը:

Խիստ բնորոշ է, որ հրապարակման առաջին իսկ օրից, երջանիկ հասարակության ստեղծման այդ անփոխարինելի ուղեցույցն աշխատանքային նոր սխրանքների ալիք առաջացրեց աշխատավորական հոծ զանգվածների շրջաններում: Ինչպես պարտիական սկզբնական կազմակերպություններում, շրջանային ու քաղաքային կոնֆերանսներում, այնպես էլ ռեսպուբլիկայի հասարակական կազմակերպություններում, աշխատանքային բոլոր կոլեկտիվներում լայնորեն քննարկվեց և դեռևս շարունակվում է մեր դարաշրջանի պատմական այդ մեծ փաստաթղթի ուսումնասիրությունը:

Դրան զուգընթաց, ռեսպուբլիկայի պարտիական ժողովներում և կոնֆերանսներում հանգամանալի քննարկվեց ՍՄԿՊ նոր Կանոնադրության նախագիծը: Միահամուռ հավանություն տալով այդ դարակազմիկ փաստաթղթերին, կոմունիստները, հազարավոր անկուսակցական աշխատավորներ հանդես եկան իրենց ստեղծագործական խոհերով, առաջարկներով, լրացումներով և աշխատանքային նվիրաբերություններով:

Քաղաքական այն մեծ ակտիվությունը, որ հանդես բերին ռեսպուբլիկայի ութսուն հազարից ավելի կոմունիստներն ու աշխատավորական լայն զանգվածները հարազատ պարտիայի նոր Ծրագրի նախագծի առթիվ՝ լավագույն գրավականն է այն բանի, որ ներկա սերունդը հաջողությամբ պսակելով նոր հասարակության մեծ խարտիան, հենց ինքը կապրի կոմունիզմի պայծառ արևի ներքո:

Հայաստանի աշխատավորության կյանքում խոշոր և լուրջ իրադարձություն հանդիսացող ՀԿՊ XXII համագումարը, որը կայացավ ս. թ. սեպտեմբերի 21—23-ին, հատուկ քննության առավ ՍՄԿՊ նոր Ծրագրի ու Կանոնադրության նախագծերը: Ըստ արժանվույն դրվատելով ու գնահատելով դրանք, ՀԿՊ XXII համագումարը միահամուռ հավանություն տվեց պարտիական մեծագույն նշանակություն ունեցող այդ փաստաթղթերին, կոչ անելով պարտիական կազմակերպություններին և ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորներին՝ կոնկրետ գործերով և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարմամբ դիմավորել ՍՄԿՊ XXII համագումարը:

## I

Առաջնորդվելով ՍՄԿՊ XX և XXI համագումարների ծրագրային որոշումներով, Հայաստանի Կոմունիստական պարտիան և ռեսպուբլիկայի աշխատավորները սոցիալիստական տնտեսության բարգավաճման, աշխատավորների բարօրության բարձրացման և կուլտուրայի զարգացման բնագավառներում խոշոր նվաճումներ են ձեռք բերել հաշվետու ժամանակամիջոցում: Այդ իսկ հաջողություններից ելնելով համագումարը Կենտկոմի տարած աշխատանքը գտավ բավարար, միաժամանակ խորին երախտագիտությամբ ընդգծեց այն մեծ հոգատարությունը, որ ցուցաբերում են ՍՄԿՊ լենինյան Կենտկոմն ու Սովետական կառավարությունը մեր ռեսպուբլիկայի վերելքի նկատմամբ:

Խիստ ուշագրավ է, որ Հայաստանի կոմունիստները հերթական համագումար եկան իրենց շարքերի կուռ միասնությամբ, քաղաքական բարձր ակտիվությամբ և տնտեսական-կուլտուրական նշանակալի հասումներով:

Հանգամանորեն և գործարար մթնոլորտում քննարկելով Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի հաշվետվությունը, համագումարն ընթացավ կոմունիզմի կառուցման բուռն տեմպերի կենսագործման անհողդողդ պատրաստակամության նշանաբանով:

Հաշվետու ժամանակաշրջանում զգալիորեն գերակատարվել են արդյունաբերության համախառն արտադրանքի պլանները, անհամեմատ ընդլայնվել է արտադրության ծավալը, նկատելի քայլով առաջ է ընթացել տեխնիկական պրոգրեսի, արտադրական պրոցեսների ավտոմատացման ու արտադրության բոլոր տեղամասերի մեքենայացման կարևորագույն գործը, յուրացված են բազմաթիվ նոր մեքենաներ և սարքեր: Արտադրական նոր ձեռնարկությունների գործարկմանն ընթացակցել է նաև աշխատանքի արտադրողականության զգալի բարձրացումն ու նոր ռեզերվների արդյունավետ օգտագործումը:

Հաշվետու ժամանակաշրջանում ավելի են զարգացել ռեսպուբլիկայի գու-
նավոր մետալուրգիան, քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը,
ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը, և վերջապես, տնտեսու-
թյան էներգետիկ բազան: Միութենական կառավարության որոշմամբ մի շարք
միջոցառումներ են մշակված Սևանի պրոբլեմի վերջնական լուծման համար:

Համագումարը գոհունակությամբ նշեց այն վճռական դերը, որ խաղում
են արդյունաբերության զարգացման գործում բանվորները, ինժեներները,
տեխնիկները, գիտնականները, որոնք պատվով են կատարում իրենց առաջա-
դրանքները:

Այսուհանդերձ, ինչպես արձանագրեց համագումարը, մեր արդյունաբե-
րության զարգացման մեջ կան լուրջ թերություններ, հատկապես այն, որ
զգալի թվով արդյունաբերական ձեռնարկություններ սիստեմատիկորեն չեն
կատարում իրենց պլանները: Այդպիսիների թիվը ընթացիկ ութ ամսում կազ-
մում է 51: Աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջա-
դրանքները կատարվում են անբավարար, իսկ շատ ձեռնարկություններում
անթույլատրելիորեն միջին աշխատավարձի աճը գերազանցում է աշխատանքի
արտադրողականության աճին: Մի շարք ձեռնարկություններում ցածր է ար-
տադրանքի որակը, բարձր է ինքնարժեքը, դեռևս որոշ ձեռնարկություններ
գործում են անշահութաբեր, սահմանափակ է թողարկվող որոշ ապրանքների
տեսականին և այլն:

Ինչի՞ հետևանք են արդյունաբերության վերոհիշյալ գլխավոր թերություն-
ները: Այն բանի, որ ժողտնտխորհը և մյուս գերատեսչություններն անբավա-
րար են ղեկավարում իրենց իրավասության ձեռնարկությունները, տնտեսա-
վարման լուրջ գործում թույլ են տալիս սխալներ, դեռևս վատ են օգտագոր-
ծում եղած ռեզերվները, պատշաճորեն չեն գլխավորում մարդկանց ստեղծա-
գործական ակտիվությունը, արմատական և սիստեմատիկ միջոցներ չեն կի-
րառում նոր տեխնիկայի արմատավորման ասպարեզում: Սրանց հետ մեկտեղ,
հաճախ սխալ են տեղադրվում արդյունաբերության ղեկավար որոշ կադրեր,
որի հետևանքները բացասաբար են ազդում տնտեսության նորմալ աճի վրա:

Ի նկատի առնելով այս, համագումարը պարտիական կազմակերպություն-
ների գլխավոր խնդիրը համարեց՝ անընդհատ բարձրացնել աշխատանքի ար-
տադրողականությունը, ընդլայնել բոլոր ճյուղերի արտադրողական կարողու-
թյունները առհասարակ, գունավոր մետալուրգիայի, քիմիայի, մեքենաշինու-
թյան ու սարքաշինության՝ հատկապես, ավելի համարձակ կիրառել նոր տեխ-
նիկան ու տեխնոլոգիան, ընդլայնել թողարկվող արտադրանքի տեսականը,
թողարկել ավելի կատարյալ մեքենաներ և բարձրացնել ձեռնարկությունների
շահութաբերությունը:

Բացահայտելով ռեսպուբլիկայի արդյունաբերության ոլորտում տեղ գտած
լուրջ պակասությունները, համագումարը պարտավորեցրեց ժողտնտխորհին,
Պետպլանին, մինիստրություններին և պարտիական կազմակերպություննե-
րին՝ առաջիկայում ավելի բարձրացնել արդյունաբերության ղեկավարության
մակարդակը, առավել գործնական և բազմակողմանի դարձնել ձեռնարկու-
թյունների կազմակերպական-տեխնիկական կառավարումը, իսպառ վերացնել
պետական կարգապահության խախտման երևույթները: Ապահովելով արտա-
դրական ձեռնարկությունների կոոպերացումն ու մասնագիտացումը, տնտեսա-
վարները կոչված են արմատական միջոցներ ձեռք առնելու, որպեսզի 1962—



1965 թվականներին արդյունաբերական արտադրության աճը ռեսպուբլիկա-
յում կավելանա 1,8 անգամ:

Համագումարի այս որոշման իրագործումը թելադրում է ժողտնտխորհին,
Պետպլանին, մինիստրություններին ու գերատեսչություններին առաջիկայում
ավելի ռացիոնալ օգտագործել կապիտալ ներդրումները, ժամանակին գոր-
ծարկել ջերմաէլեկտրակայանները, ընդլայնել մետալուրգիայի հումքի պա-
շարների հայտնաբերման ծավալը, արագ թափով առաջ մղել քիմիական արդյու-
նաբերությունը:

Թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքի որակի բարելավումը,
ինչպես և տեսականու ընդլայնումը համարելով կարևոր՝ համագումարը
պարտավորեցրեց պարտիական և պետական ղեկավար մարմիններին հատուկ
հոգատարություն հանդես բերել սպառման ապրանքների թողարկման գործի
նկատմամբ, միջոցներ ձեռք առնել ապահովելու 1962 թվականի պետական
պլանների կատարումը արդյունաբերական բոլոր ձեռնարկությունների կողմից:

Հենվելով մասսաների քաղաքական և ստեղծագործական ակտիվության
վրա ու մոբիլիզացնելով աշխատավորների բոլոր ուժերը, պարտիական կազ-
մակերպությունները սպետք է հասնեն այն բանին, որպեսզի ռեսպուբլիկայի
արդյունաբերության և ոչ մի ձեռնարկություն ետ չմնա մեր առաջընթացից և
իր արժանի լուման մուծի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կա-
ռուցման մեջ:

Վերջին երկու տարիներում Հայաստանի աշխատավորությունը նշանակալի
հաջողություններ ձեռք բերեց շինարարության ասպարեզում: Բավական է նշել,
որ կարճ ժամանակամիջոցում ռեսպուբլիկայում կառուցվել են տասնյակ նոր
արդյունաբերական ձեռնարկություններ ու խոշոր ցեխեր, շահագործման են
հանձնվել հարյուր հազարավոր քառակուսի մետր բնակելի տարածություն,
բազմաթիվ դպրոցներ, բուժհիմնարկներ և կոմունալ-կենցաղային օբյեկտներ:

ՀԿՊ XXII համագումարը հիմնավոր քննադատության ենթարկեց Շինա-
րարության մինիստրության, ժողտնտխորհի Շինարարության վարչության և
Հայհիդրոէներգոշինի ղեկավարներին՝ շինարարության պլանների քանակական
և որակական կատարման անբավարար ցուցանիշների համար: Վեր հանելով
շինարարության բազմաթիվ և էական բացերը, վերահսկողության ծայրահեղ
անբավարար վիճակը ու շինանյութերի հափշտակման դեպքերը, համագումա-
րը Կենտրոնական Կոմիտեի և Մինիստրների Սովետի առջև խնդիր դրեց
«...վճռական միջոցներ ձեռք առնել արմատախիլ անելու եղած լուրջ թերու-
թյունները...»: Պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեներին համագու-
մարը պարտավորեցրեց արմատապես բարելավել շինարարության ղեկավա-
րությունը և ուժեղացնել պահանջկոտությունը շինարարության կադրերի հան-
դեպ:

Հավաստելով ռեսպուբլիկայի նվաճումները տրանսպորտի ասպարեզում,
համագումարը նշեց դրա հետագա բարձրացման կոնկրետ միջոցները:

## II

Ռեսպուբլիկայի գյուղի աշխատավորների ջանքերի շնորհիվ, վերջին եր-
կու տարիներում գյուղատնտեսության ասպարեզում զգալի հաջողություններ
ունեցանք: Զարգացավ խաղողագործությունը, պտղաբուծությունը, ծխախոտա-

գործությունը և բանջարաբուծությունը, անեց գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրությունը: Տակավին անցյալ տարի բամբակի ու ծակնդեղի արտադրության ասպարեզում ռեսպուբլիկան հասավ յոթնամյակի վերջին տարվա մակարդակին: Անասնաբուծական մթերքների անմամբ, ոռոգելի հողատարածությունների ընդարձակումով, 35 նոր սովխոզների կազմակերպմամբ, գյուղատնտեսության մեքենայական բազայի ընդարձակմամբ, կոլտնտեսությունների ու սովխոզների գրեթե լրիվ էլեկտրիֆիկացմամբ է բնորոշվում մեր գյուղատնտեսության առաջընթացը հաշվետու ժամանակաշրջանում (1960—1961 թթ.):

Բարձր գնահատելով սոցիալիստական գյուղի աշխատավորության արդյունավետ ջանքերը, համագումարը միաժամանակ շեշտեց, որ գյուղատնտեսության ղեկավարման գործում դեռևս կան լուրջ թերություններ ու վրիպումներ: Պարտիային խորապես անհանգստացնում է այն վիճակը, երբ անասնաբուծական մթերքների արտադրությունը ետ է մնում յոթնամյա պլանով սահմանված տեմպերից, երբ դեռ խախուտ է անասնակերի բազան, երբ անասունների անկումը արգելակում է անասնաբուծության նորմալ վերելքին:

Նշելով 1960 թվականի վերջերի ու 1961 թվականի երաշտի հարուցած լուրջ դժվարությունները գյուղի զարգացման գործում, համագումարը դատապարտեց ճավելագրումների, աչքակապությունների պրակտիկան Ազիզբեկովի, Արտաշատի, Իջևանի, Թալինի, Ախուրյանի, Կոտայքի և մի քանի այլ շրջաններում: Չի կարելի հաշտվել այն վիճակի հետ, երբ մինչև այժմ շատ սովխոզներ գործում են անշահութաբեր, երբ բազմաթիվ կոլտնտեսություններ և սովխոզներ շարունակում են մնալ տնտեսապես թույլ: Գյուղատնտեսական աշխատանքի ցածր արտադրողականությունը և մթերքների բարձր ինքնարժեքը վկայում են այն մասին, որ դեռևս հսկայական գործ պետք է կատարվի պարտիայի կանխագծումները կատարելու համար:

Արդյունաբերությանը բարձրորակ հումք և քաղաքի բնակչությանը կենսամթերքներ հայթայթելու պետական պլանն ու պարտավորությունները կատարելով հանդերձ, այժմ իսկ պետք է եռանդուն միջոցներ ձեռք առնել ապահովելու գյուղատնտեսական արտադրության բոլոր աշխատանքների ժամանակին ու բարձր որակով կատարումը:

Գյուղատնտեսության մարզի ղեկավարները պետք է լավ հիշեն, որ համագումարը պահանջեց առաջիկա երեք-չորս տարում կոշտ կերի արտադրությունն ավելացնել 2 անգամ, հյութալի ու խտացրած կերինը՝ 3 անգամ. ստանալ ու պահպանել՝ 100 կովից առնվազն 90 հորթ, 100 մաքիից՝ 95 գառ, 100 մերուից՝ 1200—1400 խոճկոր:

Ռեսպուբլիկան 1965 թվականին պետք է արտադրի 231 հազար տոննա խաղող և 95 հազար տոննա պտուղ:

Անտարակույս, հենված մասսաների ստեղծագործական նախաձեռնության, տեխնիկայի ու գիտության նորագույն նվաճումների կիրառման և արտադրության բոլոր պրոցեսների բարձր կազմակերպման վրա, պարտիական, պետական և հասարակական կազմակերպությունները պատվով կկատարեն սոցիալիստական գյուղատնտեսության արագ զարգացման վերաբերյալ ՀԿՊ XXII համագումարի որոշումները:

Այն մեծ ու դժվարին խնդիրները, որոնք համագումարի կողմից դրվեցին գյուղի աշխատողների առջև, կարող են հաջողությամբ լուծվել, եթե պարտիա-



կան և սովետական օրգանները շուտափույթ ավարտեն գյուղատնտեսական մարմինների վերակազմումը, ապահովեն վերջիններիս արդյունավետ գործունեությունը և, մանավանդ, հաղթահարեն կոլտնտեսությունների ու սովխոզների ետ մնալը, իրոք բարձրացնեն գյուղատնտեսության ղեկավարության մակարդակը՝ գիտության վերջին խոսքի համաձայն:

## III

ՀԿՊ XXII համագումարը գոհունակությամբ նշեց այն նվաճումները, որոնք ձեռք են բերված ժողովրդի բարօրության անման ասպարեզում: Արդեն ռեսպուբլիկայի բոլոր ձեռնարկությունները անցել են 6—7 ժամյա կրճատ աշխատանքային օրվա. զգալիորեն կարգավորվել է աշխատավարձը. բարձրացվում է ցածր վարձատրվողների աշխատավարձը, պլանաչափ վերացվում են հարկերը, մեծանում է ազգային եկամուտը, անում են աշխատավորների եկամուտները, ավելանում է ապրանքաշրջանառությունը գյուղում և քաղաքում:

Բավական է ասել, որ 1960 թվականին և 1961 թվականի առաջին կիսամյակին պետական միջոցների հաշվին ռեսպուբլիկայում շահագործման է հանձնրվել 543 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, չհաշված աշխատավորների կառուցած սեփական տները, նոր դպրոցներ, բուժհիմնարկներ, կոմունալ-կենցաղային և կուլտուրական սպասարկման օբյեկտներ: Գազիֆիկացիան և կոմունալ տրանսպորտի ծավալումը զգալիորեն նպաստում են բնակչության բարեկեցության բարձրացմանը:

Այս խոշոր հաջողությունների հետ մեկտեղ, համագումարը նշեց, որ աշխատավորների սպասարկման գործում լուրջ թերություններ կան: Դրանք հատկապես աչքի են զարնում առևտրի ոլորտում, որտեղ ցածր է կուլտուրան և անբավարար է հասարակական սննդի դրվածքը: Ահա թե ինչու համագումարը պահանջեց պարտիական և սովետական համապատասխան օրգաններից արմատապես բարելավել առևտրի ու հասարակական սննդի գործը:

Զնայած աշխատավորության բուժսպասարկման մասնակի բարելավմանը, ռեսպուբլիկայում դեռևս ցածր է այդ սպասարկման ողջ դրվածքը, թույլ է Առողջապահության մինիստրության և տեղական Սովետների գործկոմների օգնությունը բուժհիմնարկներին: Աշխատավորների նորմալ բուժսպասարկմանը նպատակով համագումարը գտավ անհրաժեշտ ընդլայնելու այդ ցանցը, բարելավելու կուրորտները և բժշկական գիտության նորագույն նվաճումների արմատավորումը բուժման պրակտիկայում:

Համագումարը հատուկ ուշադրություն հատկացրեց մատաղ սերնդի կրթության և կոմունիստական դաստիարակության կենսական հարցերին: Պարտավորեցնելով պարտիական և սովետական օրգաններին ամենօրյա հոգատարություն ցուցաբերել դպրոցների կարիքների հանդեպ, համագումարը հանձնարարեց Ժողտնտխորհին, Պետպլանին, Լուսավորության մինիստրությանն ու տեղական Սովետներին՝ լրջորեն զբաղվել սովորողների ուսումնական պրակտիկայի, դպրոցների արտադրական բազայի, մանկավարժների որակավորման և տեղաբաշխման հարցերով: Արմատապես բարելավելով բանվոր և գյուղական երիտասարդության դպրոցների աշխատանքը, անհրաժեշտ է միաժամանակ միջոցներ ձեռք առնել միջնակարգ կրթություն չունեցող բոլոր աշխատող երիտասարդներին երեկոյան դպրոցներում ընդգրկելու համար:

Անցած երկու տարիներում նկատելի աշխատանք է կատարվել ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունների վերակառուցման, կյանքի հետ նրանց կապն ամրապնդելու ուղղությամբ: Սակայն, այսօր էլ դեռևս թույլ է կազմակերպված ուսանողների արտադրական ուսուցումը: Բանն այն է, որ մինչև հիմա մի շարք բուհերում և տեխնիկումներում առանձին առարկաների ավանդումը չի դրված պատշաճ բարձրության վրա: Բուհերի և միջնակարգ մասնագիտական դպրոցների գործունեության բարելավման նպատակով համագումարը պարտավորեցրեց Բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության կոմիտեին, պարտիայի քաղաքային կոմիտեներին, ժողտնտխորհին և մինիստրություններին կոնկրետ միջոցներ մշակել՝ ուսման որակը բարձրացնելու, ուսումնական հաստատությունների երեկոյան և հեռակա բաժանմունքների գործունեությունը իսկապես նորմալ դարձնելու համար:

Բարձր գնահատելով ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական հաստատությունների աշխատանքի արդյունքները, ՀԿՊ XXII համագումարը միաժամանակ արձանագրեց, որ «...գիտական հետազոտությունները դեռևս ետ են մնում ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջմունքներից»: Առկա են անարժեք թեմաների մշակում, բազմաթեմայնություն, հետազոտությունների ավարտման ժամկետների ձգձգում և միջոցների մանրացում, պահանջվելիք կոորդինացման պակասություն և հետազոտությունների կիրառման դանդաղություն: Այս և մի շարք այլ պակասությունների, ինչպես նաև գիտական կադրերի պատրաստման գործում նկատված թերությունների վերացման համար համագումարը հանձնարարեց համապատասխան օրգաններին արմատապես բարելավել գիտական հիմնարկների գործունեությունը և խնդիր դրեց գիտնականների առջև՝ անդուլ պայքարել սովետական գիտության գրաված առաջավոր դիրքերն ավելի ամրապնդելու համար:

## IV

Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXI և XXII համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում զգալիորեն աճեցին նրա շարքերը, բարելավվեց կազմակերպական ու գաղափարական աշխատանքը:

Չնայած այն բանին, որ վերջերս պարտիայի քաղկոմներն ու շրջկոմները նկատելիորեն ուժեղացրել են իրենց քաղաքական ու կազմակերպչական գործունեությունը, բայց և այնպես մի շարք շրջկոմների պրակտիկայում կան լուրջ թերություններ, «...չեն բացառվել ղեկավարման լենինյան սկզբունքների խախտման դեպքերը»: Մյուս կողմից, պարտիայի որոշ քաղկոմներ և շրջկոմներ (Երևանի Ստալինյան, 26 կոմիսարների անվան շրջկոմները, Լենինականի քաղկոմը, Ղափանի, Մեղրու շրջկոմները) թույլ են զբաղվում էկոնոմիկայի հանգուցային հարցերով և անհրաժեշտ միջոցներ ձեռք չեն առնում «...արդյունաբերական ձեռնարկությունների ետ մնալը հաղթահարելու և տրանսպորտային կազմակերպությունների աշխատանքը բարելավելու համար»:

Ղեկավար կադրերի սխալ տեղադրման և պատշաճ հսկողության բացակայության հետևանքով «...մի շարք ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների ղեկավարներ կանգնեցին պետությանը խաբելու, հավելագրումների, աչքակապության, պետական ունեցվածքը վատնելու ուղու վրա»:



Այս արատավոր երևույթները խոսում են այն մասին, որ քաղկոմներն ու շրջկոմները, ինչպես նաև սկզբնական պարտկազմակերպությունները երբեմն խախտում են կադրերի ընտրության և տեղադրման պարտիական սկզբունքը:

Լենինն ուսուցանում էր. «Պետական հիմնարկի ղեկավարը պետք է վերին աստիճանի ընդունակ լինի իր կողմը գրավելու մարդկանց և ունենա գիտական ու տեխնիկական բավականաչափ սոլիդ գիտելիքներ նրանց աշխատանքը ստուգելու համար: Սա՝ որպես հիմնականը: Աշխատանքն առանց դրա չի կարող ճիշտ լինել: Մյուս կողմից, շատ կարևոր է, որ նա կարողանա կառավարել և այդ գործում ունենա արժանավոր օգնական կամ օգնականներ» (հատոր 36, էջ 695):

Երբ մեր գործունեության բոլոր ոլորտներում չխախտենք աշխատողի արժանիքները գնահատելու լենինյան վերոհիշյալ սկզբունքը և կադրերը տեղադրելիս ի նկատի ունենանք նրանց՝ 1) մարդկանց գրավելու ունակությունը, 2) գիտական ու տեխնիկական սոլիդ գիտելիքները, և 3) գործը վարելու կարողությունը, ապա թերությունները մեծապես կնվազեն, սխալները կպակասեն: Մեր պարտքն է՝ ճշտությամբ կիրառել Լենինի վերոհիշյալ ցուցումը:

Ուստի բնական է, որ համագումարը ռեսպուբլիկայի պարտիական օրգանների կարևորագույն խնդիրը համարեց՝ ապահովել կադրերի նկատմամբ ցուցաբերելիք խստապահանջություն, պատասխանատվության զգացմունքի ներարկում, կարգապահության խստիվ պահպանում, երիտասարդ և հին կադրերի խելացի զուգորդում:

Մեր առջև ծառացած վիթխարի տնտեսական խնդիրների լուծումը հնարավոր չէ առանց պարտիական ղեկավարության ձևերի ու մեթոդների կատարելագործման, քննադատության և ինքնաքննադատության ծավալման, ներպարտիական դեմոկրատիայի ընդլայնման, կոմունիստների ավանգարդային դերի պահպանման:

Շնորհիվ այն բանի, որ վերջին տարիներս ընդլայնվեցին արհմիութենական կազմակերպությունների իրավունքներն ու ֆունկցիաները, զգալիորեն բարձրացավ և նրանց դերը արտադրական և կուլտուր-կենցաղային հարցերի լուծման բնագավառում, շոշափելիորեն բարելավվել է նրանց գործունեությունը: Հաղթահարելով իրենց անբավարար ձեռներեցությունը և աշխատանքի թույլ թափը, արհմիությունները պետք է վերացնեն իրենց գործունեության թերությունները, «...ավելի ձեռներեցությամբ և ստեղծագործաբար զբաղվեն բանվորների և ծառայողների աշխատանքի ու կենցաղի հարցերով»:

Զարգացման տվյալ էտապում, երբ վճռական նշանակություն է ձեռք բերում նոր մարդու գաղափարական ձևավորման հարցը, պարտիական կազմակերպությունները կոչված են անպայման ուժեղացնելու լենինյան կոմերիտմիությանը ցույց տրվելիք պարտիական ղեկավարությունը, որպեսզի նա կարողանա ավելի արդյունավետ կատարել երիտասարդությանը կոմունիզմի գիտակից կառուցողներ կոփելու իր կարևորագույն դերը, որպեսզի պատանեկության և երիտասարդության կրթության և դաստիարակության գործը ամբողջովին տոգորված լինի կոմունիզմի լուսավոր իդեալներով:

Պետական ապարատի գործունեության լիակատար բարելավումը պահանջում է վճռականորեն արմատախիլ անել բյուրոկրատիզմը, ֆորմալիզմը, քաշքշուկը: Այս առնչությամբ համագումարը պարտավորեցրեց ՀԿՊ Կենտկոմին, պարտիայի քաղկոմներին ու շրջկոմներին «...ամենօրյա աշխատանք կատարել

պետական ապարատի հետագա ամրապնդման, նրա աշխատանքի մեթոդների կատարելագործման և արդյունավետության բարձրացման ուղղությամբ: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ պետական յուրաքանչյուր հիմնարկ ժամանակին և ճշտորեն կատարի պարտիայի ու կառավարության որոշումները»:

## V

Հայաստանի Կոմունիստական պարտիայի ձեռք բերած հաջողություններից է նաև աշխատավորների մարքս-լենինյան դաստիարակության նշանակալի ծավալումն ու խորացումը: Համագումարը հատկապես նշեց, որ այժմ պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի հիմքում դրվել է ՍՄԿՊ նոր Ծրագրի ու Կանոնադրության նախագծերի ուսումնասիրությունը: Ակներև է, որ հաշվետու ժամանակամիջոցում նկատելիորեն բարելավվել է կադրերի տնտեսագիտական ուսուցման վիճակը, ընդլայնվել է պարտիական լուսավորության ցանցը, աճել է պրոպագանդիստների թիվն ու գաղափարական մակարդակը:

Բայց այժմ ռեսպուբլիկայում գաղափարական աշխատանքի մակարդակը չի համապատասխանում պարտիայի արդի պահանջներին, ասված է համագումարի բանաձևում: Դեռևս կան պարտիական օրգաններ, որոնք անբավարար են զբաղվում գաղափարական պայքարի, պրոպագանդայի և ագիտացիայի հրատապ հարցերով: Որոշ տեղերում գաղափարական աշխատանքը տոգորված չէ պարտիայի առջև ծառացած տնտեսական շինարարության, կյանքի կարևորագույն խնդիրների ոգով: Տնտեսության բնագավառում առաջավոր հարուստ փորձն ամենուր չի պրոպագանդվում բավարար հետևողականությամբ:

Ահա թե ինչու համագումարը պարտավորեցրեց ՀԿՊ Կենտկոմին, քաղկոմներին և շրջկոմներին «...հաղթահարել գաղափարական աշխատանքի ետ մնալը, ամբողջ պրոպագանդիստական աշխատանքը կառուցել տնտեսական և կուլտուրական շինարարության կոնկրետ փորձի վրա, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման խնդիրների, մարքս-լենինյան տեսության կենսագործման վրա»:

Ընդգծելով, որ կոմունիզմ կառուցող մարդու դաստիարակությունը պետք է սերտորեն ներդաշնակվի նրա հանրօգուտ աշխատանքի հետ, համագումարը դատապարտեց որոշ պարտիական, պետական օրգանների հաշտվողական վերաբերմունքը գողերի, պորտաբույծների, սոցիալիստական համակեցության խախտողների նկատմամբ: Պարտիական, սովետական և վարչական օրգանները, հենված հասարակական կազմակերպությունների և աշխատավորների լայն աջակցության վրա, պետք է ուժեղացնեն պայքարը հակահասարակական երևույթների դեմ, արմատախիլ անելով դրանք իրականությունից:

Ապագայի մարդու ձևավորման և առհասարակ մեր գաղափարական աշխատանքի առաջնահերթ խնդիրներից է աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, որը եղել է և մնում է պարտիական աշխատանքի անքակտելի օղակներից մեկը, որի իրականացմանը մեծապես նպաստում են մեր մամուլը և ռադիոն: Կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանի պատմական խնդիրների լուծումը հրամայաբար թելադրում է մեր մամուլի, ռադիոյի, կուլտուրայի բնագավառի բոլոր հաստատություններին ու մարմիններին համառ և սիստեմատիկ աշխատանքով դաստիարակելու սովետական մարդ-



կանց մարքս-լենինյան գաղափարախոսությամբ, սոցիալիստական Հայրենիքի նվաճումները մինչև վերջ պաշտպանելու պատրաստակամության ոգով:

«Մենք պետք է ուժեղացնենք գաղափարական-քաղաքական աշխատանքը ինտելիգենցիայի շրջանում,—նշեց ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Զարոբյանը ՀԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— նրան ավելի ակտիվորեն ներգրավենք մասսաների հետ կատարվող պրոպագանդիստական-դաստիարակչական աշխատանքում և պայքարի հանենք կոմունիզմի կառուցման հոյակապ խնդիրների իրականացման համար»:

Անդրադառնալով գրականության և արվեստի զարգացմանը, համագումարը նշեց, որ սովետահայ գրականությունն անբավարար է արտացոլել բանվոր դասակարգի կյանքն ու աշխատանքը: «Գրականության և արվեստի հաջող ստեղծագործությունների կողքին լույս են տեսել նաև գաղափարական, գեղարվեստական տեսակետից թույլ, անգույն երկեր, որոնք վնասում են և գրականության զարգացմանը և սովետական մարդու դաստիարակության գործին»: Գրականության բարգավաճման գործին զգալիորեն խանգարում է գրաքննադատության կյանքից ետ մնալու հանգամանքը:

Հետագայում ևս պայքարը, հանուն գրականության և արվեստի պարտիականության ու գաղափարայնության, մնում է պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի կարևորագույն խնդիրներից մեկը: Այդ իսկ նկատառումով, համագումարը Կենտկոմին, քաղկոմներին և շրջկոմներին առաջարկեց՝ «...բարձրացնել գաղափարական ստեղծագործական աշխատանքը» բոլոր ստեղծագործական միություններում, թատրոնում և կինոստուդիայում և հասնել նրան, որ արվեստի երկերում վարպետորեն և ճշմարտացի արտացոլվեն մեր օրերի սովետական մարդկանց հերոսական աշխատանքն ու կյանքը:



ՀԿՊ XXII համագումարը գոհունակությամբ նշեց հայ ժողովրդի բախտի նկատմամբ ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետական կառավարության ցուցաբերած հոգատարությունը, որի շնորհիվ մոտ ժամանակներս կսկսվի արտասահմանյան հայերի նոր մասսայական վերադարձը Սովետական Հայաստան: Այս առումով, համագումարը հանձնարարեց պարտիայի Կենտկոմին և Մինիստրների Սովետին, օրինակելիորեն նախապատրաստել մեր եղբայրների ու քույրերի ընդունումը, նրանց համար ստեղծելով բնակարանային, կենցաղային ու աշխատանքային նորմալ պայմաններ:

Հանրագումարի բերելով ռեսպուբլիկայի հոյակապ նվաճումները, համագումարը պատշաճ կոնկրետությամբ մշակեց այն միջոցառումները, որոնք կապահովեն ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի հետագա բուռն ծաղկումը: Միաժամանակ համագումարը հաստատ հույս հայտնեց, որ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները, սերտորեն համախմբված ՍՄԿՊ լենինյան Կենտկոմի շուրջը, ջանքերի ստեղծագործական լարումով և կազմակերպական հուժկու թափով, ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների հետ ձեռք-ձեռքի տված առաջ կմղեն կոմունիզմի կառուցման վեհ գործը:

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՇԱՐԺՈՒՄՆ ԱՆՊԱՐՏԵԼԻ Է

«Բոլոր երկրների պրոլետարների քաջարի և անձնվեր պայքարը մարդկությանը մոտեցրեց կոմունիզմին: Սկզբում տասնյակ ու հարյուրավոր, ապա հազարավոր ու միլիոնավոր մարդիկ, ոգեշնչված կոմունիզմի իդեալներով, գրոհի գնացին ընդդեմ հին աշխարհի: Փարիզի Կոմունան, Հոկտեմբերյան ռևոլյուցիան, սոցիալիստական ռևոլյուցիաները Չինաստանում և Եվրոպայի ու Ասիայի մի շարք այլ երկրներում՝ սրանք են կոմունիզմի հաղթանակի համար միջազգային բանվոր դասակարգի մղած հերոսամարտերի պատմական կարևորագույն սահմանագծերը: Անցել ենք ժողովրդի երջանկության պայքարի մարտիկների արյունով ողողված հսկայական մի ուղի, փառապանծ հաղթանակների և ժամանակավոր պարտությունների ուղի, մինչև որ կոմունիզմը, որը մի ժամանակ սոսկ ուրվական էր թվում, դարձավ արդիականության մեծագույն ուժը, մի հասարակարգ, որը կառուցվում է երկրագնդի հսկայական տարածություններում». (ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻՑ):

*Այս օրերին համաշխարհային հասարակայնության, աշխարհի բոլոր առաջադեմ մարդկանց ուշադրությունը գամված է առաջինը կապիտալիզմի ճակատը ճեղքած և դեպի կոմունիզմ մեծ ճանապարհը բացած երկրի մայրաքաղաք Մոսկվային: Երկրագնդի բոլոր մասերում ունկնդրում են Մոսկվայի ձայնին, սպասում այնտեղ գումարվող կոմունիստների պարտիայի գերագույն մարմնի որոշումներին: Մեր պարտիայի XXII համագումարը հիրավի համաշխարհային պատմական նշանակություն կունենա: Ամփոփելով և ընդհանրացնելով ՍՄԿՊ նոր Ծրագրի ու Կանոնադրության նախագծերի համապարտիական, համաժողովրդական քննարկումը, համագումարը կյանքի կկոչի կոմունիստական հասարակարգի կառուցման գործնական պլանները:*

*Գիտական կոմունիզմի հայտնի թեզն ասում է, որ գաղափարները նյութական ուժ են դառնում, երբ տիրապետում են մասսաներին: Այժմ, հենց կոմունիզմի կառուցման պրակտիկայի ազդեցության տակ ավելի արագ, քան երբեք, կոմունիստական գաղափարները նվաճում են ամենալայն մասսաների մտքերն ու սրտերը:*

*ՍՄԿՊ XXII համագումարի կողմից հաստատվող հոյակապ Ծրագիրը կոչված է ոգեշնչող ու կազմակերպող վիթխարի դեր խաղալու ոչ միայն սովետական ժողովրդի, սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդների, այլև աշխարհի բոլոր աշխատավորների, առաջադեմ ուժերի, բանվոր դասակարգի ու կոմունիստների առջև ծառացած մեծ նպատակների համար մղվող պայքարում:*



*Պարտիայի ծրագրային փաստաթղթում, մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման վեհ պլանների հետ մեկտեղ, ամփոփված են սոցիալիզմի համաշխարհային պատմական նվաճումների արդյունքները, տրված է արդի միջազգային դրության մարքսիստական-լենինյան խոր վերլուծությունը, ընդհանրացված է կոմունիստական և բանվորական շարժման, ազգային ազատագրական ռևոլյուցիաների հարուստ փորձը: Այնտեղ սահմանված են խաղաղության, դեմոկրատիայի և ազգային անկախության գործի հաղթանակի համար, սոցիալիզմի գաղափարների հաղթանակի համար մղվող պայքարի նոր հնարավորություններն ու խնդիրները և, ընդհանրապես, տրված է կապիտալիզմից դեպի կոմունիզմ մարդկության առաջընթացի ծավալուն բնութագիրը:*

*Մեր պարտիայի նոր Ծրագիրը այսօր իրավամբ համաշխարհային կոմունիստական շարժման մանիֆեստ են անվանում: Ինչո՞ւ: Որովհետև այնտեղ ամփոփված են բոլոր կոմունիստների համար հավասարապես թանկ գաղափարներ, որովհետև նրանում գործնական հիմքի վրա է դրված բոլոր մարդկանց սոցիալական անհավասարությունից, ճնշման ու շահագործման ձևերից, պատերազմի սարսափներից փրկելու, աշխարհում Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն և Երջանկություն հաստատելու վսեմ նպատակը: Կոմունիզմ կառուցողների ծրագիրը հարաճուն զարգացման նոր հեռանկարներ է բացում ամբողջ միջազգային կոմունիստական շարժման առաջ, նրան զինում է գաղափարական և տեսական նոր դրույթներով: Այն, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, կայծեր է նետում բոլոր երկրներում, նոր ավյուն ու եռանդ է հաղորդում ոչ միայն սովետական ժողովրդին, այլև բոլոր եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաներին, նրանց առջև բացելով նոր, պայծառ հեռանկարներ, նրանց ջանքերին տալով ավելի կոնկրետ արտահայտություն, էլ ավելի խոր և նպատակասլաց բովանդակություն: Մեր պարտիայի նոր Ծրագիրը ցույց է տալիս ինչպես պետք է ստեղծագործաբար զարգացնել մարքսիզմ-լենինիզմը, այն հետևողականորեն համակցել կյանքի հետ, համարձակորեն պայքարել աշխատավոր ժողովրդի շահերի համար, նոր կյանքի համար, ինչպես պետք է եռանդուն կերպով հաղթահարել բոլոր խոչընդոտները, ամրապնդել աշխատավորների միասնությունը և կոմունիստական գիտակցականությունը:*

*Մեր դարաշրջանում աշխարհը բռնված է հանուն սոցիալիզմի ռևոլյուցիոն աննահանջ պայքարով, որի գլուխ կանգնած են 87 երկրներում գործող և իրենց շարքերում ավելի քան 36 միլիոն մարդ միավորող կոմունիստական և բանվորական պարտիաները: Նրանք մարմին են առել առաջադիմության հզոր ուժերից, և հենց այդ առաջադիմության գործիք են, նրա մեծ ուժերի խտացված արտահայտությունը: Նրանց վեհ նպատակն է մարդկությանը առաջնորդել դեպի «Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության» աշխարհը: «Կոմունիստական պարտիաները համաշխարհային ռևոլյուցիոն շարժման ավանգարդն են: Նրանք ապացուցել են մարքսիզմ-լենինիզմի կենսունակությունը, իրենց ընդունակությունը ոչ միայն պրոպագանդելու, այլև պրակտիկայում իրականացնելու գիտական կոմունիզմի վսեմ իդեալները: Միջազգային կոմունիստական շարժումը ներկայումս այնքան հզոր է դարձել, որ ռեակցիայի միացյալ ուժերին չի հաջողվի խորտակել այն» (ՍՄԿՊ Ծրագրի նախագծից):*

*Միջազգային կոմունիստական շարժման գլխավոր նվաճումը համաշխարհային սոցիալիստական սիստեմն է, համայն աշխարհի աշխատավորության*

անառիկ ամրոցը, հուսալի պատվարը, որը դառնում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնը։ Այժմ արդեն մարդկության մեկ երրորդը նոր կյանք է կառուցում գիտական կոմունիզմի դրոշի ներքո։ Մարքսիստական լենինյան պարտիաների ղեկավարությամբ սոցիալիզմի, կոմունիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում և սոցիալիստական մյուս երկրներում ամբողջ համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման օրգանական մասն է։ Սոցիալիստական սիստեմը այն փարոսն է, որը լուսավորում է բոլոր աշխատավորների ուղին դեպի պայծառ ապագան։ Նոր աշխարհի հոյակապ շենքը, որ կառուցվում է այդ սիստեմի հսկայական տարածություններում, համայն մարդկության ապագան է։ Ահա թե ինչու կոմունիստներն իրենց ընդհանուր պարտքն են համարում առաջիկայում ևս ամրապնդել սոցիալիստական երկրների համագործակցությունն ու համերաշխությունը։ Կոմունիստական և բանվորական պարտիաների, սոցիալիստական երկրների ժողովուրդների համախմբվածության ու միասնության, մարքսիստական-լենինյան ուսմունքի նրանց հավատարմության մեջ է յուրաքանչյուր սոցիալիստական երկրի, ամբողջ սոցիալիստական լագերի և համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման ուժի և անպարտելիության աղբյուրը։ Ահա թե ինչու սոցիալիստական մեծ համագործակցության երկրների ժողովուրդները, կոմունիստական և բանվորական պարտիաները ՍՄԿՊ Ծրագրի նախագիծը համարում են նոր հասարակության կառուցման համար պայքարի իրենց ընդհանուր ծրագիր։

Ընթանալով կոմունիզմի կառուցման ուղիով, իրագործելով տնտեսական ու կուլտուրական վիթխարի վերափոխություններ, սոցիալիզմի լագերն իր ինտերնացիոնալ պարտքն է կատարում ամբողջ աշխարհի աշխատավորության, ողջ առաջադեմ մարդկության հանդեպ։ ՍՄԿՊ-ն իր Ծրագրի նախագծում հայտարարում է, որ նա առաջիկայում ևս իր գործունեության մեջ կղեկավարվի պրոլետարական ինտերնացիոնալիզմի անխախտ սկզբունքներով։

Լինելով Սովետական Միությունում կոմունիստական հասարակության կառուցման վկաները, մարդկանց նոր միլիոնները էլ ավելի են համոզվում այն բանում, որ կոմունիզմը չունի այլ նպատակներ, բացի մարդկության համար խաղաղ և երջանիկ կյանք ապահովելու, որ կոմունիզմն ամենալավ, ամենաարդարացի հասարակությունն է, որ մարդկանց բազմաթիվ սերունդների երազանքից այսօր վերածվում է ռեալ իրականության։ «Հաղթանակած սոցիալիզմն իր օրինակով,— ասված է ՍՄԿՊ Ծրագրի նախագծում,— ռևոլյուցիոնացնող ազդեցություն է գործում կապիտալիստական աշխարհի աշխատավորների մտքերի վրա, նրանց պայքարի է ոգեշնչում ընդդեմ իմպերիալիզմի և հսկայական չափով հեշտացնում է այդ պայքարի պայմանները»։

Սոցիալիստական ռևոլյուցիաները, ազգային ազատագրական-հակաիմպերիալիստական ռևոլյուցիաները, ժողովրդական դեմոկրատական ռևոլյուցիաները, գյուղացիական լայն շարժումները, ժողովրդական մասսաների պայքարը ֆաշիստական և այլ բռնակալական ռեժիմները տապալելու համար, ազգային ճնշման դեմ ուղղված համադեմոկրատական շարժումները—այս ամենը միաձուլվում են մեկ միասնական համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի մեջ, որը խարխլում ու քայքայում է կապիտալիզմը։

Ծրագրի նախագծում լուսաբանված է մեր պարտիայի սկզբունքային դիրքավորումը բանվորական շարժման, ազգային-ազատագրական ռևոլյուցիաների, կապիտալիստական երկրներում հանուն սոցիալիզմի մղվող պայքարի



նկատմամբ։ Ներկայումս աշխարհում բանվորական շարժման համար բարենպաստ իրադրությունը պայմանավորված է ՍՍՌՄ-ի և ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի հաջողություններով, համաշխարհային կապիտալիզմի ճգնաժամի խորացմամբ և մասսաների մեջ կոմունիստական պարտիաների ազդեցության ուժեղացմամբ։ Հենց այդ իրադրության բազմակողմանի վերլուծությունն է հիմք տալիս Ծրագրի նախագծում անելու այն հետևությունը, որ շատ երկրների բանվոր դասակարգը դեռ նախքան կապիտալիզմի տապալումը կարող է բուրժուազիային այնպիսի միջոցառումների կենսագործում պարտադրել, որոնք կենսական նշանակություն ունեն սոցիալիզմի հաղթանակի համար։

Բանվոր դասակարգի, ինչպես նաև աշխատավորական բոլոր խավերի գլխավոր թշնամին կապիտալիստական մոնոպոլիաներն են և, այդ իսկ պատճառով, անհրաժեշտ է դեմոկրատական բոլոր շարժումները միացնել մեկ հզոր ճակամոնոպոլիստական ճոսանքի մեջ: Ծրագրի նախագծում տրված է այդ պայքարի նպատակների, նրա էության վերլուծությունը, բացահայտված է հասարակական կյանքում փոփոխություններ կատարելու գործում բանվոր դասակարգի դաշնակիցների դերը։ Մոնոպոլիաների դեմ մղվող համադեմոկրատական պայքարը՝ հանուն սոցիալիզմի պայքարի բաղկացուցիչ մասն է, քանի որ այդ պայքարը աշխատավոր զանգվածներին համախմբելով բանվոր դասակարգի շուրջը, մոտեցնում է սոցիալիստական ռևոլյուցիան։ Կոմունիստների խնդիրն այն է, որպեսզի ղեկավարեն բանվոր դասակարգին և մյուս աշխատավոր մասսաներին մոնոպոլիստական կապիտալի դեմ մղվող պայքարում, հանուն արհմիութենական շարժման մեջ միասնական գործողությունների, հասնեն այն բանին, որպեսզի ժողովրդական մասսաները աստիճանաբար գիտակցեն այն, որ սոցիալիզմը ազատության և երջանկության ուղին՝ միակ ելքն է նրանց համար։

Արդի էտապը առանձնապես վիթխարի խնդիրներ է առաջադրում Արևելքի երկրների բանվոր դասակարգին ու նրա մարքսիստական-լենինյան ավանգարդին։ Գաղութային լուծը թոթափած երկրների ներքին ու արտաքին բարդ պայմաններում կարողանալ գլխավորել ազգային վերածննդի պրոցեսը՝ ահա նրանց առջև ծառացած կարևորագույն խնդիրը։ ՍՄԿՊ Ծրագրի նախագծում ընդգծված է այն հսկայական դերը, որ Արևելքի տնտեսապես թույլ զարգացած երկրների ժողովուրդների պայքարի համար կարող է խաղալ ազգային դեմոկրատիայի պետությունը: Գլխավորն այն է, որ ազգային-ազատագրական ռևոլյուցիաները հասցվեն մինչև վերջ, չբավարարվեն քաղաքական անկախության նվաճումով, այլ խոր փոփոխությունների հանգեցնեն սոցիալական և տնտեսական կյանքում, լուծեն ազգային վերածննդի կենսական խնդիրները։ Բանվոր դասակարգն է այն ամենահետևողական մարտիկը, որը պայքարում է այդ ռևոլյուցիան մինչև վերջ հասցնելու, ազգային շահերի և սոցիալական առաջադիմության համար։ Այդ երկրների ժողովուրդները մոտենում են ճանապարհների մեծ խաչմերուկին, երբ պետք է լուծել, թե ինչ ուղիով՝ կապիտալիստական, թե ոչ կապիտալիստական, պետք է ընթանա իրենց հայրենիքի զարգացումը։ Նրանց հայացքի առջև բացվում է սոցիալիստական առաջադիմության հոյակապ ուղին։

Ծրագրի նախագծում նորից ընդգծվում է գործնականում հաստատված մարքսիստական-լենինյան այն դրույթը, որ ռևոլյուցիան պատվերով չի կա-

տարվում, այն չի կարելի դրսից պարտադրել ժողովրդին, որ հաղթանակած պրոլետարիատը չի կարող ոչ մի երջանկացում պարտադրել օտար մի ժողովրդի, դրանով իսկ չքլատելով իր սեփական հաղթանակը։ Այս լույսի տակ որքա՞ն դատարկահնչուն են իմպերիալիստական պրոպագանդայի այն զրպարտությունները, թե «Մոսկվան միջամտում է այլ երկրների ներքին գործերին», «ռևոլյուցիաներ հրահրում», խախտում «ազատ աշխարհի անդորրը»։ Կապիտալի սպասարկուները ուզում են անգիտանալ այն ռեալությունը, որ յուրաքանչյուր երկրում տեղի ունեցող պրոլետարական ռևոլյուցիան, հանդիսանալով համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի մի մասը, կատարվում է տվյալ երկրի բանվոր դասակարգի, ժողովրդական զանգվածների կողմից և պայմանավորված է առաջին հերթին նրա ներքին իրադրությամբ։

Մյուս կողմից, ՍՄԿՊ-ն հայտարարում է, որ վճռականորեն դատապարտում է հակառևոլյուցիայի ամեն մի արտահանում։ Մեր պարտիայի այս դիրքավորումը մեկ անգամ չէ, որ ամենալայն հետևողականությամբ դրսևորվել է կյանքում։ Սոցիալիզմի լագերը վճռական հակահարված տվեց Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայում կոնտրռևոլյուցիոն խռովության իմպերիալիստական կազմակերպիչներին։ Սովետական Միությունը վճռականորեն պաշտպանում է Կուբայի ժողովրդական ռևոլյուցիան յանկիների ագրեսիվ ոտնձգություններից։

Մեր օրերում համաշխարհային ռեակցիայի գլխավոր պատվարը, հակառևոլյուցիայի գլխավոր «արտահանողը» Ամերիկայի Միացյալ Նահանգներն են։ Ամերիկյան իմպերիալիզմն է ճնշում լատինա-ամերիկյան երկրների ժողովուրդների ռևոլյուցիոն ելույթները, խոչընդոտում ազատագրական պայքարը Աֆրիկայում, օգնում պորտուգալական ֆաշիստներին ճնշելու իր ազատության համար պայքարող անգոլացիների պայքարը, ֆրանսիական գաղութարարներին՝ Ալժիրում անհամար վայրագություններ անելու, Թունիսի ռեսպուբլիկայի սուվերեն իրավունքները ոտնահարելու գործում։ Լինի դա Բրազիլիայում թե՛ Լաոսում, Հարավային Վիետնամում թե՛ Հարավային Կորեայում անդրօվկիանոսյան մոնոպոլիաները հանդես են գալիս հակաժողովրդական ռեակցիոն ռեժիմների պաշտպանների դերում, ռազմական ուժի, պրովոկացիաների ու խառնակությունների միջոցով ձգտում են Արևելքի ճնշված զանգվածներին ետ պահել առաջադիմության և ազատության ուղուց։

Նրանք «օգնության» դրոշի ներքո ճգնում են այդ երկրներում պահպանել հին դիրքերը և գրավել նոր դիրքեր, ընդլայնել իրենց սոցիալական հենարանը, իրենց կողմը գրավել ազգային բուրժուազիային, հաստատել ռազմա-բռնապետական ռեժիմներ, իշխանության գլուխ դնել հլու-հնազանդ մարիոնետներին, պառակտել ազգային-ազատագրական շարժման շարքերը։ Իրենց երկրների ազգային շահերը պաշտպանելու և հակառևոլյուցիայի արտահանումը կանխելու համար անհրաժեշտ է, որ աշխատավորները, դիմագրավելով իմպերիալիզմի ագրեսիվ ոտնձգություններին, հասնեն իրենց տերիտորիայում եղած օտարերկրյա ռազմական բազաների վերացման և ռազմական խմբավորումներից դուրս գալուն։

Այժմ հակառևոլյուցիայի իմպերիալիստական արտահանման վտանգավոր կենտրոն է դարձել Արևմտյան Բեռլինը՝ պատերազմի աղետաբեր բեկորը Եվրոպայի մարմնի մեջ։ Այն վերածվել է պրովոկացիաների, ռևանշիզմի կենտրոնի, լրտեսների որջի։ Այստեղ բույն են դրել ամեն տեսակի լրտեսական,



դիվերսիոն և քայքայիչ կազմակերպություններ՝ սկսած «Սի-Այ Սի»-ից, «Սի-Այ Դի»-ից, վերջացրած անգլիական գաղտնի ծառայությամբ։ Այստեղից մշտապես նոր պատերազմի և հակակոմունիզմի կոչեր են արձակում։ Այստեղ լույս տեսնող թերթերը, «ազատ Բեռլին» ռադիո և հեռուստատեսային կայանները բացահայտ ռևանշիզմ են քարոզում, ամենանողկալի հակասոցիալիստական պրոպագանդա մղում։ Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի ավանտյուրիստ կառավարողները, նրանց արևմտաեվրոպական իմպերիալիստական հովանավորողները ջանք չեն խնայում Արևմտյան Բեռլինը սոցիալիստական լագերի դեմ ագրեսիվ պրովոկացիաների ֆորպոստ դարձնելու, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում սոցիալիզմի կառուցումը խոչընդոտելու համար։ Ինչպես հայտարարել է ԳՄՍՊ-ի Կենտկոմի առաջին քարտուղար և ԳԴՌ-ի Պետական Խորհրդի նախագահ Վալտեր Ուլբրիխտը, Արևմտյան Բեռլինում ստեղծված աննորմալ վիճակը, արևմտագերմանական ռևանշիստների քայքայիչ գործունեությունը, որն ինքնըստինքյան ամբողջապես հակասում է Եվրոպայի և գերմանական ժողովրդի անվտանգության շահերին, ԳԴՌ-ի բնակչությանը տարեկան պատճառում են 3,5 միլիարդ մարկի վնաս։ Թունավորելով մթնոլորտն ամբողջ աշխարհում, Բոննի ռևանշիստները եռանդուն կերպով յուղ են լցնում «սառը պատերազմի» արևմտագերմանական օջախի վրա։ Թիրախ դարձնելով Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, ինչպես նաև մյուս սոցիալիստական երկրներում գոյություն ունեցող սոցիալիստական կարգը, նրանք բորբոքում են հակակոմունիստական կրքերը, գերմանական ժողովրդին հրում դեպի ինքնասպանության ուղին։ ԳՖՌ-ի միլիտարիստական շրջանները ատոմային պատերազմը, որը կկործաներ առաջին հերթին հենց ամբողջ Արևմտյան Գերմանիան, համարում են շատ «հիմնավոր» գործ։ Փորձելով ձախողել Գերմանիայի հետ խաղաղ կարգավորումը, նրանք կորցրել են ինքնահսկողությունը, գործելու «ամեն ինչ կամ ոչինչ» սկզբունքով։ Միլիտարիստների ավանտյուրաները կանխելու և սանձահարելու համար այժմ, քան երբեք, պահանջվում է խաղաղասիրական բոլոր ուժերի աչալրջությունն ու զգոնությունը։

Պահանջելով անհապաղ գերմանական հաշտության պայմանագիր կնքել, կարգավորել Արևմտյան Բեռլինի կնճռոտ պրոբլեմը, Սովետական Միության նպատակն է փակել պատերազմի ճանապարհը, հարված հասցնել արևմտագերմանական միլիտարիստների հաշիվներին և պլաններին, որոնք ուզում են կուլ տալ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, ոչնչացնել սոցիալիզմի նվաճումները գերմանական հողում, աշխարհը ներքաշել նոր պատերազմի մարդակործան հորձանուտը։ Սոցիալիստական լագերի պայքարը գերմանական հարցի կարգավորման, Եվրոպայի կենտրոնում խաղաղության պահպանման համար՝ պայքար է հակառևոլյուցիայի իմպերիալիստական արտահանման դեմ, հանուն սոցիալիզմի։ Դրանով իսկ կոմունիստները դրսևորում են իրենց նվիրվածությունը խաղաղության գործին, իմպերիալիստներին ժամանակին սանձելու, ջերմամիջուկային պատերազմը կանխելու գործին։ Դրանով իսկ նրանք ցուցադրում են այն ճշմարտությունը, որ երբեք չեն գտել և չեն գտնում, թե ռևոլյուցիայի ուղին անպայման անցնում է պետությունների միջև մղվող պատերազմներով։ Բանվոր դասակարգի վսեմ նպատակները կարող են կենսագործվել առանց համաշխարհային պատերազմի, հայտարարում է մեր պարտիան։

Արդի դարաշրջանի գլխավոր բովանդակության խոր վերլուծության հիման վրա ՍՄԿՊ Ծրագրի նախագծում իր հետագա զարգացումն է ստացել սոցիալիստական ռևոլյուցիայի տեսությունը, բացահայտված և հիմնավորված են նրա իրականացման կարևորագույն օրինաչափությունները, ձևերն ու միջոցները: Բանվոր դասակարգը և նրա ավանգարդը՝ մարքս-լենինյան պարտիաները գերադասում են բուրժուազիայի ձեռքից իշխանության անցումը պրոլետարիատի ձեռքը իրականացնել խաղաղ միջոցով, առանց քաղաքացիական պատերազմի: Ծրագրի նախագծում նշված են այդ ուղու հնարավորության պայմանները, որ այն իրագործելի է խոշոր մոնոպոլիստական կապիտալի, ռեակցիայի դեմ, սոցիալիստական ռեֆորմների, խաղաղության և սոցիալիզմի համար, բանվորական, գյուղացիական մասսաների և քաղաքային միջին խավերի դասակարգային պայքարի լայն, անընդհատ զարգացման միջոցով: Միաժամանակ նախագիծը նշում է, որ ժողովուրդների նկատմամբ շահագործող դասակարգերի կողմից բռնություն գործադրելու դեպքում պետք է նկատի ունենալ սոցիալիզմին ոչ խաղաղ անցնելու հնարավորությունը: Կոնկրետ պատմական պայմաններն են որոշում յուրաքանչյուր երկրում սոցիալիզմին անցնելու այս կամ այն եղանակի ռեալ հնարավորությունը: «Ռևոլյուցիայի հաղթանակի համար բանվոր դասակարգի մղած պայքարի հաջողությունը կախված կլինի այն բանից,—ընդգծված է ՍՄԿՊ Ծրագրի նախագծում,—թե նա և նրա պարտիան որքանով կտիրապետեն պայքարի բոլոր ձևերին՝ խաղաղ և ոչ խաղաղ, պառլամենտական և ոչ պառլամենտական, և պատրաստ կլինեն պայքարի մի ձևը ամենաարագ և անակնկալ կերպով փոխարինելու մի այլ ձևով»: Եվ, այնուհետև, ասված է, որ «ինչ ձևով էլ որ տեղի ունենա անցումը կապիտալիզմից սոցիալիզմին, դա հնարավոր է միայն ռևոլյուցիայի ճանապարհով: Որքան էլ որ բազմազան լինեն սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում նոր, ժողովրդական պետական իշխանության ձևերը, նրանց էությունը մեկ է՝ պրոլետարիատի դիկտատուրան...»:

Այժմ, երբ սոցիալիզմի և կապիտալիզմի մրցությունը թևակոխել է իր վճռական էտապը, երբ աշխարհի բոլոր մասերում մարդկության առաջամարտիկները աննահանջ պայքար են մղում հանուն ազգային անկախության, դեմոկրատիայի և խաղաղության, հանուն առաջադիմության, սոցիալիստական ռևոլյուցիայի խնդիրների հաջող լուծման, հանուն կոմունիզմի հաղթանակի, մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա միջազգային կոմունիստական շարժման միասնության վճռական պաշտպանությունը յուրաքանչյուր կոմունիստական և բանվորական պարտիայի սրբազան պարտականությունն է: ՍՄԿՊ-ն իր նոր Ծրագրի նախագծում հանդիսավոր կերպով հայտարարում է, որ առաջիկայում ևս կամրապնդի բոլոր երկրների կոմունիստների մեծ բանակի շարքերի միասնությունն ու համախմբվածությունը:

Կոմունիստական և բանվորական շարժման առաջնահերթ խնդիրը բանվոր դասակարգի շարքերի պառակտման հաղթահարումն է, նրա գործողությունների միասնության ապահովումը: Այդպիսի դեպքում իմպերիալիզմի կործանումն ավելի մոտալուտ կդառնա: Ելնելով պրոլետարիատի միասնության շահերից, կոմունիստական պարտիաները հանդես են գալիս սոցիալ-դեմոկրատական պարտիաների հետ համագործակցելու օգտին ոչ միայն խաղաղության համար,



աշխատավորների կենսապայմանները բարելավելու, նրանց դեմոկրատական իրավունքները և ազատությունները պահպանելու և ընդլայնելու համար մղվող պայքարում, այլև իշխանությունը նվաճելու և սոցիալիստական հասարակարգ կառուցելու համար մղվող պայքարում: Միաժամանակ կոմունիստները, որ իմպերիալիզմի և նրա ամեն երանգի գործակալների դեմ պայքարի հսկայական փորձ են կուտակել, քննադատում են սոցիալ-դեմոկրատիզմի գաղափարախոսությունը և աջ օպորտունիստական պրակտիկան, մերկացնելով բանվոր դասակարգի տրադիցիոն սոցիալիստական պահանջներից հրաժարված, նրա շահերին դավաճանող սոցիալ-դեմոկրատական պարագլուխներին:

Ծրագրի նախագծում կոմունիստական շարժման առաջնահերթ խնդիր է հռչակվում պայքարը ինչպես գլխավոր վտանգի՝ ռևիզիոնիզմի, աջ օպորտունիզմի դեմ, այնպես և դոգմատիզմի ու աղանդավորության, որոնց դեմ հետևողական պայքար չմղելու դեպքում, նույնպես կարող են գլխավոր վտանգ դառնալ առանձին կոմպարտիաների համար: ՍՄԿՊ-ն ելնում է այն բանից, որ ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և աղանդավորության դեմ, լենինիզմից կատարվող ամեն տեսակ նահանջների դեմ մղվող անհաշտ պայքարը միջազգային կոմունիստական շարժման միասնության հետագա ամրապնդման, սոցիալիստական լագերի կայունացման անհրաժեշտ պայմանն է: Մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիմքի վրա միջազգային կոմունիստական շարժման վճռական պաշտպանությունը, այդ միասնությունը խարխլող գործողությունների դատապարտումը և կանխումը հանուն ազգային անկախության, դեմոկրատիայի և խաղաղության, հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի խնդիրների հաջող լուծման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պարտադիր պայմանն են:

Բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժման հետագա զարգացումն անկասելի է: Կապիտալիստական աշխարհի ընդերքում տարեցտարի լայնությամբ ու խորությամբ կազմավորվում, բազմապատկվում և կոփվում են սոցիալական այն ուժերը, որոնք կոչված են ապահովելու անդասակարգ հասարակության, մարդկության դարավոր իղձերի հաղթանակը: Կոմունիզմի արևն ավելի ու ավելի վառ է հուրհրատում Երկրի վրա: Նրա հաղթանակն անխուսափելի է համաշխարհային մասշտաբով: «Երբ սովետական ժողովուրդը կօգտվի կոմունիզմի բարիքներից, աշխարհի նոր հարյուր միլիոնավոր մարդիկ կասեն. «Մենք կողմնակից ենք կոմունիզմին»: Ոչ թե մյուս երկրների դեմ պատերազմելու միջոցով, այլ հասարակության ավելի կատարյալ կազմակերպման օրինակով, արտադրողական ուժերի ծաղկումով, մարդու երջանկության ու բարօրության համար բոլոր պայմանների ստեղծումով են կոմունիզմի գաղափարները նվաճում ժողովրդական մասսաների մտքերն ու սրտերը» (ՍՄԿՊ Ծրագրի նախագծից):

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

# ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

«Կոմունիզմի հոյակապ շենքը կերտվում է սովետական ժողովրդի՝ բանվոր դասակարգի, գյուղացիության, ինտելիգենցիայի համառ աշխատանքով: Որքան ավելի հաջող է նրանց աշխատանքը, այնքան ավելի մոտ է մեծ նպատակի իրականացումը՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը» (ՍՄԿՊ Ծրագրի նախագծից):

*Սովետական ժողովուրդը կենսագործելով պարտիայի նախագծումները, լայն ճակատով կառուցում է կոմունիստական հասարակարգ: Մեր ժամանակներում կոմունիզմը այլևս վերացական տեսական հասկացություն, հեռավոր ապագայի մասին երազանք չէ: Կոմունիզմի կառուցումը դարձել է սովետական մարդկանց անմիջական գործնական խնդիրը: Կոմունիզմի ծիլերը, որոնց մասին դեռևս Վ. Ի. Լենինը խոսել է, այսօր ավելի ու ավելի լայն կերպով մուտք են գործում մեր կյանքը և ամուր կերպով հաստատվում նրանում: Կոմունիզմի համար պայքարի բախտը վճռվում է ինչպես կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումով, նյութական բարիքների առատության ապահովմամբ, այնպես էլ կոմունիզմի մարդու ձևավորմամբ, ընդ որում այս երկու խնդիրները լուծվում են միաժամանակ, սոցիալիզմից կոմունիզմին անցման պատմական ժամանակաշրջանում:*

*Մեր հասարակության զարգացման ներկա էտապում էլ ավելի է մեծանում աշխատավորների կոմունիստական դաստիարակության նշանակությունը: Այդ բացատրվում է նրանով, որ կոմունիզմին անցման շրջանում ավելի ու ավելի է աճում գաղափարական և բարոյական գործոնների դերը՝ հասարակության զարգացման գործում: «Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցականությունը,—ասված է ՍՄԿՊ Ծրագրի նախագծում,—այնքան ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի ու մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման մեջ և, հետևապես, այնքան ավելի արագորեն ու հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները»:*

*Սովետական հասարակությունը խոշոր հաջողությունների է հասել մասսաների սոցիալիստական դաստիարակության, սոցիալիզմի ակտիվ կառուցողների բարոյա-քաղաքական կերպարի ձևավորման գործում: Դրա շնորհիվ առաջ է եկել նոր մարդը, սոցիալիզմի դարաշրջանի մարդը, որի համար, որտեղ էլ նա աշխատի՝ գործարանում թե կոլտնտեսությունում ու սովխոզում, պետական կազմակերպությունում թե գիտական հաստատությունում, բնորոշ են գործի հասարակական շահագրգռվածության բարձր զարգացումը, շարունակ որոնելու, առաջ շարժվելու ձգտումը, գիտակցական անհանգստությունը հանուն այն*



*բանի, որ վաղը այսօրվանից ավելին անի, որպեսզի ժողովուրդն ավելի լավ ու ավելի հեշտ ապրի:*

*Իսկական սովետական մարդուն բնորոշ են հասարակական պարտքի բարձր զգացումը, անսահման նվիրվածությունը սոցիալիստական հասարակարգին, սոցիալիստական վերաբերմունքը դեպի աշխատանքը և հանրային ունեցվածքը, բարձր գաղափարայնությունը, հասարակությանը, ժողովրդին ծառայելու անհողդողդ պատրաստակամությունը: Սովետական մարդուն բնորոշ են նաև անհաշտությունը թերությունների ու սխալների նկատմամբ, այն ամենի նկատմամբ, ինչ որ խանգարում է ժողովրդի բարեկեցության բարելավման համար պարտիայի կողմից մղվող պայքարին, ինչը որ արգելակում է մեր առաջընթաց շարժումը դեպի ամենաարդարացի և ամենաերջանիկ հասարակարգը՝ կոմունիզմը: Սակայն այն, ինչ արվել է նոր մարդու ձևավորման գործում, դեռևս բավարար չէ:*

*Ներկա էտապում, երբ կոմունիզմը անշեղորեն մուտք է գործում մեր ժողովրդի կյանքում, առաջ են գալիս նոր վիթխարի խնդիրներ, որոնց լուծումը պահանջում է սովետական մարդկանց գիտակցականության և բարոյականության հետագա բարձրացում ու կատարելագործում: Այդ ուղղությամբ ներկայումս, ինչպես ընդգծված է պարտիայի Ծրագրի նախագծում, գլխավոր խնդիրն է՝ «բոլոր աշխատավորներին դաստիարակել բարձր գաղափարայնության և կոմունիզմի նկատմամբ հավատարմության, աշխատանքի և հանրային տնտեսության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, լիովին հաղթահարել բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկները, բազմակողմանիորեն, ներդաշնակորեն զարգացնել անհատին, ստեղծել հոգևոր կուլտուրայի իսկական հարստություն»: Կոմունիստական հասարակարգի մարդը անհամեմատ պետք է բարձր լինի իր գիտակցականությամբ և կուլտուրական մակարդակով, նրա մեջ պետք է ներդաշնակվեն բազմակողմանի զարգացածությունը, հոգևոր հարստությունը, բարոյական անաղարտությունը և ֆիզիկական կատարելությունը:*

*ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծում ասված է.—«Դաստիարակչական աշխատանքի կենտրոնում պարտիան դնում է հասարակության բոլոր անդամների մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք զարգացնելը»: Իսկ ի՞նչ է նշանակում կոմունիստական վերաբերմունք դեպի աշխատանքը, ի՞նչ է կոմունիստական աշխատանք: Վ. Ի. Լենինը նշել է, որ կոմունիստական աշխատանք «...նշանակում է անվճար աշխատանք հասարակության օգտին, մի աշխատանք, որ կատարվում է ո՛չ թե որոշակի պարհակ կրելու համար, ո՛չ թե որոշ մթերքներ ստանալու իրավունքի համար, ո՛չ թե նախապես սահմանված և օրինականացված նորմաներով, այլ կամավոր աշխատանք, նորմաներից դուրս աշխատանք, մի աշխատանք, որը տրվում է վարձատրությունը նկատի չունենալով, առանց վարձատրության պայմանների, մի աշխատանք, որը կատարվում է ընդհանուրի օգտին աշխատելու սովորությամբ և ընդհանուրի օգտին աշխատանքի անհրաժեշտության նկատմամբ գիտակից (արդեն սովորություն դարձած) վերաբերմունքով, մի աշխատանք, որը պահանջմունք է առողջ օրգանիզմի համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 661):*

*Ինչպես տեսնում ենք, կոմունիստական աշխատանքը աշխատանքի նոր, բարձր տիպ է, որի համար բնորոշն այն է, որ այն կատարվում է հասարակության օգտին կամավոր, անվճար կերպով: Մինչև այժմ գոյություն ունեցող բոլոր*

հասարակարգերում աշխատանքը հանդես է եկել որպես ապրուստի միջոց: Սոցիալիզմը փոխեց ինչպես աշխատանքի բնույթը, այնպես էլ մարդկանց վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ: Եթե շահագործողական հասարակարգերում աշխատանքը հանդիսանում է ծանր, տանջալից բեռ աշխատավորների համար, որոնց աշխատանքի արդյունքները յուրացվում են տիրապետող դասակարգերի կողմից, ապա սոցիալիզմի օրոք աշխատանքը դարձել է փառքի, պատվի, հերոսության ու արիության գործ:

Սոցիալիզմի պայմաններում հարգանքի է արժանի ամեն մի հանրօգուտ աշխատանք, որը դարձել է մարդկանց նոր, սոցիալիստական հարաբերությունների արտահայտությունը, մարդու բարոյական վսեմ հատկությունների ցուցանիշը: Սովետական մարդու պատիվն ու հեղինակությունը որոշվում են ոչ թե նրանով, թե նա ինչ դիրք է գրավում, կամ ինչ աստիճան ունի, այլ նրանով, թե իրեն հանձնարարված գործը ինչպե՞ս է կատարում, ինչպե՞ս է արդարացնում իր նկատմամբ հասարակության կողմից ցուցաբերված վստահությունը: Սովետական մարդկանց հերոսական աշխատանքով հաղթանակած սոցիալիզմի երկիրը առաջինը բացեց ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու դարաշրջանը, առաջինը հարթեց տիեզերական տարածության ճանապարհը: Սովետական մարդկանց հերոսական աշխատանքի ամենափայլուն ցուցանիշներն են Յուրի Գագարինի և Գերման Տիտովի տիեզերական թռիչքները երկրագնդի շուրջը և նրանց հաջող վայրէջքը:

***

Սակայն սոցիալիզմի ժամանակ էլ աշխատանքը շարունակում է մնալ որպես ապրուստի միջոց, որպես հասարակությունից նյութական բարիքներ ստանալու չափանիշ: Սոցիալիզմի սկզբունքն է՝ «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի»: Այդ սկզբունքն աշխատանքը դարձնում է պարտադիր հասարակության բոլոր անդամների համար, ապահովում է նրանց նյութական շահագրգռվածությունը աշխատանքի արդյունքներով, թույլ է տալիս լավագույն կերպով զուգորդել անձնական ու հասարակական շահերը և հանդիսանում է աշխատանքի արտադրողականության բարձրացման, էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության բարձրացման հզոր խթան:

Միլիոնավոր մարդիկ իսկական գոհունակություն են ստանում իրենց աշխատանքից և ուրախանում նրա արդյունքների համար: Սոցիալիստական մրցության մեջ հաղթող դուրս գալը, կառավարական պարգևներ ու շնորհակալագրեր նվաճելը խոշոր խթաններ են հանդիսանում մարդկանց գործունեության մեջ: Գնալով ավելի ու ավելի շատ մարդկանց համար աշխատանքը դառնում է մեծագույն հաճույքի աղբյուր, որպես կենսական անհրաժեշտություն: Դա իր առաջին արտահայտությունը գտավ դեռևս սոցիալիստական հասարակարգի արշալույսին՝ կոմունիստական շաբաթօրյակների ձևով: Վ. Ի. Լենինը բարձր գնահատեց այդ շաբաթօրյակները՝ ազատագրված աշխատավորների անվճար, անհատույց աշխատանքը, այն անվանելով մեծ նախաձեռնություն: Նրանց մեջ Լենինը խորաթափանցությամբ տեսնում էր կոմունիստական աշխատանքի ծիլերը, աշխատանքի նկատմամբ մարդկանց վերաբերմունքի մեջ տեղի ունեցած այն խոր փոփոխության սկիզբը, որը վերջիվերջո հանգեցնելու է իսկական կոմունիստական աշխատանքի հաղթանակին:



Կոմունիզմը, ինչպես ընդգծված է պարտիայի նոր Ծրագրի նախագծում, անդասակարգ հասարակարգ է, որտեղ մարդկանց համակողմանի զարգացման հետ մեկտեղ շարունակ զարգացող գիտության և տեխնիկայի հիման վրա կաճեն նաև արտադրողական ուժերը, լիառատ կհորդեն հասարակական հարստության բոլոր աղբյուրները և կիրագործվի «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» մեծ սկզբունքը: «Կոմունիզմը ազատ և գիտակից աշխատավորների բարձր կազմակերպված հասարակություն է, որտեղ կհաստատվի հանրային ինքնավարություն, հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքը բոլորի համար կդառնա առաջին կենսական պահանջ, գիտակցված անհրաժեշտություն, յուրաքանչյուրի ընդունակությունները կգործադրվեն ժողովրդի համար առավելագույն օգտավետությամբ»:

Կոմունիստական հասարակության մարդու բնորոշ հատկություններն են՝ բարձր կոմունիստական գիտակցականությունը, աշխատասիրությունը, նվիրվածությունը հանրային շահերին: Կոմունիզմը ապահովում է հանրային արտադրության անընդհատ զարգացումը և աշխատանքի բարձր արտադրողականությունը: Կոմունիստական հասարակարգը հիմնված է բարձր կազմակերպված արտադրության ու զարգացած տեխնիկայի վրա և հասարակության անդամներից պահանջվում է բարձր կազմակերպվածություն և կարգապահություն:

Կոմունիզմը անբանների հասարակություն չէ, նա կբերի ոչ թե աղայական կյանք, որտեղ իշխում են ծուլությունն ու դատարկապորտությունը, այլ աշխատանքային ստեղծագործական կյանք: Կոմունիզմը բնավ չի լինի անարխիայի, անգործության ու դատարկապորտության հասարակություն: Այնտեղ ամեն մարդ հանդես կգա որպես նոր հասարակարգի գիտակից աշխատավոր, կմասնակցի հասարակական աշխատանքին և կապահովի հասարակության նյութական ու հոգևոր հարստությունների աճը: Հասարակության բոլոր անդամների մեջ աշխատանքի բնույթի փոփոխման և նրա տեխնիկական հագեցվածության աճման շնորհիվ, գիտակցականության բարձր մակարդակի շնորհիվ, կզարգանա հասարակության բարօրության համար հոժարակամ կերպով և ըստ հակումների աշխատելու ներքին պահանջը: «Աշխատանքը և կարգապահությունը ծանրություն չեն լինի մարդու համար. աշխատանքային գործունեությունը կդադարի լոկ ապրուստի միջոց լինելուց և կդառնա իսկական ստեղծագործության, հրճվանքի աղբյուր»—նշված է ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծում:

Ինչի՞ շնորհիվ, ի՞նչ ուղիներով կփոխվի աշխատանքի բնույթը կոմունիզմի ժամանակ, կդառնա հաճույքի աղբյուր, կենսական առաջին պահանջ: Պետք է ասել, որ առանձին մարդիկ կասկածանքով են մոտենում կոմունիզմի ժամանակ աշխատանքը կենսական ներքին պահանջ դառնալու մասին դրույթին: Նրանց սխալն այն է, որ կոմունիզմի ժամանակվա արտադրության և մարդկանց գիտակցականության մակարդակը պատկերացնում են այսօրվա տեսակետից: Սակայն, եթե մենք խորամուխ լինենք այդ առթիվ Ծրագրի նախագծում առաջ քաշված դրույթների մեջ, ապա միանգամայն հասկանալի կդառնա, թե ինչո՞ւ կոմունիստական հասարակարգում աշխատանքն անխուսափելիորեն կդառնա կենսական առաջին պահանջ, ներքին անհրաժեշտություն:

Պարտիայի Ծրագրի նախագծում տրված է այս հարցի միանգամայն սպառիչ, գիտական պատասխանը: Կոմունիզմը նշանակում է երկրի լրիվ էլեկտրիֆիկացում և դրա հիման վրա տեխնիկայի, արտադրության տեխնոլոգիայի և կազ-

մակերպման կատարելագործում արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում ու ավտոմատացում, աշխատանքի անհամեմատ բարձր արտադրողականություն։ Տեխնիկական առաջադիմության շնորհիվ զգալիորեն կբարձրանան արտադրության կուլտուրան, բոլոր աշխատավորների մասնագիտական և հանրակրթական պատրաստությանը առաջադրվող պահանջները։

Նոր, կատարյալ տեխնիկան արմատապես կբարելավի մարդու աշխատանքի պայմանները և կհեշտացնի այն, կկրճատի աշխատանքային օրը, կբարեկարգի մարդկանց կենցաղը, կվերացնի ծանր ֆիզիկական աշխատանքը, իսկ հետո էլ ամեն տեսակ ոչ որակյալ աշխատանքը։ Ձեռքի աշխատանքը կվերանա ինչպես հիմնական, այնպես էլ օժանդակ գործողություններում։ «Ավտոմատացումը և կոմպլեքսային մեքենայացումը սոցիալիստական աշխատանքը աստիճանաբար կոմունիստական աշխատանքի վերածելու նյութական հիմքն են»— ասված է պարտիայի Ծրագրի նախագծում։

Կոմունիզմի հաղթանակի շնորհիվ լիովին կանհետանան դասակարգերը, կվերանան քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունները։ Արտադրողական ուժերի զարգացման մակարդակով և աշխատանքի բնույթով արտադրական հարաբերությունների ձևերով, կենցաղային պայմաններով և բնակչության բարեկեցության աստիճանով գյուղը կհասնի քաղաքի մակարդակին։ Գյուղատնտեսությունը տեխնիկական զինվածությամբ և արտադրության կազմակերպմամբ կմոտենա արդյունաբերության մակարդակին։ Դրա շնորհիվ գյուղատնտեսական աշխատանքը կդառնա արդյունաբերական աշխատանքի տարատեսակը։ Բացի այդ, արտադրության մեքենայացման և քիմիայի լայն կիրառման շնորհիվ բնության տարերքից գյուղատնտեսության կախումը զգալիորեն կթուլանա և կհասցվի նվազագույնի։

Գյուղատնտեսական արտադրության մեջ աշխատանքն ամենուրեք կդառնա ստեղծագործական, կպահանջի գիտելիքների լայն կիրառում։

Կոմունիստական աշխատանքի հաղթանակի վճռական պայմաններից է նաև մտավոր և ֆիզիկական աշխատանքի տարբերությունների վերացումը։ Կոմունիզմի հաղթանակի շնորհիվ տեղի կունենա մտավոր և ֆիզիկական աշխատանքի օրգանական միացում։ Ֆիզիկական աշխատանք կատարողներն իրենց կուլտուր-տեխնիկական մակարդակով կբարձրանան մտավոր աշխատանքի մարդկանց մակարդակին։ Սոցիալական այս մեծ պրոբլեմի լուծմանը կնպաստի աճող սերնդի ուսուցումն ու դաստիարակությունը կյանքի, արտադրական աշխատանքի հետ սերտորեն շաղկապելը, չափահաս բնակչության արտադրական աշխատանքը ուսուցման հետ զուգորդելը։ Այդ նպատակով կիրականացվի ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթություն, հատկապես կընդլայնվի երեկոյան դպրոցների ցանցը։ Է՞լ ավելի կզարգանա բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության սիստեմը, որը կպատրաստի տեսական ու քաղաքական լայն մտահորիզոն ունեցող բարձրորակ մասնագետներ։ Աշխատանքային օրվա կրճատումը և բնակչության կենսամակարդակի նշանակալի բարձրացումը պայմաններ կստեղծեն, որպեսզի բոլորը ստանան բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթություն։ Տասնյակ միլիոնավոր մարդիկ մասնագիտական կրթություն կստանան, կհասնեն մտավոր աշխատողների մակարդակին։

Կոմունիստական աշխատանքի հաղթանակին նշանակալիորեն կնպաստի



աշխատաժամերի կրճատումը և աշխատանքի պայմանների հետագա բարելավումը։

Ծրագրի նախագծով նախատեսված է առաջիկա 10 տարում իրագործել անցումը 6-ժամյա աշխատանքային օրվա, շաբաթական մեկ հանգստյան օրով, կամ 34—36 ժամյա աշխատանքային շաբաթի՝ երկու հանգստյան օրով, իսկ ստորերկրյա աշխատանքներում և վնասակար արտադրություններում՝ 5-ժամյա աշխատանքային օրվա կամ 30-ժամյա հնգօրյա աշխատանքային շաբաթի։ Հետագայում աշխատանքային շաբաթն էլ ավելի կկրճատվի։

Աշխատանքային օրվա կրճատման հետ միասին կավելանա աշխատավորների ամենամյա վճարովի արձակուրդների տևողությունը, վճարովի արձակուրդները հետզհետե կտարածվեն կոլտնտեսականների վրա։ Աստիճանաբար կվերացվեն գիշերային հերթափոխությունները ձեռնարկությունների զգալի մասում։ Այդ ամենի շնորհիվ զգալիորեն կավելանա աշխատավորների ազատ ժամանակը, որը լրացուցիչ պայմաններ կստեղծի նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար։

Կոմունիզմի հաղթանակը կապահովի հասարակության բոլոր անդամների բարձր կենսամակարդակ և նրանց առողջ պահանջմունքները հասարակության կողմից կբավարարվեն լիովին։

Այս ամենի և պարտիայի կողմից ծավալվող գաղափարական-դաստիարակչական վիթխարի գործունեության շնորհիվ աշխատանքը իրոք կդառնա հաճելի զբաղմունք, կենսական առաջին պահանջ։ «Կոմունիստական հասարակարգում,— ասված է Ծրագրի նախագծում,—մարդ չի կարող չաշխատել։ Դա թույլ չեն տա ո՛չ նրա գիտակցականությունը, ո՛չ էլ հասարակական կարծիքը։ Ըստ ընդունակության աշխատելը կդառնա սովորություն, հասարակության բոլոր անդամների առաջին կենսական պահանջը»։ Իհարկե, աշխատանքի հանդեպ մարդկանց վերաբերմունքը միանգամից ու հեշտությամբ չի փոխվի։ Դա շատ համառ ու դժվար պայքար է, որը պահանջում է ինչպես կոմունիստական աշխատանքի համապատասխան նյութական պայմանների ստեղծում, այնպես էլ դաստիարակչական աշխատանքի մեծ միջոցառումների իրականացում։ Սակայն այն ծիլերը, սաղմերը, որոնք այսօր առկա են և անշեղորեն աճում են, վկայում են կոմունիստական աշխատանքի հաղթանակի անխուսափելիության մասին։

Մեր երկրի՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը թևակոխելու հետ միաժամանակ, աշխատավորների մեջ ծնունդ առավ համաժողովրդական մի հզոր շարժում՝ պայքար կոմունիստական աշխատանքի կոչման համար։ Այդ կենսունակ շարժման մասնակիցները, գլխավորապես երիտասարդությունը, միաժամանակ լուծում են այնպիսի խնդիրներ, ինչպիսիք են աշխատանքի արտադրողականության և սեփական կուլտուրական մակարդակի բարձրացումը գիտության և տեխնիկայի նվաճումներին տիրապետելու, պայքարը կոմունիստական բարոյականության սկզբունքներին ու սոցիալիստական համակեցության կանոնների պահպանման և անցյալի մնացուկների լրիվ հաղթահարման համար։ Կոմունիստական աշխատանքի կոչման համար մղվող այդ պայքարը կոմունիստական աշխատանքի հաղթանակի կարևոր գործոն է։

Պարտիան ջերմորեն և խնամքով պաշտպանեց այդ շարժումը, որի մեջ դրսևոր-
վում է նորը աշխատանքի նկատմամբ։ Դիմելով կոմունիստական աշխատանքի
բրիգադաների և հարվածայինների մրցության առաջավորների համամիութե-
նական խորհրդակցության մասնակիցներին, ընկ. Ն. Ս. Խրուշչովն ասաց.
«Դուք մեր հասարակության առաջավոր մարդիկ եք։ Ձեր աշխատանքով, կյան-
քում ձեր օրինակով դուք մի նոր էջ եք բաց անում սովետական մարդու՝ կո-
մունիստական հասարակարգ կառուցողի բարձր կոչման ըմբռնման մեջ։ Ձեր
ոգեշունչ աշխատանքով… դուք մոտեցնում եք կոմունիզմի հաղթանակը, վսեմ
օրինակով միլիոնավոր և միլիոնավոր սովետական մարդկանց խանդավառում
եք դեպի մեր մեծ նպատակը»։

Կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարողների գիտակ-
ցության և վարմունքի մեջ պարզորոշ կերպով դրսևորվում են կոմունիզմի
ժամանակի մարդու բնորոշ գծերը՝ բարձր գիտակցականությունը, կուլտուրա-
կան զարգացածությունը, բազմակողմանի պատրաստականությունը, աշխա-
տանքի նկատմամբ նոր վերաբերմունքը։ Այս իրենից ներկայացնում է տնտե-
սական և բարոյական մեծ ուժ, որի նշանակությունը գնալով ավելի է աճում։

Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների ու հարվածայինների շարժ-
ման կենսունակությունը և լայն հեռանկարները երևում են նրանից, որ չափա-
զանց կարճ ժամկետի ընթացքում նրանում ընդգրկվել է ավելի քան 12 միլիոն
մարդ, հազարավոր արդյունաբերական ձեռնարկություններ, կոլտնտեսություն-
ներ ու սովխոզներ։ Ապագայի հետախույզների այդ շարժման մյուս բնորոշ
գիծն էլ այն է, որ նորարարությունը դառնում է նրանց ամենօրյա գործունեու-
թյան նորման։ Հենց այդ շարժման ընդերքում ծագեցին Վալենտինա Գագա-
նովայի խիկական հայրենասիրական նախաձեռնությունը, «Յուրաքանչյուր
բանվոր պետք է լինի ռացիոնալիզատոր» նշանաբանը և այլն։ Շնորհիվ այն
բանի, որ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների անդամներն ու հար-
վածայինները անընդհատ բարձրացնում են իրենց կուլտուր-տեխնիկական մա-
կարդակը, տիրապետում են գիտելիքներին, սովորում են բարձրագույն կամ
միջնակարգ մասնագիտական հաստատություններում, նրանց աշխատանքը
դառնում է ավելի ու ավելի որակյալ և արտադրողական, իր մեջ կրում է ինժե-
ներա-տեխնիկական պատրաստության տարրեր։ Այս իմաստով էլ կոմունիս-
տական աշխատանքի համար շարժումը նպաստում է մտավոր և ֆիզիկական
աշխատանքի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների վերաց-
մանը։

Կոմունիստական աշխատանքի համար կենսական շարժումը լայն ծավալ
է ստացել նաև մեր ռեսպուբլիկայում։ Հայկական ՍՍՌ արդյունաբերական
ձեռնարկությունների մոտ 2000 կոլեկտիվներ, որոնցում ընդգրկված է ավելի
քան 80 հազար մարդ, պայքարում են կոմունիստական աշխատանքի բարձր
կոչման համար։ Նրանցից մոտ 500 կոլեկտիվների արդեն շնորհվել է այդ
պատվավոր կոչումը։

Կոմունիստական աշխատանքի վառ օրինակներ են տալիս գյուղատնտե-
սության առաջավորները, մեր փարոսները, ինչպես պատկերավոր կերպով
նրանց անվանեց Ն. Ս. Խրուշչովը։ Ավելի ու ավելի է շատանում կոմունիստա-
կան աշխատանքի և կենցաղի համար պայքարող կոլեկտիվների թիվը, որն
այդ շարժման կենսունակության և մեծ հեռանկարների վառ վկայություն է։



Իրականանում է մեծ Լենինի հանճարեղ կանխատեսությունը, թե մենք ան-
պայման կհասնենք կոմունիստական աշխատանքի հաղթանակին։

Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի զարգացումը
իրականացվում է անցյալի մնացուկների, այդ թվում և աշխատանքի նկատ-
մամբ ոչ սոցիալիստական վերաբերմունքի դրսևորումների դեմ պայքարելու
հետ միաժամանակ։ Ինչպես նշված է պարտիայի Ծրագրի նախագծում, սո-
ցիալիստական կարգերի հաղթանակից հետո էլ մարդկանց գիտակցության
մեջ և վարքագծում պահպանվում են կապիտալիզմի մնացուկներ, որոնք ար-
գելակում են հասարակության առաջընթաց շարժումը։ Պարտիայի գաղափա-
րական, դաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդրի բաղկացուցիչ մասն
է կազմում բուրժուական հայացքների ու բարքերի, մասնավոր-սեփակա-
նատիրական հոգեբանության մնացուկների դեմ մղվող պայքարը։

Դեպի կոմունիզմ մեր առաջընթացի ճանապարհին այլևս չպետք է լինեն
աշխատանքից խուսափողներ և անբարեխիղճ աշխատողներ, որովհետև նրանք
արգելակում են մեր զարգացումը, խանգարում են մեր ժողովրդի հանգիստ
կյանքը։

Կոմունիզմն ամենաարդարացի հասարակարգն է, որտեղ բոլորն էլ աշխա-
տում են ըստ իրենց ընդունակությունների և իրենց բոլոր առողջ պահանջմունք-
ները լիովին բավարարում հասարակական սպառման ֆոնդերից։ Այլևս ոչ մի
նյութական անհավասարություն, նյութական տարբերություն չի կարող լինել
մարդկանց միջև։ «Կոմունիզմը,— ասված է պարտիայի Ծրագրի նախագծում,—
կատարում է բոլոր մարդկանց սոցիալական անհավասարությունից, ճնշման ու
շահագործման բոլոր ձևերից, պատերազմների սարսափներից փրկելու պատ-
մական միսիան և աշխարհում հաստատում է Խաղաղություն, Աշխատանք,
Ազատություն, Հավասարություն ու Երջանկություն բոլոր ժողովուրդների հա-
մար»։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր նոր Ծրագրի նա-
խագծում հանդիսավոր կերպով հռչակում է, որ սովետական մարդկանց ներ-
կայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք։ Ուրեմն պետք է արժանի լինել
պատմական այդ մեծ երջանկությանը։ Դրա համար անհրաժեշտ է, որպեսզի
սովետական յուրաքանչյուր մարդ իր աշխատանքով մոտեցնի կոմունիզմի
հաղթանակը, իր բաժինը մուծի մարդկության երջանիկ ապագայի լուսաշող
շենքի կառուցման մեծ գործում։

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԻՄՔԸ

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են դարձնում սոցիալիստական գյուղատնտեսության մեքենայացման ու էլեկտրիֆիկացման վրա։ Առանց ժամանակակից կատարելագործված մեքենաների ու էլեկտրաշարժիչների օգտագործման, անհնարին է վարել կոլտնտեսություններն ու սովխոզները, ինտենսիվ կերպով առաջ մղել հանրային հողագործությունն ու անասնաբուծությունը։

Առաջիկայում ևս հանրային գյուղատնտեսության մեքենայացումը, հողագործությունն ու անասնաբուծությունը ավելի կատարյալ մեքենաներով ու մեխանիզմներով, հանքային պարարտանյութերով ու քիմիկատներով լիովին ապահովելը կմնա Կոմունիստական պարտիայի ուշադրության կենտրոնում։ Այդ նպատակով էլ ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծում նշված է, որ «Գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմք կծառայեն գյուղատնտեսության հետագա մեքենայացումը, կոմպլեքսային մեքենայացման կիրառումը և ավտոմատիկայի միջոցների օգտագործումը, տեխնիկա-տընտեսական բարձր ցուցանիշներ ունեցող, յուրաքանչյուր գոտու պայմաններին համապատասխանող մեքենաների սիստեմների արմատավորումը»։

Կոմունիստական պարտիայի հոգատարության արդյունքն է, որ մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը անընդհատ զինվում է նոր, ավելի կատարելագործված մեքենաներով ու գործիքներով, որոնց խելացի և լրիվ կարողությամբ օգտագործելու շնորհիվ գյուղատնտեսական արտադրության մեջ տարեց-տարի բարձրացվում է մեքենաների օգտագործման տեսակարար կշիռը և նվազում ձեռքի աշխատանքը։ Արդեն 1960 թվականի սկզբներին Սովետական Հայաստանի հանրային դաշտերում գործում էին 3899 տրակտոր (ֆիզիկական միավոր), հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի 1229 կոմբայն և հազարավոր այլ գյուղատնտեսական գործիքներ ու մեքենաներ։ 1959 թվականին գյուղատնտեսական աշխատանքների կարևորագույն պրոցեսներից՝ ցելի 90, ցրտահերկի՝ 97, հացահատիկային կուլտուրաների ցանքի՝ 86, բերքահավաքի՝ 66, բամբակի և շաքարի ճակնդեղի ցանքի՝ 100, սիլոսի զանգվածի մանրման 86 տոկոսը մեքենայացված էր։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների մեքենա-տրակտորային պարկի քանակական աճի հետ միասին մեծ փոփոխություններ են տեղի ունեցել նաև մեքենաների որակական կազմում։ Հին կցովի մեքենաների ու գործիքների փոխարեն այժմ գյուղատնտեսությունը հագեցվել է նոր, ինքնագնաց, ունիվերսալ կախովի մեքենաներով և գործիքներով։ Դրանք զգալիորեն հեշտացրել են կոլտնտեսականների աշխատանքը, իջեցրել արտադրական միավորի ինքնարժեքը, ապահովել ագրոտեխնիկական և զոոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսային կիրառումը։ Բավական է ասել, որ եթե 1953 թվականին ռեսպուբլիկայում չկար ՍԿ—2,6 մարկայի ոչ մի սիլոսային կոմբայն, ՍԿԳՆ—6 եգիպտացորենի շարքացան, ԿՐՆ—4 կուլտիվատոր և բազմաթիվ այլ կախովի մեքենաներ, ապա 1960 թվականին հանրային դաշտերում աշխատել են 148 սիլոսահավաք կոմբայն, 190 ԿՐՆ տիպի կուլտիվատոր, եգիպտացորենի կախովի 60 շարքացաններ և ժամանակակից այլ մոդեռնացված մեքենաներ։

Գյուղատնտեսական մեքենաներն արդեն լայնորեն օգտագործվում են բամբակագործության, ճակնդեղագործության մեջ ու եգիպտացորենի մշակության ասպարեզում։ Քառակուսի բնային եղանակով ցանք կատարելու համար ավելի շատ շարքացաններ ստանալու շնորհիվ ռեսպուբլիկայում բամբակենու ցանքերի ընդհանուր տարածության 45 տոկոսը այս տարի կատարվեց քառակուսի բնային եղանակով։ Բազմաթիվ բրիգադաներում բամբակենու, եգիպտացորենի մշակությունը կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու շնորհիվ կոլտնտեսականներն ազատվել են այնպիսի ծանր աշխատանքներից, ինչպիսիք են փխրեցումը, քաղհանը, չանաքը, եգիպտացորենի բերքի հավաքումը։ Այդ ամենը հնարավորություն են տալիս ավելի քիչ մարդկային աշխատանքի և նյութական միջոցների ծախսումով ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ ստանալ։

Մեր ռեսպուբլիկայում կան հարյուրավոր մեխանիզատորներ, որոնք հըմտորեն տիրապետելով գյուղատնտեսական մեքենաներին, հիանալի արդյունքների են հասել հողագործության ու անասնաբուծության զարգացման բնագավառներում։

Գյուղատնտեսությունը բարձր տեխնիկայով հագեցնելը և վերջինիս սիստեմատիկ մոդեռնացումը պայմաններ են ստեղծել գյուղատնտեսական կուլտուրաների մշակության և անասնապահության առանձին պրոցեսների մեքենայացումից անցնելու կոմպլեքսային մեքենայացման, որը խոշոր ազդակ է հանդիսանում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու և դրանց ինքնարժեքն իջեցնելու համար։

Մեքենա-տրակտորային կայանների վերակազմման և տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելու շնորհիվ մեծացել է գյուղատնտեսական արտելների պահանջարկը նոր, ավելի շատ քանակի ու բարձր որակի տեխնիկա ձեռք բերելու համար։ Սակայն կոլտնտեսություններին և սովխոզներին տեխնիկա մատակարարելու այն կարգը, որ գոյություն ուներ մինչև այս տարվա սկիզբը, իրեն չէր արդարացնում։ Գյուղատնտեսության մինիստրությունը (որն անցյալում զբաղվում էր գյուղատնտեսության նյութա-տեխնիկական մատակարարման հարցերով) ըստ էության հաշվի չէր առնում կոլտնտեսությունների և սովխոզների հայտերը՝ մեքենաների արտադրման և նրանց վաճառքի վերաբերյալ։ Հաճախ շրջանները, ռեսպուբլիկաներն ու մարզերն էին ուղարկում մեքենաներ, առանց հաշվի առնելու դրանց նկատմամբ կոլտնտեսությունների և սովխոզների իրական պահանջները։ Այդ հանգեցնում էր նրան, որ որոշ շրջաններ ուղարկվում էր այնպիսի տեխնիկա, որը այնտեղ չէր կարող նպատակահարմար օգտագործվել, մինչդեռ մյուս շրջանները զգում էին դրա կարիքը։ Գյուղատնտեսական մեքենաների արտադրության կազմակերպման ժամանակ անբավարար էր հաշվի առնվում երկրի տարբեր շրջանների զոնալ առանձնահատկությունները։ Երբեմն արդյունաբերությանը պասիվրվում էին մեքենաներ, պա-

հեստային մասեր և այլ նյութա-տեխնիկական արժեքներ, հաշվի չառնելով
կոլտնտեսությունների և սովխոզների իսկական պահանջները։ Դրա պատճառով
հաճախ տեղերում կուտակվում էին այնպիսի մեքենաներ ու գործիքներ, որոնց
կարիքը չէր զգացվում։ Միայն մեր ռեսպուբլիկայում վերջին տարիներս կու-
տակվել է մոտ 20 միլիոն ռուբլու (հին դրամով) ապրանքներ, որոնց կարիքը
համարյա չի զգացվում։

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը, պարտիա-
յի Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշման համաձայն, վերանայելով կոլ-
տնտեսություններին ու սովխոզներին գյուղատնտեսական տեխնիկա, պահես-
տամասեր, հանքային պարարտանյութեր և ուրիշ նյութա-տեխնիկական միջոց-
ներ վաճառելու հարցը, նպատակահարմար գտան փոխել այդ բնագավառում
գոյություն ունեցող կարգը, այն կառուցել նոր, ավելի դեմոկրատական հի-
մունքներով։ Այդ նպատակով ստեղծվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «Գյուղ-
տեխմիություն» համամիութենական միավորումը։

Ելնելով ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշումից,
ՀԿԿ Կենտրոնական Կոմիտեն և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը ան-
հրաժեշտ գտան ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մինիստրության ՆՏԿ-
ների, Կոլտնտեսային շինարարության գլխավոր վարչության և Հայկական ՍՍՌ
Մինիստրների Սովետին կից Մեքենաների առևտրի գլխավոր վարչության բա-
զայի վրա կազմակերպել Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի՝ «Հայգյուղ-
տնտտեխնիկա» միավորում՝ իր 34 շրջանային բաժանմունքներով։

«Հայգյուղտնտտեխնիկա» միավորման և նրա բաժանմունքների վրա է
դրված նաև ռեսպուբլիկայի բոլոր պետական և կոոպերատիվ ձեռնարկություն-
ներին ու կազմակերպություններին ավտոմեքենաներ, գյուղատնտեսական մե-
քենաներ, պահեստամասեր և ագրեգատներ վաճառելու պարտականությունը։
Դա լուրջ և պատասխանատու գործ է, որի անթերի կատարումը մեծ չափով
կնպաստի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական
Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշումների կենսագործմանն ու գյուղատնտե-
սության հետագա զարգացմանը։

Արդեն գործնական քայլեր են արվել, որպեսզի գյուղատնտեսությանը բո-
լոր տեսակի մեքենաներով, զանազան նյութերով ու առարկաներով մատակա-
րարումը ընթանա բացառապես կոլտնտեսությունների, սովխոզների և մյուս
ձեռնարկությունների պահանջի համապատասխան։

Այս տարվա առաջին կիսամյակում զգալիորեն շատ գյուղատնտեսական
մեքենաներ ու գործիքներ են վաճառվել ռեսպուբլիկայի կոլտնտեսություննե-
րին ու սովխոզներին, քան անցյալ տարի։ Այսպես, այս տարվա վաճառքի
պլանով նախատեսված 710 տրակտորի, 700 ավտոմեքենայի, 100 կոմբայնի,
120 սիլոսահատի, 180 սերմնացանի, ավելի քան 600 տրակտորի գութանի և
այլնի 70 տոկոսից ավելին արդեն վաճառվել է առաջին կիսամյակում։ Վաճառ-
քը տեղի է ունեցել առավելապես կոլտնտեսությունների ու սովխոզների պա-
հանջմունքների համաձայն։

«Հայգյուղտնտտեխնիկա» միավորումը ռեսպուբլիկայի կոլտնտեսություն-
ներին, սովխոզներին ու մյուս կազմակերպություններին գյուղատնտեսական
մեքենաներ, գործիքներ, պահեստամասեր մատակարարելու համար՝ այդպի-
սիք դրսից ստանալու հետ միասին, կազմակերպել է նաև սեփական արտա-
դրությունը։ Միավորման Ալավերդու և Վեդու շրջանային բաժանմունքները



արտադրում են լաֆետներ, որոնց կարիքը մեծ է մեր ռեսպուբլիկայում։ Կա-
րևորն այն է, որ այդ լաֆետներն իրենց տեխնիկական հարմարանքներով ու
այլ հատկանիշներով չեն տարբերվում գործարանային արտադրանքից։ Ապա-
րանի բաժանմունքն արտադրում է ԳԱԶ—51 ավտոմեքենայի թափք, Սևանի
բաժանմունքը՝ ԴՏ—54 տրակտորի շրջանակ, էջմիածնի բաժանմունքը՝ հար-
թեցուցիչ, Կիրովականի բաժանմունքը՝ խնոցիններ, Երևանի գործարանը՝
քուլդոզերի կախովի հարմարանք, որոնք շատ անհրաժեշտ են մեր ռեսպուբ-
լիկայի գյուղատնտեսությանը և անցյալում ներմուծվում էին եղբայրական
ռեսպուբլիկաներից։

Եթե ռեսպուբլիկայի ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկություն-
ները, ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի Մարտյան պլենումում, մտահոգվեին
արտադրության մնացուկներից գյուղատնտեսական գործիքներ և պահեստա-
մասեր թողարկելու հարցով, ապա մենք ավելի լավ կապահովեինք կոլտն-
տեսությունների ու սովխոզների պահանջները։ Գյուղատնտեսական մի շարք
գործիքների, մեքենաների ու պահեստամասերի արտադրություն ստեղծելու
նախնական արդյունքները գոհացուցիչ են։ Ձեռք բերած փորձի հիման վրա
հետագայում է՛լ ավելի կընդարձակվի դրանց արտադրությունը, որ հնարավո-
րություն կտա անխափան սպասարկելու կոլտնտեսություններին ու սովխոզ-
ներին։

Ինչպես հայտնի է, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ այս տարի,
անցյալ տարվա համեմատությամբ, զգալիորեն իջեցված գներով են վաճառ-
վում վառելանյութը, գյուղատնտեսական գործիքներն ու պահեստամասերը։
Դրա շնորհիվ կոլտնտեսություններն ընթացիկ տարում, անցյալ տարվա համե-
մատությամբ, կխնայեն ավելի քան 24 միլիոն ռուբլի (գների հին մասշտա-
բով)։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն արագ կերպով զարգաց-
նելու գործում վճռական դեր է խաղում կոմպլեքսային մեքենայացումը։ «Հայ-
գյուղտնտտեխնիկայի» միավորման շրջանային բաժանմունքների, կոլտնտեսու-
թյունների ու սովխոզների ղեկավարների կողմից որոշակի միջոցներ են ձեռ-
նարկվել անասնաբուծության մի շարք աշխատատար պրոցեսներ մեքենայաց-
նելու համար։ Կթի ագրեգատներ են դրված կաթնաապրանքային երկու ֆերմա-
յում, անասնաբուծական ութ ֆերմայում մեքենայացվել է կերի մատուցումը,
ջրամատակարարման սիստեմ է ստեղծվել 16 հազար գլուխ խոշոր եղջերավոր
անասունների համար. մինչև տարվա վերջը այդ սիստեմով կսպասարկվեն 58
հազար գլուխ անասուն։ Այս տարի 60 ֆերմայում կառուցվելու է ջրի ավտո-
մատ խմոցներ՝ 6 հազար գլուխ անասունի համար։

Չնայած նրան, որ կոլտնտեսությունների ու սովխոզների մեքենա-տրակ-
տորային պարկն անընդհատ հագեցվում է նոր, ավելի կատարելագործված մե-
խանիզմներով ու գործիքներով, ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում գյուղա-
տնտեսական արտադրության բազմաթիվ ճյուղերում դեռևս խիստ ցածր է մե-
քենայացման մակարդակը։ Այսպես, օրինակ, անցյալ տարի մեքենաներով
հավաքվեց միայն 300 հեկտար բամբակի բերք, մինչդեռ կոլտնտեսություննե-
րի տրամադրության տակ եղած մեքենաները լրիվ կարողությամբ օգտագործե-
լու միջոցով կարելի էր հավաքել 2500 հեկտարի բերք։ Ամբողջ ռեսպուբլիկա-
յում միջշարքային կուլտուրաների մշակության միայն 4 տոկոսն է մեքենայաց-
ված։ Եթե Հայաստանի հասկավոր կուլտուրաների ցանքը ընդհանուր առմամբ

մեքենայացված է 86 տոկոսով, ապա Սևանի շրջանում այն միայն 58 տոկոս է
կազմում։

Մեքենայական աշխատանքի մակարդակը հատկապես ցածր է շաքարի
ճակնդեղի, բոստանա-բանջարեղենի կուլտուրաների մշակման ու բերքահավա-
քի, ծխախոտի մշակման ու շարվածքի, ծղոտի հավաքման, դաշտերից ու արո-
տավայրերից քարերի հավաքման, ինչպես նաև խաղողի և պտղատու այգիները
մշակելու և խնամելու գործում։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրության
մեքենայացման դեռևս ցածր աստիճանը հետևանք է նաև այն բանի, որ լեռ-
նային և նախալեռնային շրջանների ցանքատարածությունների ավելի քան
65 տոկոսը գտնվում է ծովի մակերևույթից 1500 մետր բարձրության վրա, ռե-
լեֆային խիստ թեքություն ունեցող լեռների լանջերում, իսկ եղած տրակտոր-
ները և գյուղատնտեսական մյուս մեքենաները նախատեսված են հարթ դաշ-
տերում օգտագործելու համար։

Այդ թերությունները վերացնելու նպատակով «Հայգյուղտնտեխնիկա»
միավորումը գյուղատնտեսության և արդյունաբերության մասնագետների, գի-
տա-հետազոտական հիմնարկների հետ գործնական քայլերի է դիմել Հայաս-
տանի լեռնային ու նախալեռնային պայմաններում աշխատող գյուղատնտեսա-
կան մեխանիզմներ ու գործիքներ ստեղծելու համար։

Գյուղատնտեսության մեջ աշխատատար պրոցեսների մեքենայացման
ցածր մակարդակը հետևանք է և այն բանի, որ վատ է կազմակերպված մեքե-
նաների ու գործիքների խնամքն ու պահպանումը, դրանց լրիվ կարողությամբ
օգտագործումը։ Թալինի շրջանի Արեգ գյուղի կոլտնտեսության 5 տրակտոր,
2 կոմբայն, շարքացաններ, գութաններ և այլ գյուղգործիքներ կեղտոտ վիճա-
կում ընկած են ամբողջ մեքենատրակտորային պարկի տերիտորիայում։ Բեր-
քահավաքից հետո կոմբայնների վրայից չեն հանվել դանակները, շղթաները,
որոնք ժանգոտվել ու շարքից դուրս են եկել։ Մեքենաների խնամքը վատ է
կազմակերպված Աշտարակի շրջանի Զորափ, Սևանի շրջանի Գեղամավան,
Բասարգեչարի շրջանի Ծովակ գյուղերի կոլտնտեսություններում։ «Հայգյուղ-
տնտեխնիկայի» միավորման մասնագետները տեղերում սկսել են գործնական
աշխատանք կատարել տեխնիկայի խնամքը բարելավելու և այդ գործում կոլ-
տնտեսությունների ու սովխոզների ղեկավարների պատասխանատվությունը
բարձրացնելու համար։

Տրակտորների ու մեքենաների աշխատանքի պլանի ու մարշրուտի բացա-
կայության պատճառով դեռևս խիստ մեծ է պարապ վազքի ծավալը։

Գյուղատնտեսական տեխնիկան հոգատարությամբ պահպանելու և լրիվ
կարողությամբ օգտագործելու համար մեծ դեր ունեն պարտիական կազմակեր-
պությունները։ Նրանք պետք է մեխանիզատորների ուշադրությունը հրավիրեն
իրենց վստահված հիանալի տեխնիկան աչքի լույսի պես պահպանելու և այն
լրիվ կարողությամբ օգտագործելու վրա։ Զպետք է մոռանալ, որ այդ հարըս-
տությունը ձեռք է բերվել հանրային միջոցներով, որի մեջ կա յուրաքանչյուր
կոլտնտեսականի ու կոլտնտեսուհու արդար աշխատանքի մասը։

Գյուղատնտեսության մեջ մեքենատրակտորային պարկի բարձր արտա-
դրողականության և անխափան շահագործման համար կարևոր նշանակություն
ունի տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական մյուս մեքենաների
նորոգման ճիշտ պլանավորումն ու կազմակերպումը։ Դրա համար էլ «Հայգյուղ-



տնտեխնիկա»-ի շրջանային բաժանմունքների միջոցով այս տարի յուրաքանչ-
յուր կոլտնտեսության համար կազմվեց մեքենաների տեխնիկական խնամքի
ու նորոգումների պլան-գրաֆիկ։ Շատ կոլտնտեսություններ և սովխոզներ ար-
դեն կիրառում են այդ գրաֆիկը, որի շնորհիվ զգալիորեն կրճատվել է գյուղա-
տնտեսական մեքենաների պարապուրդը և բարձրացել աշխատանքի արտադրո-
ղականությունը։

Հաշվի առնելով անցած տարիների թերությունները, ներկայումս «Հայ-
գյուղտնտեխնիկա» միավորումը կոնկրետ միջոցառումներ է մշակում մե-
քենա-տրակտորային պարկի արտադրողականության բարձրացման և նրա
ռացիոնալ օգտագործման համար։ Այսպես, օրինակ՝ գյուղատնտեսական ար-
տադրության մեջ նոր տեխնիկան արմատավորելու և մեխանիզատորների
որակավորումը բարձրացնելու նպատակով ռեսպուբլիկայի գրեթե բոլոր շըր-
ջաններում կազմակերպվել են դասընթացներ։ Մեքենա-տրակտորային պար-
կի ճիշտ և բարձր արտադրողականությամբ շահագործելու վերաբերյալ շըր-
ջաններ են ուղարկվել տեխնիկական նորմատիվներ և հրահանգներ։ Մասնա-
գետները տեղերում օգնում են այդ գծով աշխատող ընկերներին հրահանգնե-
րը ճիշտ ըմբռնելու և կենսագործելու համար։

Գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձ-
րացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևորագույն գործոններից
մեկն էլ կոլտնտեսությունների ու սովխոզների էլեկտրիֆիկացումն է։ Մինչև
1960 թվականի սկիզբը ռեսպուբլիկայում էլեկտրիֆիկացված էր սովխոզնե-
րի 96 տոկոսը և կոլտնտեսությունների 92 տոկոսը։ Արտադրական նպատա-
կով էլեկտրական էներգիայի օգտագործումը 1950 թ. համեմատությամբ սով-
խոզներում ավելացել է 15 անգամ։ Էլեկտրաշարժիչների ընդհանուր հզորու-
թյունը 1959 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, սովխոզներում
ավելացել է 13 անգամ, կոլտնտեսություններում՝ գրեթե 6 անգամ։

Զնայած նրան, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզնե-
րը հիմնականում էլեկտրիֆիկացված են, սակայն արտադրության կարիքնե-
րի համար էլեկտրաէներգիան կիրառվում է աննշան քանակությամբ։ Այսպես,
գյուղատնտեսության մեջ գործածվող էլեկտրական էներգիայի ընդհանուր
քանակից միջին հաշվով միայն մեկ երրորդն է գործածվում արտադրության
կարիքների համար, ըստ որում այդ մեկ երրորդի 58 տոկոսն էլ օգտագործ-
վում է օժանդակ տնտեսության մեջ։ Էլեկտրիֆիկացված շատ կոլտնտեսու-
թյուններում հացահատիկի զտումն ու տեսակավորումը դեռ կատարվում է
ձեռքի աշխատանքով, պրիմիտիվ եղանակով, իսկ հացահատիկի կալսումն ու
սիլոսի կտրատումը՝ տրակտորների միջոցով։

Կոմունիզմի կառուցման վեհ պլանում արժանիվույն տեղ է հատկացված
սովետական գյուղի էլեկտրիֆիկացմանը, որպես աշխատանքի արտադրողա-
կանության և բնակչության կենցաղի էլ ավելի բարելավման կարևորագույն
միջոցառում։

ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծում ասված է, որ «Պարտիան կարևորագույն
խնդիրներից մեկն է համարում գյուղատնտեսության արագ էլեկտրիֆիկացումը։
Բոլոր սովխոզներն ու կոլտնտեսությունները արտադրական ու կենցաղային
նպատակների համար ապահովված կլինեն էլեկտրաէներգիայով պետական
էներգետիկ սիստեմներից, ինչպես նաև գյուղական էլեկտրակայանների կա-
ռուցման միջոցով»։

*Մենք բոլոր միջոցներն ու հնարավորություններն ունենք արտադրական կարիքների համար առավելագույն չափով էլեկտրաէներգիայի օգտագործման համար։ Արդեն գործնական աշխատանք է տարվում արտադրության մեջ լայնորեն օգտագործելու էլեկտրաէներգիան, ստացիոնար աշխատանքներում թույլ չտալով տրակտորների ու այլ շարժիչների օգտագործումը։ Դա հնարավորություն կտա ազատելու զգալի թվով բանվորների, կրճատելու աշխատանքային ծախսերը և իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը։*

*Արձագանքելով ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումներին, արդյունաբերության աշխատողները պարտավորվել են զգալիորեն ավելացնելու տրակտորների ու գյուղատնտեսական գործիքների, ինքնագնաց հենասարքերի, հացահատիկային, եգիպտացորենի, սիլոսային կոմբայնների, բամբակի չանաքի մեքենաների ու անասնաբուծության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու մեխանիզմների արտադրությունը։*

*Սոցիալիստական գյուղատնտեսությանը մեքենաներ, գործիքներ, պարարտանյութեր և այլ նյութա-տեխնիկական ապրանքներ մատակարարող կազմակերպությունների աշխատողներն իրենց բոլոր ջանքերը կգործադրեն, որպեսզի ճշտությամբ կատարեն արդյունաբերության և կոլտնտեսությունների միջև իրենց միջնորդի դերը, միաժամանակ օգնեն տնտեսություններին լրիվ կարողությամբ շահագործելու իրենց տրամադրության տակ եղած տեխնիկան։ Այդ կլինի մեր արժանավայել նվերը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարին։*

Լ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՀՍՍՌ Մինիստրների Սովետի «Հայգյուղտնտտեխնիկա» միավորման նախագահ

---

Գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմք կծառայեն գյուղատնտեսության հետագա մեքենայացումը, կոմպլեքսային մեքենայացման կիրառումը և ավտոմատիկայի միջոցների օգտագործումը, տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներ ունեցող, յուրաքանչյուր գոտու պայմաններին համապատասխանող մեքենաների սիստեմների արմատավորումը: Պարտիան կարևորագույն խնդիրներից մեկն է համարում գյուղատնտեսության արագ էլեկտրիֆիկացումը: Բոլոր սովխոզներն ու կոլտնտեսությունները արտադրական և կենցաղային նպատակների համար ապահովված կլինեն էլեկտրաէներգիայով պետական էներգետիկ սիստեմներից, ինչպես նաև գյուղական էլեկտրակայանների կառուցման միջոցով:

**(ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻՑ)**

# ԹՌՉՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Կոմունիստական շինարարության շահերը, ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացման շահերը ներկայումս պահանջում են գյուղատնտեսության և մասնավորապես անասնապահության զարգացման նոր, ավելի բարձր տեմպեր, խնդիր ունենալով հասնելու այն բանին, որպեսզի գյուղատնտեսության մթերքների արտադրությունը միշտ գերազանցի բնակչության պահանջը։*

*ՍՄԿՊ Նոր Ծրագրի նախագծում ասված է, որ մսի արտադրությունը առաջիկա տասնամյակում կաճի մոտավորապես երեք անգամ, իսկ հաջորդ տասնամյակում գրեթե չորս անգամ. կաթի արտադրությունը քսան տարում կաճի գրեթե երեք անգամ։ «Անասնապահական մթերքների արտադրության նախատեսված աճը կապահովվի անասունների և թռչունների գլխաքանակի ավելացման, նրանց ցեղայնության բարելավման և մթերատվության բարձրացման, կերի կայուն բազայի ստեղծման միջոցով՝ նախ և առաջ եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, կերի լոբազգիների և այլ կուլտուրաների հաշվին»։*

*Հաշվի առնելով անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման կարևորագույն նշանակությունը, ՍՍԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը ըստ յուրաքանչյուր ռեսպուբլիկայի սահմանեց անասնապահական մթերքների գնումների հանձնարարությունները մոտակա տարիների համար։ Առաջիկա տարիներում, երկրում ամբողջությամբ վերցրած, մսի տարեկան գնումները պետք է հասցվեն մինչև 50 միլիոն տոննայի։ Ձվի գնումները, յոթնամյա պլանի համաձայն, պետք է հասնեն 10 միլիարդ հատի։*

*Անասնաբուծական մթերքների արտադրության առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար անհրաժեշտ է հայտաբերել և օգտագործել բոլոր հնարավորությունները և ռեզերվները։ Մսի արտադրության ավելացման լուրջ ռեզերվներից մեկը թռչնաբուծությունն է։*

*Թռչնաբուծությունն անասնաբուծության առավել վաղահաս ճյուղերից մեկն է և մեծ ռեզերվ է հանդիսանում այնպիսի բարձրարժեք սննդամթերքների արտադրության ավելացման գործում, ինչպիսիք են դիետիկ միսը և ձուն։*

*Գյուղատնտեսական թռչունների տնտեսական առավելությունները պայմանավորված են նրանց մի շարք արժեքավոր բիոլոգիական առանձնահատկություններով, որոնցից առավել կարևորներն են՝ բազմապտղությունը (արագ բազմացումը), վաղահասությունը, կերի բարձր հատուցումը, մսի բարձր ելունքները և դիետիկ հատկությունները։*

*Արագ բազմանալու հատկության շնորհիվ, գյուղատնտեսական թռչունները տալիս են բազմաքանակ սերունդ։ Մեկ մայր բադը տարվա ընթացքում իր սերնդով կարող է արտադրել մինչև 130 կգ և ավելի միս, նույնը կարելի է*

ասել տնային թռչունների մյուս մասսու տեսակների (սագի, հնդկահավի) մասին: Մսաձվատու հավն իր սերնդով մեկ տարում նույնպես կարող է արտադրել մինչև 80—100 կգ միս:

Առանձնապես մեծ տնտեսական նշանակություն ունի գյուղատնտեսական թռչունների վաղահասությունը և արագ բազմանալու հատկությունը, որը հնարավորություն է տալիս արագորեն զարգացնելու տնտեսության այդ ճյուղը:

Բազմաթիվ առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ կերակրման և խնամքի նորմալ պայմաններ ստեղծելու դեպքում հնարավոր է ամենակարճ ժամանակամիջոցում (1—2 տարում) մի քանի անգամ ավելացնել թռչունների գլխաքանակը և թռչնաբուծական մթերքների արտադրությունը: Դրա համոզիչ օրինակ կարող են ծառայել էջմիածնի շրջանի Աղավնատուն, Քյոլանլու գյուղերի և Լենինի անվան կոլտնտեսությունների, Շահումյանի շրջանի Հաղթանակ գյուղի, Կամոյի շրջանի Նորադուզ գյուղի, Սիսիանի շրջանի Շաքի և Սիսիան գյուղերի, Նոյեմբերյանի շրջանի Կողբ գյուղի, Շամշադինի շրջանի Բերդ և Ղրղի գյուղերի, Վեդու շրջանի Նոր կյանք գյուղի կոլտնտեսությունների թռչնաբուծական ֆերմաները, որտեղ թռչունների գլխաքանակը մի քանի հարյուրից վերջին տարիներում հասավ մինչև 5—10 հազարի: Այս և նման մի շարք այլ ֆերմաների փորձը ցույց տվեց, թե որքան արագ կարելի է զարգացնել հանրային թռչնաբուծությունը և այն դարձնել տնտեսության ամենաեկամտաբեր ճյուղերից մեկը:

Աղավնատուն գյուղի կոլտնտեսության թռչնաբուծական ֆերման 1954 թ. ուներ ընդամենը 110 հավ, որոնցից յուրաքանչյուրը տարեկան միջին հաշվով տալիս էր ընդամենը 24 ձու. մեկ ձվի ինքնարժեքը 2 ռուբլուց ավելի էր (գների նախկին մասշտաբով): Շնորհիվ ձեռնարկած մի շարք զոոտեխնիկական և կազմակերպական միջոցառումների, արդեն 1956 թ. հավերի գլխաքանակը հասավ մոտ 700-ի, իսկ միջին ձվատվությունը՝ 124-ի, ձվի ինքնարժեքը՝ 2 ռուբլուց իջավ 30 կոպեկի: Ներկայումս այդ ֆերմայում հավերի գլխաքանակը 10 հազարից անցնում է: Յուրաքանչյուր 100 հեկտար հացահատիկային ցանքատարածության դիմաց կոլտնտեսությունը դեռ 1959 թ. արտադրեց 179 հազար ձու և 57 ցենտներ թռչունի միս: Ֆերմայի եկամուտը հասնում է մոտ կես միլիոն ռուբլու (գների հին մասշտաբով): Առանց չափազանցության կարելի է ասել, որ այդ թռչնաբուծական ֆերման ընդամենը 2—3 տարվա ընթացքում դարձավ ամենաառաջավորներից մեկը:

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում չափազանց կարևոր նշանակություն ունի կերի ռացիոնալ օգտագործումը: Այդ տեսակետից էլ գյուղատնտեսական թռչունները զգալի առավելություններ ունեն: Եթե խոշոր և մանր եղջերավոր անասունների մեկ կգ մսի արտադրության վրա ծախսվում է 7—9 կերի միավոր, խոզերինը՝ 5—6, ապա տնային թռչունների վրա ծախսվում է 3,5—4 կերի միավոր: Առավել բարձր է կերի հատուցումը ձվի արտադրության դեպքում. յուրաքանչյուր տասը ձվի արտադրության վրա հավը սպառում է 2,5—3 կերի միավոր, իսկ 10 ձուն իր սննդարարությամբ համարժեք է մեկ կգ միջին որակի տավարի մսին: Կերի այդպիսի բարձր հատուցման հասնելու համար անհրաժեշտ է բարելավել թռչունների տոհմային որակը, բուծել բարձր մթերատու ցեղեր և ստեղծել խնամքի նորմալ պայմաններ: Պրիմիտիվ, ցածր մթերատու ցեղերի թռչունները մեկ կիլոգրամ



մսի արտադրության վրա ծախսում են 7—8 կերի միավոր, իսկ 10 ձվի արտադրության վրա՝ 5—6 կերի միավոր, այլ կերպ ասած, երկու անգամ ավելի, քան կուլտուրական-բարձր մթերատու ցեղերի թռչունները: Ահա թե ինչու գյուղատնտեսական թռչունների ցեղային կազմի բարելավումը բացառիկ կարևոր նշանակություն ունի: Պատահական չէր, որ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը նշեց՝ անասնաբուծության բնագավառում ամեն կերպ բարելավել տոհմաբուծությունը:

Ներկա էտապում, երբ խնդիր է դրված հայտաբերել և օգտագործել բոլոր տեսակի հնարավորությունները և ռեզերվները անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար, առանձնապես կարևոր նշանակություն ունի թռչնաբուծության տարբեր ճյուղերի ինտենսիվացումը և մասնագիտացումը: Լենինը նշել է, որ գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը ոչ թե պատահական, ոչ թե տեղական, էպիզոդիկ, այլ բոլոր քաղաքակրթված երկրներին բնորոշ ընդհանուր երևույթ է:

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման վերաբերյալ լենինյան դրույթները սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ներկա էտապում իրենց կոնկրետ արտահայտությունը գտան խոշոր մասնագիտացված պետական տնտեսությունների կազմակերպման մեջ, որոնք մեծ քաղաքների բազմամիլիոն բնակչությանն ապահովում են կարևորագույն սննդամթերքներով—կարտոֆիլով, բանջարեղենով, թռչունի մսով և դիետիկ ձվով:

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան (1958 թ.) պլենումում տված իր զեկուցման մեջ ընկ. Ն. Ս. Խրուշչովը վերլուծելով այդ մասնագիտացված տնտեսությունների նշանակությունը, նշեց, որ բանջարեղենի և կարտոֆիլի արտադրության համակենտրոնացումը խոշոր մասնագիտացված տնտեսություններում՝ դա ցանքերի հասարակ տեղափոխություն չի մի խումբ տնտեսություններից մի այլ խումբ: Դա գյուղատնտեսական կարևորագույն մթերքների արտադրության կազմակերպման նոր էտապ է, որը բնութագրվում է նրանով, որ արտադրության համակենտրոնացման և մասնագիտացման, արտադրական պրոցեսների մաքսիմալ մեքենայացման հիման վրա պայմաններ են ստեղծվում հասնելու աշխատանքի իրոք որ բարձր արտադրողականության, որպեսզի աշխատանքի և միջոցների մինիմալ ծախսմամբ ստանալ մթերքների մաքսիմալ քանակ:

Այս դրույթը լիովին հաստատվում է երկրի տարբեր բնատնտեսական շրջաններում կազմակերպված ու մասնագիտացված թռչնաբուծական տնտեսությունների—թռչնաբուծական ֆաբրիկաների, սովխոզների և կոլտնտեսային խոշոր թռչնաբուծական ֆերմաների աշխատանքի փորձով:

ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թ. Դեկտեմբերյան պլենումում նորից անդրադառնալով այդ հարցին, ընկ. Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Մենք ապրում ենք մասնագիտացման դարում: Պետք է մասնագիտացնել տնտեսությունը»:

Բազմամյա փորձով, հենց մեր ռեսպուբլիկայի պայմաններում, հաստատված է, որ նույնանման բնակլիմայական պայմաններում թե՛ դաշտավարությունից, թե՛ անասնաբուծությունից ավելի բարձր բերքատվություն և մթերատվություն են ստանում այն տնտեսությունները, որոնք մասնագիտացված են: Այդպիսի տնտեսությունները միաժամանակ ավելի շահավետ են:

Տնտեսության տվյալ ճյուղի էֆեկտիվությունն առավել բարձր է լինում այն դեպքում, երբ տնտեսությունը վարվում է գիտականորեն հիմնավորված

եղանակով՝ ելնելով տվյալ գյուղատնտեսական զոնայի, շրջանի և կոնկրետ տնտեսության բնակլիմայական և տնտեսական առանձնահատկություններից։ Ահա թե ինչու պարտիայի Կենտրոնական Կոմիտեն տնտեսությունը գիտականորեն հիմնավորված սիստեմով վարելու հարցին այդքան մեծ կարևորություն է տալիս, այն դիտելով որպես պետական խոշոր նշանակություն ունեցող խնդիրներից մեկը։

Անդրադառնալով թռչնաբուծության ինտենսիվացման և մասնագիտացման հարցերին, անհրաժեշտ է ամենից առաջ ընդգծել, որ գյուղատնտեսական արտադրության այդ ճյուղը ինչպես Սովետական Միությունում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում ունի զարգացման մեծ հեռանկարներ։ Այստեղ կան դեռևս չօգտագործված մեծ ռեզերվներ, որոնց պետք է կյանքի կոչել։

Ի տարբերություն գյուղատնտեսական մյուս կենդանիների, տնային թռչունների վերարտադրությունը կատարվում է ինդուստրիալ եղանակով՝ արհեստական ինկուբացիայի միջոցով, որը հնարավորություն է տալիս լիկվիդացնել մատղաշների աճեցման սեզոնային բնույթը և ապահովել արտադրական հոտի անընդմեջ համալրումը ամբողջ տարվա ընթացքում։ Այսպիսով, արդյունաբերական թռչնաբուծության ինտենսիվացման հիմքը կազմում է արհեստական ինկուբացիան։ Ինտենսիվացման մյուս կարևոր էլեմենտներից կարելի է նշել թռչնաբուծության տարբեր ճյուղերի ճիշտ տեղաբաշխումը և մասնագիտացումը, տնտեսության չափի, թռչունների տեսակների և պահվածքի եղանակի ճիշտ ընտրությունը և այլն։

Թռչնաբուծության ինտենսիվացման որոշիչ պայմաններից մեկը կերի կայուն բազայի առկայությունն է։

Թռչնաբուծության ինտենսիվացման էֆեկտիվությունը զգալի չափով կախված է տնտեսության ռիթմիկ աշխատանքից, տեխնոլոգիական պրոցեսների ճիշտ կազմակերպումից, աշխատատար պրոցեսների մեքենայացումից և հիմնական մթերքների հավասարաչափ արտադրությունից՝ տարվա բոլոր եղանակներին։ Այդ տեսակետից մեծ նշանակություն են ձեռք բերում մի կողմից արտադրական հոտի անընդմեջ համալրումը (արհեստական ճտահանության շնորհիվ), իսկ մյուս կողմից՝ արհեստական լուսավորության օգտագործումը աշնանային և ձմեռային ամիսներին, որը հնարավորություն է տալիս թռչուններից հավասարաչափ մթերատվություն (ձվատվություն) ստանալու տարվա բոլոր եղանակներին։

Տնտեսության ինտենսիվացման թվարկած էլեմենտներից յուրաքանչյուրն առանձին վերցրած ունի կարևոր նշանակություն, սակայն բազմաթիվ հետազոտություններով հաստատված է, որ անհամեմատ ավելի բարձր էֆեկտ է ստացվում այն ժամանակ, երբ դրանք օգտագործվում են համատեղ-կոմպլեքսային եղանակով։ Եթե անտեսվում կամ թերագնահատվում է այդ կոմպլեքսի որևէ օղակը, միևնույն է, թե որը, ապա անխուսափելիորեն այդ անդրադառնում է ինտենսիվացման էֆեկտիվության վրա։

Հայաստանում թռչնաբուծության ինտենսիվ եղանակները սկսեցին կիրառվել վերջին տարիներս։ Առաջին թռչնաբուծական ֆաբրիկան, որտեղ կիրառվում է մատղաշների աճեցման և հավերի պահվածքի վանդակային եղանակը, գործարկվեց 1955 թ. վերջին, Էջմիածնից 6 կիլոմետր հեռավորության վրա գտնվող Շահումյան ավանում։ Այդ անդրանիկ տնտեսության փորձի հիման վրա նույնանման ֆաբրիկաներ կազմակերպվեցին Լենինականում, Երև-



վանում և Սպիտակում։ Խոշոր թռչնաբուծական սովխոզներ ստեղծվեցին Գետամիջում (Կոտայքի շրջան), Լիճքում (Մարտունու շրջան) և Հնաբերդում (Արթիկի շրջան)։ Ցույց տալու համար, թե ինչպիսի խոշոր դեր են խաղում այդ մասնագիտացված տնտեսությունները թռչնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում, բավական է բերել մի քանի համեմատական տվյալներ։ 1959 թ. վերևում նշված երեք թռչնաբուծական ֆաբրիկաները (Էջմիածնի, Լենինականի և Երևանի) արտադրեցին 6891 հազար ձու, որը կազմեց ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսություններում արտադրված ձվի ավելի քան 53 տոկոսը։ Այդ երեք մասնագիտացված տնտեսությունները նույն տարում արտադրեցին կոլտնտեսություններում արտադրած թռչունի մսի 42 տոկոսը։

Հավերի միջին ձվատվությունը թռչնաբուծական ֆաբրիկաներում հասնում է մոտ 150-ի կամ երկու անգամ ավելի է, քան կոլտնտեսություններում։ Ֆաբրիկաներում և սովխոզներում անհամեմատ ավելի ցածր է նաև թռչնաբուծական մթերքների ինքնարժեքը։

Թռչնաբուծական ֆաբրիկաները մեծ դեր են խաղում նաև տոհմային ձվի արտադրության և տոհմային թռչունների տարածման տեսակետից։ Նրանք ամեն տարի ինկուբատորային կայաններին են հանձնում տասնյակ հազար տոհմային ձու և անմիջապես կոլտնտեսություններին են վաճառում մեծ քանակի մեկ օրական ճուտ՝ աճեցնելու նպատակով։

Սակայն, անհրաժեշտ է նշել, որ թռչունների պահվածքի վանդակային եղանակը մեխանիկորեն չի կարելի տարածել ամենուրեք։ Այդ սիստեմը բարձր արդյունք է տալիս միայն այն դեպքում, երբ տնտեսությունը խոշոր է, արտադրական հոտի գլխաքանակը 20—25 հազարից պակաս չէ, ունի սեփական ինկուբատորիա, փորձված մասնագիտական կադրեր, ճիշտ կառուցված տեխնոլոգիական ցիկլ։

Թռչնաբուծական ֆաբրիկաները կոչված են առաջին հերթին թարմ սննդամթերքներ մատակարարել խոշոր քաղաքների բնակչությանը, ուստի նպատակահարմար է այդ տիպի տնտեսությունները ստեղծել քաղաքամերձ զոնաներում՝ խոշոր արդյունաբերական կենտրոնների մոտ։ Դեռևս ՍՄԿԿ Կենտկոմի 1955 թվականի հունվարյան պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովն իր զեկուցման մեջ ասաց. «Անհրաժեշտ է խոշոր քաղաքների շրջակայքում կազմակերպել հատուկ թռչնաբուծական ֆաբրիկաներ։ Այդ տեսակետից մեզ մոտ կա օգտակար փորձ։ Տոմիլինյան թռչնաբուծական ֆաբրիկայում, որն ունի 141 հազար ածան, յուրաքանչյուր ածանից անցյալ տարի ստացվել է 190 ձու, իսկ ընդամենը մեկ տարում ֆաբրիկան տվեց 24 միլիոն ձու, 8,5 հազար ցենտներ դիետիկ միս և ստացավ 7 միլիոն 370 հազար ռուբլու շահույթ»։ Պլենումը խնդիր դրեց նման ֆաբրիկաներ ստեղծել նաև Սովետական Միության մյուս խոշոր քաղաքների շրջակայքում։ Այդ ուղղությամբ վերջին տարիներին մեծ աշխատանք է կատարվել։ Ներկայումս գրեթե բոլոր միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքների և մի շարք խոշոր արդյունաբերական կենտրոնների մոտ ստեղծված են թռչնաբուծական ֆաբրիկաներ։

Լայն արտադրական փորձը միաժամանակ ցույց տվեց, որ թռչունների պահվածքի վանդակային եղանակը իրեն չի արդարացնում այն կոլտնտեսությունների ֆերմաներում, որտեղ թռչունների գլխաքանակը 4—5 հազարից չի անցնում։ Պետք է նկատի ունենալ նաև, որ թռչունների վանդակային պահ-

վածքը (հատուկ շենքերի կառուցում, մարտկոցային վանդակների և այլ կահավորանքի ձեռք բերում) համեմատաբար մեծ կապիտալ ներդրումներ է պահանջում, որը փոքր տնտեսությունների պայմաններում շահութաբեր չէ։

Կոլտնտեսային սիստեմում անհամեմատ ավելի բարձր էֆեկտ է տալիս ինտենսիվ թռչնաբուծության մի նոր եղանակ—լայն գաբարիտային թռչնանոցներում չփոփոխվող ցամքարի վրա թռչունների պահվածքի եղանակը։ Այդպիսի տիպային թռչնանոցներն ունենում են 6—8 հազար հասակավոր թռչունի (հավերի) տարողություն, կոմպլեքսային ձևով մեքենայացված են, որը մեկ թռչնապահին հնարավորություն է տալիս սպասարկելու մինչև 12 հազար հասակավոր թռչուն։

Էջմիածնի շրջանի Աղավնատուն գյուղի թռչնաբուծական ֆերման, որի մասին խոսք եղավ վերևում, թռչունները պահում է հենց այդպիսի թռչնանոցում։ Այդ եղանակը իրեն լիովին արդարացնում է մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների պայմաններում և մեր համոզմամբ այն պետք է դառնա կոլտնտեսային թռչնաբուծության հիմնական և ամենատարածված եղանակը։ Եթե հետագա խոշորացման հետևանքով կոլտնտեսությունների թիվը ռեսպուբլիկայում կազմի թեկուզ 600-ից ոչ ավելի (1959 թվականի 785-ի դիմաց) և յուրաքանչյուր կոլտնտեսություն միջին հաշվով ունենա միայն մեկ լայն գաբարիտային թռչնանոց, թեկուզ 5—6 հազար ածանի տարողությամբ, ապա թռչունների ընդհանուր գլխաքանակը կկազմի 3—3,6 միլիոն, որը լիովին ապահովում է թռչունների գլխաքանակի ավելացման ոչ միայն յոթնամյա պլանի նախատեսումները, այլև առաջիկա 20-ամյա հեռանկարային նախանշումները։

Հատուկ ուսումնասիրություններով ապացուցված է, որ թռչունների փոքր գլխաքանակ ունեցող ֆերմաներն իրենց չեն արդարացնում։ Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության Գյուղատնտեսական էկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտի տվյալների համաձայն, թռչնաբուծական այն ֆերմաները, որտեղ ածանների գլխաքանակը 1500-ից պակաս է, որպես կանոն, շահութաբեր չեն լինում։ Այսպես, օրինակ, 700-ից մինչև 1000 ածան ունեցող ֆերմաները (որոնց թիվը առ 1 հունվարի 1960 թ. դրությամբ հասնում էր 122-ի) հազար ձվի արտադրության վրա ծախսում են 33,4 աշխօր, յուրաքանչյուր 100 հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության դիմաց արտադրում են ընդամենը 6,2 հազար ձու, մեկ ձվի ինքնարժեքը կազմում է 1ռ. 20 կ. (գների հին մասշտաբով)։ Իսկ այն ֆերմաներում, որտեղ ածանների գլխաքանակը 1500-ից ավելի է (36 ֆերմայի միջին գլխաքանակը կազմել է 1720 ածան) հազար ձվի արտադրության վրա ծախսվում է 11 աշխօր, 100 հեկտար հացահատիկային ցանքատարածության դիմաց արտադրվում է 17,4 հազար ձու (մոտ երեք անգամ ավել), իսկ մեկ ձվի ինքնարժեքը կազմում է 65 կոպեկ։ Այս թվերը համոզիչ կերպով ցույց են տալիս, որ մեր ռեսպուբլիկայի պայմաններում կոլտնտեսային թռչնաբուծական ֆերմաներում ածանների գլխաքանակը պետք է կազմի ոչ պակաս 1800—2000, այն հաշվով, որպեսզի առաջիկայում այն հասցվի 6—8 հազարի, որը հնարավորություն կտա մի քանի անգամ ավելացնել ձվի և մսի արտադրությունը և ապահովել բնակչության պահանջը։

Թռչնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում, ինչպես նշվեց, վճռական նշանակություն ունի կերի բազան և նրա ռացիոնալ օգտագործումը։



Մեզ մոտ մեծ հնարավորություններ կան ոչ սննդային հումքից կերի արդյունաբերական արտադրություն կազմակերպելու համար։ Հատուկ գիտական հետազոտությունների հիման վրա ապացուցված է մեր ռեսպուբլիկայում կերի դրոժների արտադրության կազմակերպման նպատակահարմարությունը։ Առաջին գործարանը, որի նախագիծը վաղուց արդեն պատրաստ է, տարեկան թողարկելու է 10 հազար տոննա հիդրոլիզային (կերի) դրոժ, որը պարունակում է մոտ 50 տոկոս բարձրմոլեկուլային սպիտակուցներ և չափազանց արժեքավոր կեր է հատկապես թռչունների համար։ Մեր ուսումնասիրությունները ցույց են տվել, որ թռչունների կերաբաժնում օրական 5 գրամ դրոժ ավելացնելու դեպքում հավերի ձվատվությունն ավելանում է 21—35 տոկոսով։ Դրոժները որպես սպիտակուցների և վիտամինների աղբյուր առանձնապես մեծ նշանակություն ունեն կոմբիկերային արդյունաբերության համար, որին պետք է լայն զարկ տալ, կոմբիկերային գործարանները տեղադրելով ըստ գյուղատնտեսական զոնաների։

Թռչունների համար կերի շատ էժան (ըստ էության ձրի) աղբյուր են հանդիսանում խաղողի վերամշակման մնացուկները, այսպես կոչված մուզը, որը բաղկացած է խաղողի կորիզից և վեգետատիվ մասերի մնացորդներից։ Դրանք կազմում են վերամշակվող խաղողի մոտ 25 տոկոսը։ Մեզ մոտ տարեկան ստացվում է մի քանի տասնյակ հազար տոննա այդպիսի մնացուկներ։ Փորձերը ցույց են տվել, որ հավերի կերաբաժնում հատիկային կերի մինչև մեկ երրորդ մասը խաղողի մուզով փոխարինելու դեպքում, նրանց մթերատվության մակարդակը լիովին պահպանվում է։

Թռչունների մթերատվության բարձրացման ուժեղ խթանիչներից մեկն է բամբակի քուսպը, որը նույնպես շատ հարուստ է սպիտակուցներով (Երևանի Ձեթ-օճառ կոմբինատի արտադրած քուսպը պարունակում է 40 տոկոս սպիտակուց)։ Մինչև վերջին տարիները այդ քուսպը թռչնաբուծության մեջ չէր օգտագործվում, կասկածելով, որ նրա մեջ պարունակվող հոսիպոլ կոչվող ալկալոիդը կարող է թունավորիչ ներգործություն թողնել թռչունների օրգանիզմի վրա։ Կատարված փորձերը ցույց տվին, որ այդ ենթադրությունները անհիմն են։ Հավերի կերաբաժնում օրական մինչև 15—20 գրամ բամբակի քուսպ մտցնելը ոչ միայն որևէ բացասական ազդեցություն չի թողնում թռչունների (կամ մթերքի որակի) վրա, այլև նրանց ձվատվության բարձրացման ուժեղ խթանիչ է հանդիսանում։ Վերջին տարիներս մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մեծ մասը թռչնաբուծության մեջ լայնորեն օգտագործում է այդ կերանյութը, բայց կան կոլտնտեսություններ, որոնք անհիմն կերպով ձեռնպահ են մնում բամբակի քուսպով թռչուններին կերակրելուց։ Այդ երևույթին պետք է վերջ դնել առանց հապաղման։ Վերջապես, Հայաստանի պայմաններում էժան կերի հարուստ աղբյուր է հանդիսանում արոտականաչը։ Գյուղամերձ բնական արոտներում տարեկան կարելի է բտել տասնյակ հազարավոր սագեր, օգտագործելով չնչին քանակի խտացրած կեր։ Սագերը, շնորհիվ իրենց բիոլոգիական որոշ առանձնահատկությունների, ըստ էության արոտային թռչուններ են, նրանք ընդունակ են օրական ուտելու մինչև 3—4 կգ կանաչ։ Էստոնական ՍՍՌ-ում կատարված փորձերը ցույց են տվել, որ արոտում բտելու դեպքում երեք ամսական սագիկի կենդանի քաշը հասնում է մոտ 4 կիլոգրամի, իսկ 5 ամսական հասակում՝ մոտ 5 կիլոգրամի։ Հինգ ամսվա ընթացքում մեկ սագիկը օգտագործում է ընդամենը 7,3 կգ հատիկային և

՝սպիտակուցային կեր և 377 կգ արոտականաչ։ Արոտային բտման դեպքում մեկ կգ սագի մսի ինքնարժեքը կազմում է 8 ռ. 10 կ. (հին դրամով)։ Արոտները լավ մշակելու, պարարտացնելու և հերթափոխությամբ օգտագործելու դեպքում յուրաքանչյուր հեկտարից ստացվում է մինչև 28 տոննա կանաչ մասսա կամ 4767 կերի միավոր։ Այլ կերպ ասած, յուրաքանչյուր հեկտարի վրա կարելի է բտել 700—750 սագիկ մինչև 3—4 ամսական հասակը և արտադրել 2,8—3 տոննա միս։

Անհրաժեշտ է լուրջ աշխատանք ձեռնարկել գյուղամերձ բնական արոտները արհեստական-կուլտուրական արոտների վերածելու, որը հնարավորություն կտա լայնորեն զարգացնելու սագաբուծությունը, ինչպես նաև հնդկահավաբուծությունը։ Դրա շնորհիվ ռեսպուբլիկայում զգալիորեն կավելանա թռչունի մսի արտադրությունը։

Թռչունի մսի արտադրության ավելացման գործում բարձր էֆեկտ է տալիս մատղաշ ճտերի, այսպես կոչված բրոյլերների աճեցման կազմակերպումը։ Բրոյլերների աճեցումը հնարավորություն է տալիս էլ ավելի բարձրացնելու կերի հատուցումը և իջեցնելու մսի ինքնարժեքը։ Թռչունի մսի մասսայական արտադրության այդ եղանակը լայն տարածում ունի արտասահմանյան մի շարք երկրներում, մասնավորապես ԱՄՆ-ում։ Վերջին տարիներս այդ առաջավոր եղանակը սկսել է տարածում գտնել նաև մեր երկրում։ Բրոյլերների արտադրության էությունը կայանում է նրանում, որ մատղաշ թռչունի (ճտի) կենդանի քաշը 75—90 օրական հասակում հասնում է 1,5—1,7 կիլոգրամի և ունենում է բարձրորակ համեղ միս։

Քանի որ թռչունը մեծ արագությամբ աճում է հենց այդ հասակում, ուստի մեկ միավոր քաշաճի վրա համեմատաբար ավելի քիչ կերի միավոր է ծախսվում, որի շնորհիվ էլ ցածր է լինում մսի ինքնարժեքը։ Ավելի քան քսանամյա փորձերը հաստատել են, որ բրոյլերների աճեցումը դրական արդյունք է տալիս միայն այն ժամանակ, երբ այդ նպատակի համար օգտագործվում են մսա-ձվատու ցեղերի և նրանց ու ձվատու ցեղերի արդյունաբերական տրամախաչումից ստացված խառնածինները։ Հայաստանի պայմաններում բրոյլերների աճեցման համար հաջողությամբ կարելի է օգտագործել վերջերս ստեղծված երևանյան հավերի ցեղախմբի մատղաշները, ինչպես նաև այդ ցեղախմբերի աքաղաղների և ձվատու ուղղություն ունեցող ռուսական սպիտակ ցեղի հավերի արդյունաբերական տրամախաչումից ստացված առաջին սերնդի խառնածինները։

Երևանյան ցեղախմբի հավերը ներկայումս արդեն բավականաչափ տարածում են գտել ռեսպուբլիկայում և նրանք պետք է լայնորեն օգտագործվեն բրոյլերային արտադրությունը կազմակերպելու համար։

***

Բերած տվյալները ցույց են տալիս, որ Հայաստանում արդյունաբերական թռչնաբուծության զարգացման մեծ հեռանկարներ կան։ Վաղահաս անասնաբուծության այդ ճյուղի ամենուրեք ինտենսիվացումը մեր ռեսպուբլիկայում պայմանավորված է երկու հիմնական գործոններով՝ մի կողմից նպաստավոր բնակլիմայական պայմանների առկայությամբ գրեթե բոլոր գյուղատնտեսական զոնաներում, իսկ մյուս կողմից՝ թռչնաբուծական մթերքների



նկատմամբ բնակչության պահանջի անընդհատ աճով։ Յոթնամյա պլանի և հեռանկարային նախանշումների համաձայն թռչնաբուծական մթերքների արտադրության զգալի աճը (ոչ պակաս 3—4 անգամ 1958 թ. համեմատությամբ) պետք է ապահովվի ինչպես թռչունների գլխաքանակի ավելացման, այնպես էլ նրանց մթերատվության զգալի բարձրացման ճանապարհով։ Սակայն պետք է նկատի ունենալ, որ հողապակասության և հատիկային կուլտուրաների ցանքատարածությունների սահմանափակության պատճառով մեզ մոտ թռչունների գլխաքանակը հնարավոր չէ ավելացնել շատ մեծ չափերով, ուստի հիմնական շեշտը պետք է դնել մթերատվության լուրջ բարձրացման և արտադրության խոր մասնագիտացման վրա։

Առաջիկայում անհրաժեշտ է մեծ ուշադրություն նվիրել ինկուբատորային կայանների ցանցի ընդլայնման վրա այն հաշվով, որպեսզի նրանց թիվը յոթնամյակի վերջին տարում հասնի ոչ պակաս 40—43 (սովխոզների և կոլտնտեսությունների ինկուբատորների հետ միասին) և տարեկան թողարկվի 9—10 միլիոն մեկ օրական ճուտ, որի մոտ 50 տոկոսը կօգտագործվի մսացու ճտեր աճեցնելու համար։ Միայն այդ դեպքում հնարավոր կլինի ապահովել յոթնամյա պլանով նախատեսված տարեկան (1965 թ.) 220 միլիոն ձվի և մոտ 3 հազար տոննա թռչունի մսի արտադրությունը։

Թռչնաբուծության մասնագիտացումը և տեղադրումը պետք է ընթանա մի կողմից ձվի, իսկ մյուս կողմից թռչունի մսի (բրոյլերային արդյունաբերության) արտադրության ուղղությամբ։ Խոշոր պետական թռչնաբուծական տրեստների (սովխոզների և ֆաբրիկաների) թիվը յոթնամյակի վերջին նպատակահարմար է հասցնել ոչ պակաս 15—16-ի։ Անհրաժեշտ է կազմակերպել նաև մի շարք տոհմային թռչնաբուծական տնտեսություններ ըստ գյուղատնտեսական զոնաների։ Թռչունների պահվածքի վանդակային սիստեմը մեր ռեսպուբլիկայի պայմաններում նպատակահարմար է կիրառել հիմնականում քաղաքամերձ գոտում—թռչնաբուծական ֆաբրիկաներում, իսկ ճտերի վանդակային աճեցումը (մինչև 45—60 օրական հասակը) ամենուրեք՝ թե՛ ֆաբրիկաներում, սովխոզներում և թե՛ կոլտնտեսային թռչնաբուծական ֆերմաներում։ Դրա նպատակահարմարությունը հաստատված է լայն արտադրական փորձերով։

Կոլտնտեսային թռչնաբուծական ֆերմաներում թռչունների պահվածքի հիմնական եղանակը պետք է լինի զբոսաբակային, այսինքն խոր չփոփոխվող ցամքարի վրա պահելու եղանակը՝ լայն գաբարիտային-կոմպլեքս մեքենայացված տիպային թռչնանոցներում։

Արտադրական և տնտեսական բարձր ցուցանիշների հասնելու համար անհրաժեշտ է մեծ ուշադրություն դարձնել թռչունների տոհմային որակի բարելավման վրա։ Այդ տեսակետից նույնպես դրական դեր կարող է խաղալ հավերի երևանյան ցեղախմբի տարածումը և հետագա կատարելագործումը։

Վերջապես թռչնաբուծության հետագա զարգացման համար վճռական նշանակություն ունի կերի բազայի ամրապնդումը։ Թռչնաբուծության կերի բազայի ամրապնդումը մեր պայմաններում պետք է ընթանա մի կողմից դաշտային կերահայթայթման ճանապարհով՝ կերային (հատիկային) կուլտուրաների ցանքատարածությունների տեսակարար կշռի բարձրացման միջոցով, իսկ մյուս կողմից՝ ոչ սննդային հումքից սպիտակուցային և վիտամինային կերի արդյունաբերական արտադրության ճանապարհով։ Թռչնաբուծության կերի

*բալանսում զգալի տեղ կարող են բռնել վերամշակվող արդյունաբերության (ալրաղացային, ձեթ-օճառ, գինեգործական և այլն) մնացուկները, որոնք պետք է լայնորեն օգտագործվեն թռչնաբուծության մեջ։*

*Թռչնաբուծության համար էժան կերի լուրջ աղբյուր են հանդիսանում բնական արոտները, մասնավորապես սագաբուծության և հնդկահավաբուծության զարգացման համար։ Նպատակահարմար է գյուղամերձ արոտները վերածել արհեստական-կուլտուրական արոտների, որը հնարավորություն կտա արտադրելու մեծ քանակի էժան թռչունի միս՝ խտացրած կերի մինիմալ ծախսումով։*

*Այն շրջաններում, որոնք հարուստ են բնական կերով, հարուստ ջրամբարներով, նպատակահարմար է զարգացնել նաև բադաբուծությունը։ Բադերը պատկանում են տնային թռչունների ամենավաղահաս մսատու տեսակին և համապատասխան պայմանների առկայության դեպքում շատ բարձր են հատուցում կերը։*

*Թռչնաբուծությունը կարող է և մոտակա տարիներին պետք է դառնա մեր ռեսպուբլիկայի վաղահաս անասնաբուծության ամենազարգացած և արդյունավետ ճյուղերից մեկը։*

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Հայկական ՍՍՌ ԳԱ ակադեմիկոս

---

Գյուղատնտեսական մթերքների ասպարեզում ամբողջ բնակչության ու ժողովրդական տնտեսության պահանջները լրիվ բավարարելու նպատակով խնդիր է դրվում 10 տարում *գյուղատնտեսության արտադրանքի ընդհանուր ծավալը* մեծացնել մոտավորապես երկու ու կես անգամ, իսկ 20 տարում՝ երեք ու կես անգամ: Գյուղատնտեսական արտադրանքի աճը պետք է գերազանցի այդ արտադրանքի աճող պահանջարկից: Սովետական Միությունը առաջին տասնամյակում Ամերիկայի Միացյալ Նահանգներից կանցնի բնակչության մեկ շնչին ընկնող հիմնական գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ:

**(ՍՄԿԿ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻՑ)**

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿՈԴԵՔՍԻ ՄԱՍԻՆ

*Մեր երկիրը Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայից հետո մեծ ու աննախընթաց նվաճումների է հասել։ Կոմունիստական պարտիայի և Սովետական իշխանության ամենամեծ նվաճումը՝* կապիտալիզմի լծից ազատագրված սովետական մարդու ձևավորումը, սոցիալիստական հասարակության արժանավոր քաղաքացու կոփումն ու դաստիարակումն է:

*Սովետական մարդու՝ սոցիալիստական երկրի արժանավոր քաղաքացու դաստիարակումը ոչ միայն խոշոր հաղթանակ է գործնականի ասպարեզում, նա միաժամանակ մարքս-լենինյան տեսության անժխտելի և մեծ հաղթանակն է։*

*Մարքսիզմ-լենինիզմը գտնում է, որ կոմունիստական հասարակություն պետք է կառուցել այն մարդկանցով, որոնք ապրել են կապիտալիզմի օրոք, դուրս են եկել կապիտալիստական հասարակության ընդերքից, հետևաբար և իրենց վրա կրում են, ավել կամ պակաս չափով, կապիտալիստական աշխարհում իշխող բուրժուական գաղափարախոսության, կենցաղի, բարքերի, սովորույթների, բարոյական նորմերի և քաղաքական դաստիարակության հետքերը։*

*Վ. Ի. Լենինը պրոլետարիատի դիկտատուրայի հիմնական խնդիրը համարել է ոչ թե բռնությունը կամ հարկադրումը, մի բան, որ միանգամայն անհրաժեշտ էր Սովետական իշխանության վաղ ժամանակաշրջանում,—այլ ստեղծագործական աշխատանքը, սոցիալիստական շինարարությունը և բազմամիլիոն աշխատավորական մասսաների դաստիարակության համար մղվող համառ ու տևական պայքարը։*

*Կոմունիստական հասարակության կառուցման համար անհրաժեշտ է լրիվին հաղթահարել ու դուրս վանել կապիտալիզմի մնացուկները սովետական մարդկանց գիտակցությունից։ Այդ մնացուկները, կոնկրետ կերպով, հանդես են գալիս բուրժուական գաղափարախոսության տարբեր երևույթների դրսևորման, բուրժուական-կրոնական բարոյականության, հին բարքերի, սովորույթների ու տրադիցիաների ձևով։*

*Չնայած այն բանին, որ մեր երկրում տևական, անխոնջ և համառ պայքար է մղվել ժողովրդական մասսաների կոմունիստական դաստիարակության համար, այնուամենայնիվ, ոչ ոքի համար գաղտնիք չէ, որ դեռևս գոյություն ունեն աշխատանքի նկատմամբ ոչ կոմունիստական վերաբերմունքի դեպքեր, կոմունիստական բարոյականության նորմերի խախտման և հասարակական-սոցիալիստական սեփականության նկատմամբ ոչ գիտակցական վերաբերմունքի առանձին դրսևորումներ։ Իսպառ չեն վերացել նաև պորտաբուծության, անազնվության, կարիերիզմի առանձին արտահայտությունները գործնական կյան-*

քում և աշխատանքում, որոնք կապված են հին տրադիցիաների, սովորույթ-
ների, կրոնական և այլ նախապաշարումների հետ։ Եթե այդ չարիքները դեռևս
գոյություն ունեն, նշանակում է և չի կարող վերանալ նաև պայքարն այդ հա-
կահասարակական երևույթների դեմ։

Վերացնելով շահագործող դասակարգերը և լիակատար սոցիալիստական
հասարակություն կառուցելով մեր երկրում, մենք ստեղծել ենք նյութական-
տնտեսական, ինչպես և քաղաքական ու գաղափարախոսական հաստատուն
հիմքեր՝ հնի մնացուկների հաղթահարման և իսպառ վերացման համար։

Միաժամանակ փոխվել են նաև մարդիկ, որոնք աշխատելով ու մասնակ-
ցելով սոցիալիստական մրցմանը, կոմունիստական աշխատանքի բրիգադա-
ներ ստեղծելով և մարքս-լենինյան թեորիան յուրացնելով, հոգեպես հասու-
տացել ու կատարելագործվել են։

Այս բանից ելնելով է, որ Սովետական Միության Կոմունիստական պար-
տիայի Ծրագրի նոր նախագիծը մատնանշում է, որ «Կոմունիզմին անցնելու
ժամանակաշրջանում աճում են հոգևոր ճարստություն, բարոյական անաղար-
տություն և ֆիզիկական կատարելություն ներդաշնակորեն մարմնավորող նոր
մարդ դաստիարակելու հնարավորությունները»։

Ժողովրդական բազմամիլիոն մասսաների դաստիարակության գործը
հաստատուն հիմքերի վրա դնելու համար Սովետական Միության Կոմու-
նիստական պարտիայի նոր Ծրագրի նախագիծը պարտիական կազմակերպու-
թյուններից պահանջում է մի շարք գործնական միջոցառումների կիրառում։
Ամենից առաջ անհրաժեշտ է գիտական-կոմունիստական աշխարհայացք հան-
դիսացող մարքս-լենինյան թեորիայով զինել սովետական մարդկանց։ Ծրա-
գրի նոր նախագիծը պահանջում է աշխատանքի նկատմամբ հասարակության
բոլոր անդամների մեջ կոմունիստական մոտեցման ու վերաբերմունքի արմա-
տավորում։ Բացի այս, անհրաժեշտ են պրոլետարական ինտերնացիոնալիզմի
և սովետական հայրենասիրության զարգացումը, բուրժուական գաղափարախո-
սության մշտական մերկացումը, ինչպես և կապիտալիզմի մնացուկների հաղ-
թահարումը մարդկանց գիտակցության մեջ և նրանց առօրյա աշխատանքում
ու վարքագծում։

Մարքսիզմ-լենինիզմը չի ընդունում ապադասակարգային և «համամարդ-
կային» բարոյականության նորմեր, որոնք ընդհանուր լինեն բոլոր ժամանակ-
ների ժողովուրդների և հասարակությունների համար։

Կոմունիստական բարոյականությունն իր նորմերով և պահանջմունքներով
ճամբնկնում է ճասարակության զարգացման օբյեկտիվ օրենքներին, բխում է
ճռանցից և նպաստում է ճասարակության առաջընթացին։ Հենց այդ պատճա-
ռով էլ նա առաջադիմական է, որովհետև կոչ է անում մարդկությանը ոչ թե
մնալ իր տեղում, այլ առաջ ընթանալ դեպի սոցիալիզմ ու կոմունիզմ։

Բուրժուազիան շատ հաճախ է զրպարտել և մինչև այժմ էլ զրպարտում է
կոմունիստներին այն բանի համար, որ իբր թե նրանք չունեն բարոյականու-
թյուն և ժխտում են բարոյականության ամեն տեսակի նորմեր։

Ինչ խոսք, որ դա հերյուրանք է բանվոր դասակարգի հասցեին, որը չի
ժխտում բարոյականությունն ընդհանրապես, այլ բացասաբար է վերաբերվում
դեպի բուրժուական բարոյականությունը։

Հասկանալի է, որ կոմունիստական բարոյականության խնդիրներն ու
կոնկրետ պահանջները ժամանակի ընթացքում կարող են փոփոխության են-



թարկվել։ Սակայն պատմական որոշ ժամանակաշրջանի համար նրանք հա-
րաբերական իմաստով կայուն են մնում։

Այսպես, օրինակ, մինչև պրոլետարիատի կողմից իշխանության գրավումը
կոմունիստական բարոյականության հիմնական խնդիրն էր՝ համախմբել բո-
լոր բանվորներին ու աշխատավորներին, պայքարի հանել նրանց կապիտալիս-
տական ճնշման ու շահագործման դեմ, կատարել պրոլետարական ռևոլյուցիա,
տապալել ժողովրդի համար ատելի բուրժուազիայի իշխանությունը և պրոլե-
տարիատի դիկտատուրա հաստատել։ Բարոյական այս գլխավոր պահանջներից
էլ բխում են պրոլետարիատի վարքագծի մնացած նորմերը։

Կապիտալիզմի տապալումից և պրոլետարիատի դիկտատուրա հաստատե-
լուց հետո, հաղթանակած բանվոր դասակարգի բարոյական գլխավոր պահան-
ջը դառնում է պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդումը, սոցիալիստա-
կան տնտեսաձևի ստեղծումն ու զարգացումը և այդ հիման վրա իշխանությու-
նը կորցրած, սակայն դեռևս որպես դասակարգ գոյություն ունեցող շահագոր-
ծողների լիկվիդացումը։

Սոցիալիզմի լիակատար հաղթանակից հետո կոմունիստական բարոյա-
կանության հիմնական խնդիրը դարձյալ փոխվում է։ Այժմ բանվոր դասակար-
գի, սոցիալիստական հասարակության բոլոր աշխատավորների և նրանց
ավանգարդ Կոմունիստական պարտիայի հիմնական խնդիրը դառնում է անց-
նել սոցիալիզմից դեպի կոմունիզմ, իրականացնել աշխատավոր մարդկության
դարերի երազանքը կոմունիզմի մասին։ Այս հիմնական պահանջից էլ բխում
է հասարակության անդամների վարքագիծը՝ սոցիալիզմից դեպի կոմունիզմ
անցման ժամանակաշրջանում։

Կոմունիստական բարոյականության նորմերը, որոնք նույնպես պատմա-
կան բնույթ են կրում, յուրահատուկ են սոցիալիզմից դեպի կոմունիզմ անցման
դարաշրջանի համար։ Կոմունիստական վարքագծի այդ նորմերի կոդեքսը իրենց
առօրյա կյանքում պարտավոր են կիրառել առաջին ճերթին իրենք՝ կոմունիստ-
ները, որպես սոցիալիստական հասարակության առաջավոր մարդիկ։ Այդ
պատճառով էլ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնա-
դրության նոր նախագծի 58-րդ կետում նրանք նույնությամբ կրկնվում են։ Կո-
մունիստական պարտիան իր կազմակերպություններից պահանջում է կոմու-
նիստներին դաստիարակել բարոյական վարքի հենց այդ նորմերով։

Կոմունիստական բարոյականության վերևում բերված նորմերը անչափ
կարևոր նշանակություն ունեն և նրանք մեծ դեր են խաղալու կոմունիստական
հարաբերությունների ձևավորման և կոմունիստական աշխարհայացքի վերջ-
նական հաղթանակի գործում։ Լինելով նոր կոմունիստական աշխարհի բարո-
յականության կոդեքս, նրանք հիմնովին հակադրվում են կապիտալիստական
աշխարհի ռեակցիոն բուրժուական բարոյականությանը և նրա կողմից մշակ-
ված վարքի նորմերին։

Կոմունիստական բարոյականության և վարքագծի կոդեքսից վերցնենք
թեկուզ «կոլեկտիվիզմ և ընկերական փոխօգնություն. մեկը՝ բոլորի համար,
բոլորը՝ մեկի համար» և կամ ասենք «մարդասիրական հարաբերություններ
և փոխադարձ հարգանք մարդկանց միջև՝ մարդը մարդուն բարեկամ է, ըն-
կեր և եղբայր» նորմերը։ Ինչ խոսք, որ նման վարքագծի նորմեր իր ծրագրում
կարող է առաջադրել միայն հաղթանակած սոցիալիզմի երկրի կոմունիզմ կա-
ռուցող հասարակության ավանգարդը։

Մարքսը մատնանշել է, որ բուժուազիան բարոյական դաստիարակության անվան տակ հասկանում է մարդու ուղեղում բուրժուական սկզբունքների խցըկումը։ Կապիտալիստական աշխարհի գլխավոր և շարժիչ ուժը հանդիսանում է շահույթը։ Այստեղից էլ երևան է գալիս բուրժուայի բարոյական կերպարը։ Այդ բարոյական կերպարը շատ գեղեցիկ կերպով ցույց է տվել Կարլ Մարքսը «Կապիտալ»-ում, անցյալ դարի առաջավոր գործիչ Դուննինգից բերելով հետևյալ մեջբերումը.

«Ապահովեցեք 10 տոկոսը և կապիտալը պատրաստ է ամեն տեսակի գործադրման. 20 տոկոսի պայմաններում նա աշխուժանում է, 50 տոկոսի դեպքում նա պատրաստ է իր գլուխն անգամ ջարդել. 100 տոկոսի ժամանակ նա ոտնահարում է մարդկային բոլոր օրենքները, իսկ 300 տոկոսի դեպքում չկա մի այնպիսի ոճրագործություն, որին նա ռիսկ չանի դիմել, թեկուզ և կախաղանի սարսափների ներքո» («Կապիտալ», հատոր I, էջ 764, ռուս. 1949 թ.)։

Այստեղից էլ պարզ է, որ կապիտալիզմն ազատ ասպարեզ է ստեղծում ամեն տեսակի բիզնեսմենների, ավանտյուրիստների և սրիկաների գործունեության համար։ Այդ մարդիկ զբաղվում են սպեկուլյացիայով, բիրժային ամիոտաժով, խաբեությամբ, զանազան մախինացիաներով և այդ ճանապարհով դրամ են կուտակում ու «մարդաշարք անցնում»։ Անձնական շահը և այդ շահի ետևից ընկնելը, եսասիրությունը կապիտալիստական հասարակության և բուրժուական բարոյականության հատկանշական գծերն են դառնում։

Կոմունիստական բարոյականության նորմերի թագավորության մասին դարեր շարունակ երազել են ամբողջ աշխարհի աշխատավորական լայն զանգվածները, որոնք ծանր, համառ և երկարատև կռիվ են մղել իրենց հարստահարիչների դեմ՝ հանուն ազատության, մարդավայել կյանքի ու սոցիալիզմի։ Այդ իմաստով էլ ՍՄԿՊ Ծրագրում և Կանոնադրության մեջ առաջ քաշված կոմունիստական բարոյականության նորմերը համամարդկային բնույթ են կրում, որովհետև նրանք իրենց մեջ մարմնացնում են ամբողջ աշխարհի առաջավոր մարդկության ամենալավ տենչերն ու ձգտումները։

Կոմունիստական բարոյականության հիմքում ընկած են մարդասիրությունը, ազնվությունը, ճշմարտությունը, հարգանքը դեպի աշխատանքի մարդը, ընկերը, ընտանիքը, կինը, մանուկները, սեր դեպի սոցիալիստական Հայրենիքն ու սոցիալիզմի երկրները, պրոլետարական համերաշխությունն ու հարգանքը դեպի ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկությունը։

Սովետական երկրում գոյություն ունեն արդեն բարոյական վարքի այս նորմերը, որոնք ձևակերպվել են ՍՄԿՊ Ծրագրում և Կանոնադրության մեջ։ Նրանք պետք է անդադար աճեն, հզորանան ու հաղթանակեն մեր երկրում՝ դառնալով ամբողջ սովետական հասարակության բարոյական վարքի նորմեր։ Նրանց աճումը, զարգացումը և հաղթանակն անխուսափելի են։

Բարոյական նորմերի այդ կոդեքսի վրա հենվելով, ՍՍՌՄ աշխատավորական լայն զանգվածների մեջ դրանք արմատավորելով, մեր ժողովրդի փորձված ու մարտական ավանգարդ ՍՄԿՊ-ն պայքարում է կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության միջից իսպառ վերացնելու և լիակատար կոմունիստական հասարակություն կառուցելու համար։

Տ. ԱՋՆԱՈՒՐՅԱՆ

---

# ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՈՒ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի կողմից հավանության արժանացած և ընդհանուրի ծանոթությանն ու պարտիայի բոլոր անդամների և թեկնածուների քննարկմանը ներկայացված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Կանոնադրության նախագիծը պարտիայի կազմակերպական լենինյան սկզբունքների մարմնավորումն է։ Նախագծում հստակորեն որոշվում են պարտիայի ներքին կյանքի հիմնական օրենքները, նրա աշխատանքի ձևերն ու կանոնները, որոնք լիովին համապատասխանում են կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման արդի ժամանակաշրջանին։ Կանոնադրության նախագիծն իր բոլոր կետերով ապահովում է պարտիայի շարքերի միասնությունն ու միաձուլությունը, մասսաների հետ ունեցած նրա կապերի ամրապնդումը, պարտիայի անդամների բարձր կոչումն ու պատասխանատվության բարձրացումը։

Ամբողջությամբ վերցրած հավանություն տալով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրության նախագծին և մասնակցելով նախահամագումարյան նրա քննարկմանը, ցանկանում ենք մի քանի դիտողություններ անել և ցանկություններ հայտնել։

1. Կանոնադրության նախագծի 9-րդ կետի երկրորդ պարբերությունում ասվում է, որ «Անհրաժեշտ դեպքում, որպես պարտիական տույժի միջոց, պարտիական կազմակերպությունը կարող է պարտիայի անդամին թեկնածու փոխադրել մինչև մեկ տարի ժամկետով... Սահմանված ժամկետը լրանալուց հետո թեկնածու փոխադրվածը պարտիայի անդամ է ընդունվում ընդհանուր հիմունքներով և պահպանվում է նրա պարտիական նախկին ստաժը»։ Մենք գտնում ենք, որ նման դեպքում նախկին ստաժի պահպանումը նպատակահարմար չէ։ Երբ թեկնածուները պարտիայի անդամ են ընդունվում ընդհանուր հիմունքներով, ապա էլ ինչո՞ւ տարբերություն դնել նրանց միջև, չէ՛ որ պարտիայի անդամին թեկնածու փոխադրելիս սկզբնական պարտիական կազմակերպությունը հաշվի է առնում, որ նա հասու չէ պարտիայի անդամի բարձր կոչմանը, որ նա պետք է նորից դաստիարակվի թեկնածուական ժամանակաշրջանում և ձեռք բերի պարտիայի անդամին վայել վարք ու բարք։ Այդ իսկ նկատառումով էլ մենք անհրաժեշտ ենք համարում, որպեսզի Կանոնադրության նախագծի 9-րդ կետի վերջին մասը ձևակերպվի այսպես. «... Սահմանված ժամկետը լրանալուց հետո թեկնածու փոխադրվածն ընդհանուր հիմունքներով պարտիայի անդամ է ընդունվում այնպես, ինչպես պարտիայի անդամության մյուս թեկնածուները»։ Այլ կերպ ասած, նրա պարտիական նախկին ստաժը չի պահպանվում։

2. Մենք գտնում ենք, որ կանոնադրական պարտականությունները չկա-

տարելու և այլ զանցանքների համար պարտիայի անդամին պատասխանատվության ենթարկելու վերաբերյալ ՍՄԿՊ Կանոնադրության նույն (9-րդ) կետում նախատեսված տույժի ու դաստիարակության մյուս միջոցները գործադրելուց հետո, երբ դրանցից պարտիայի անդամը համապատասխան եզրակացություններ չի անի և չի ուղղվի, նոր միայն պետք է գործադրել թեկնածու փոխադրելու տույժը։ Դա պարտիայի անդամին կստիպի, որպեսզի նա լրջորեն վերաբերվի կանոնադրությամբ սահմանված տույժի մյուս ձևերին, մանավանդ այն դեպքում, երբ հայտարարված է նկատողություն (խիստ նկատողություն), նկատողություն (խիստ նկատողություն)՝ գրանցելով հաշվառման քարտում։

3. Մամուլից տեղեկացանք, որ Վեդու շրջանի Ք. Վեդիի կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղար Ա. Գալստյանը գտնում է, որ «կոմունիստների ակտիվության բարձրացման, նրանց գիտակցականության բարձր մակարդակի այժմյան պայմաններում կարելի է սկզբնական պարտիական կազմակերպություններում ընտրությունները անցկացնել բաց քվեարկությամբ»։ Նույնպիսի առաջարկություն է անում նաև Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղի պարտկազմակերպության անդամ Մ. Աբրահամյանը և այն հիմնավորում է նրանով, որ իբր փակ (գաղտնի) քվեարկությունը «...բավականին վնասակար ազդեցություն է թողնում առերես քննադատության ծավալման համար կադրերին շիտակ և ուղղամիտ ներպով դաստիարակելու վրա»։

Այս երկու ընկերոջ առաջարկությունը միանգամայն անհիմն է և մենք դեմ ենք դրան։ Նախ, ինչպե՞ս կարելի է սկզբնական պարտկազմակերպությունում բաց քվեարկությամբ ընտրություններ անցկացնել, իսկ կոնֆերանսում ու համագումարներում՝ փակ։ Որտե՞ղ է տեսնված, որ մեկ միասնական կազմակերպության մեջ, ինչպիսին մեր պարտիան է, ընտրական երկու կարգ լինի՝ ստորին օղակում առանձին, իսկ բարձր օղակում առանձին։ Մյուս կողմից՝ կոմունիստների գիտակցականության բարձրացումը ո՛չ թե բացառում, այլ, հակառակը, անհրաժեշտ է դարձնում գաղտնի քվեարկության անցկացումը, որը ներկա ժամանակաշրջանում ներպարտիական դեմոկրատիայի զարգացման կարևոր միջոցներից մեկն է։ Իսկ ինչ վերաբերում է ընկ. Մ. Աբրահամյանի պատճառաբանության, ապա այն զուրկ է լուրջ հիմքից։ Նա մոռանում է, որ գաղտնի քվեարկությունը քննադատության յուրահատուկ ձև է։ Դեմ կամ կողմ քվեարկելով այս կամ այն ընկերոջ, կոմունիստը ցույց է տալիս նրա նկատմամբ իր վերաբերմունքը։ Հենց ներպարտիական դեմոկրատիայի ուժն ու ազատությունն էլ կայանում է նաև նրանում, որ կոմունիստը ղեկավար օրգաններում ընտրվողների նկատմամբ իր վերաբերմունքը կարող է ցույց տալ ոչ միայն բաց, այլև գաղտնի քվեարկության ժամանակ։

4. Կանոնադրության նախագծի 59-րդ կետում ասված է, որ «Արտադրական և առևտրական ձեռնարկությունների, սովխոզների, կոլտնտեսությունների, ինչպես նաև արտադրության հետ անմիջականորեն կապված նախագծային կազմակերպությունների, կոնստրուկտորային բյուրոների, գիտա-հետազոտական ինստիտուտների սկզբնական պարտիական կազմակերպությունները օգտվում են ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքից»։ Մենք նպատակահարմար ենք գտնում, որպեսզի այդպիսի իրավունքից օգտվեն նաև դպրոցական սկզբնական պարտիական կազմակերպությունները, որը կօգնի դպրոցը կյանքի հետ կապելու, ուսման որակը բարձրացնելու, մատաղ սե-



րընդին անհրաժեշտ գիտելիքներ և աշխատանքային հմտություն տալու գործում դպրոցի առջև դրված խնդիրների ավելի հաջող կատարմանը։

5. Պարտիայի նոր Կանոնադրության նախագծի 25-րդ կետում նախատեսվում է պարտիական օրգանների ընտրությունների ժամանակ պահպանել նրանց կազմի սիստեմատիկ նորացումը և ղեկավարության հաջորդականության սկզբունքը։ Այդ լավ է, շատ լավ։ Հավանություն տալով պարտիական ղեկավար օրգանների անդամների ընտրության վերաբերյալ սահմանված ժամկետներին, մենք նպատակահարմար ենք համարում, որ ոչ ոքի համար բացառություն չկազմի նախատեսված ժամկետից ավելի ընտրվելը, որովհետև, ինչպես նշվում է նախագծի 25-րդ կետի վերջում, «Պարտիական ղեկավար օրգանում իրենց գտնվելու ժամկետը լրանալու կապակցությամբ այդ օրգանից դուրս եկած պարտիայի անդամները կարող են նորից ընտրվել հաջորդ ընտրությունների ժամանակ»։

6. Նույն կետում ասված է, որ «Սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարները կարող են անընդմեջ ընտրվել ոչ ավելի, քան երկու ընտրաշրջան»։ Մենք գտնում ենք, որ դա քիչ է։ Սկզբնական պարտիական կազմակերպության առաջին անգամ ընտրված քարտուղարը նոր է ծանոթանում պարտիական աշխատանքին և երկրորդ տարում դառնում է որոշակի փորձ ունեցող աշխատող։ Բայց դրանից հետո լրանում է նրա ընտրության ժամկետը։ Ուստի լավ կլինի, որպեսզի սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների համար սահմանվի անընդմեջ ընտրվելու ոչ թե երկու, այլ երեք ընտրաշրջան, որից գործը միայն կշահի։

7. ՍՄԿՊ նոր Կանոնադրության նախագծի 45, 49 և 56-րդ կետերի համաձայն պարտիայի մարզային, երկրամասային կոմիտեների, միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմների քարտուղարների համար պարտադիր է առնվազն հինգ տարվա, պարտիայի օկրուգային, քաղաքային, շրջանային կոմիտեների քարտուղարների համար՝ առնվազն երեք տարվա, սկզբնական և ցեխային պարտկազմակերպությունների քարտուղարների համար՝ առնվազն մեկ տարվա պարտիական ստաժ։

Մեզ թվում է, որ Կանոնադրության նախագծի վերոհիշյալ կետերում անհրաժեշտ է որոշ փոփոխություններ մտցնել, ընդ որում միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմների քարտուղարների համար սահմանել առնվազն տասը տարվա, մարզային, երկրամասային կոմիտեների քարտուղարների համար՝ առնվազն ութ տարվա, օկրուգային, քաղաքային, շրջանային կոմիտեների քարտուղարների համար՝ առնվազն վեց տարվա, իսկ սկզբնական և ցեխային պարտկազմակերպությունների քարտուղարների համար առնվազն երեք տարվա պարտիական ստաժ։

Այս առաջարկությունն անելով մենք ելնում ենք այն բանից, որ միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմների, մարզային, երկրամասային, օկրուգային, քաղաքային, շրջանային կոմիտեների և սկզբնական ու ցեխային պարտիական կազմակերպությունների քարտուղարները պետք է լինեն բազմակողմանիորեն փորձված ու պատրաստված մարդիկ։ Չէ՛ որ, պատկերավոր ասած, պարտիական ղեկավար աշխատողը նման է ընդհանուր զորահրամանատարի, որը պետք է գերազանց իմանա զորքերի ու զենքերի բոլոր տեսակները, ճիշտ կոորդինացնի ուժերը և անպայմանորեն ապահովի հաղթանակը։ Ավելին, նա պետք է ոչ թե հրամայի, այլ մարդկանց կազմակերպի

տա համոզի։ Այդ բոլորի համար պետք են գիտելիքներ ու փորձ, որոնք պարտիա-
կան ղեկավար աշխատողը գլխավորապես ձեռք է բերում կյանքում, առանձնա-
պես պարտիական աշխատանքի պրոցեսում։ Բայց պարտիական աշխատանքի
որքա՞ն փորձ կարող է ձեռք բերել մեկ տարվա ստաժ ունեցող կոմունիստը,
որպեսզի կարողանա սկզբնական կազմակերպություն ղեկավարել, կամ երեք
տարվա ստաժ ունեցող կոմունիստը, որպեսզի կարողանա օկրուգկոմի, քաղ-
կոմի և շրջկոմի քարտուղար դառնալ։ Գուցե որոշ ընկերներ այս հարցում մեզ
հետ չհամաձայնվեն։ Մենք սիրով կլսեինք նրանց կարծիքը, որը հիմնավոր-
ված լիներ կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով։

8. Նախագծի 16-րդ կետում ասված է. «Թեկնածուական ստաժը լրանա-
լուց հետո սկզբնական պարտիական կազմակերպությունը քննարկում և լու-
ծում է թեկնածուին պարտիայի անդամ ընդունելու հարցը։ Եթե թեկնածուա-
կան ստաժն անցնելու ժամանակ թեկնածուն չի դրսևորել իրեն և անձնական
հատկություններով անարժան է եղել ՍՄԿՊ անդամ ընդունվելու, ապա պար-
տիական կազմակերպությունը որոշում է ընդունում մերժել նրան պարտիայի
անդամ ընդունելը, և պարտիայի շրջկոմի և քաղկոմի կողմից տվյալ որոշումը
հաստատվելուց հետո, նա համարվում է ՍՄԿՊ անդամության թեկնածուների
կազմից դուրս մնացած»։ Ինչպես տեսնում ենք, թեկնածուի թեկնածուական
ժամկետը (մեկ տարին) լրանալուց հետո պարտիայի մեջ նրան ընդունելու կամ
չընդունելու հարցը պետք է լուծվի։ Բայց երբեմն ստացվում է այնպես, որ
թեկնածուն, անկախ իր ցանկությունից, լրիվ մեկ տարի չի մնում տվյալ կազ-
մակերպությունում։ Հաճախ այդպես է կատարվում Սովետական Բանակից
զորացրված մարտիկների և աշխատանքի պատճառով մի տեղից մյուս տեղը
տեղափոխված ընկերների հետ։ Ինչպես մյուս, այնպես էլ այդպիսի թեկնածու-
ները, պարտիայի Կանոնադրության նախագծի 4-րդ կետի ա) ենթակետի հա-
մաձայն, պետք է ներկայացնեն պարտիայի երեք անդամների երաշխավորու-
թյուն, որոնք ունեն առնվազն երեք տարվա պարտիական ստաժ և երաշխավո-
րողներին ճանաչում են առնվազն մեկ տարի համատեղ արտադրական և հա-
սարակական աշխատանքից։

Պարզ բան է, որ նոր վայր ժամանած պարտիայի անդամության թեկ-
նածուն մեկ տարվա համատեղ արտադրական ու հասարակական աշխատող
երաշխավոր գտնել չի կարող, որի հետևանքով էլ նրա թեկնածուական ժամկետը
կանցնի։ Մենք կցանկանայինք պարտիայի Կանոնադրության նախագծի 4-րդ
կետում ասվեր, թե ինչպես պետք է վարվել այդպիսի դեպքում։

9. Պարտիայի քաղաքային ու շրջանային կազմակերպությունների կոնֆե-
րենցիաների պատգամավորները կազմում են հաշվառման մեջ գտնվող կոմու-
նիստների շատ քիչ մասը, ընդ որում դրանց թվում կան կոմունիստներ (ձեռ-
նարկությունների, հիմնարկությունների ղեկավարներ, պարտիական կազմա-
կերպությունների քարտուղարներ, արտադրության առաջավորներ և այլն),
որոնք համարյա ամեն տարի ընտրվում են պատգամավորներ, իսկ շատ կո-
մունիստներ ոչ մի անգամ չեն ընտրվում և, ըստ էության, զրկվում են իրենց
պարտիական ղեկավար օրգանների հաշվետվության քննարկմանը մասնակցե-
լուց։ Այդ հանգամանքը նկատի ունենալով, մենք նպատակահարմար ենք հա-
մարում, որպեսզի ՍՄԿՊ Կանոնադրության նախագծի 29-րդ կետում ավելաց-
նել հետևյալ պարբերությունը. «Պարտիայի քաղաքային (շրջանային բաժան-
ումներ չունեցող) և շրջանային կոմիտեները իրենց գործունեության մասին



տարին մեկ անգամ իրազեկ են պահում կոմունիստներին՝ բոլոր սկզբնական
պարտիական կազմակերպություններում հաշվետվության միջոցով»։

Իհարկե, պարտիայի քիչ քաղկոմներ ու շրջկոմներ չկան, որ պրակտիկա-
յում այդ ձևը կիրառում են։ Բայց բանն այն է, որ դա կիրառվում է հատկա-
պես խոշոր պարտիական կազմակերպություններում, իսկ այնպիսի կազմա-
կերպություններում, ինչպիսին, ասենք, մեր դպրոցի կազմակերպությունն է
(որն ունի 12 պարտանդամ), վերջին 10 տարվա ընթացքում և ոչ մի անգամ
շրջկոմի գործունեության մասին իրազեկ չի պահվել կոմունիստներին, չհաշված
պարտիական շրջանային կոնֆերենցիայի արդյունքների քննարկումը։

Այժմ, երբ ՍՄԿՊ նոր Կանոնադրության նախագծում պահանջվում է պար-
տիայի քաղկոմների ու շրջկոմների ընտրությունն անցկացնել երկու տարին
մեկ անգամ, մեր կարծիքով վերոհիշյալ պահանջը տեղին է և այն պետք է նշվի
Կանոնադրության մեջ։

Հ. ՆԱԶԱՐՅԱՆ
Երևանի Լենինյան շրջանի № 1 երկարօրյա
դպրոցի սկզբնական պարտիական կազմա-
կերպության քարտուղար, ՍՄԿՊ անդամ
1939 թ.

## ՄԵՐ ԿԱՐԾԻՔԸ

ՍՄԿՊ նոր Ծրագրի ու Կանոնադրության նախագծերը, որոնք արժանացել
են համաժողովրդական ջերմ հավանության, լայնորեն քննարկվում են կոմու-
նիստների և անպարտիականների շրջանում։ Ես էլ կցանկանայի մի քանի
առաջարկություններ և դիտողություններ անել պարտիայի Կանոնադրության
նախագծի վերաբերյալ։

1. Նպատակահարմար է պարտիայի մեջ ընդունել ոչ թե 18 տարին, ինչ-
պես նշված է ՍՄԿՊ Կանոնադրության նախագծում, այլ 20 տարին լրացած
անձանց, դա հնարավորություն կտա պարտիայի շարքերն ընդունել հասուն,
աշխատանքում և հասարակական-քաղաքական աշխատանքում կոփված ու
գործնականում իրեն լավ դրսևորած երիտասարդների։

2. Կանոնադրության նախագծի 4-րդ կետը նախատեսում է, որ «Երիտա-
սարդները, մինչև 20 տարեկանը ներառյալ, պարտիայի մեջ ընդունվում են մի-
միայն ՀամԼԿԵՄ-ի միջոցով»։ Ճիշտ կլինի, եթե երիտասարդները ՀամԼԿԵՄ-ի
միջոցով պարտիայի մեջ ընդունվեն մինչև 26 տարեկանը ներառյալ, որով և
կբարձրանա կոմերիտական կազմակերպության հեղինակությունը։

3. Իմ կարծիքով այլ երկրների կոմունիստական ու բանվորական պար-
տիաների նախկին անդամներին ՍՄԿՊ շարքերն ընդունելիս, պետք է պահպա-
նել նրանց պարտիական ստաժը։ Չի կարելի հաշվի չառնել և չգնահատել սո-
ցիալիզմի, խաղաղության և դեմոկրատիայի համար մղած նրանց անխոնջ
պայքարը։

4. Քանի որ պրակտիկայում որպես պարտիական տույժի միջոց կիրառ-
վում է «խիստ նկատողություն վերջին նախազգուշացումով», ուստի առաջար-
կում եմ նախագծի 9-րդ կետում, ուր խոսվում է պարտիական տույժի միջոց-

ների մասին, ավելացնել նաև «խիստ նկատողություն վերջին նախազգուշա-
ցումով»։

5. Նախագծի 12-րդ կետում նշված է, որ «Եթե պարտիայի անդամը կա-
տարել է այնպիսի զանցանքներ, որոնք պատժվում են քրեական կարգով, նա
վտարվում է պարտիայից և ենթարկվում է պատասխանատվության օրենքին
համապատասխան»։ Պրակտիկայում լինում են այնպիսի դեպքեր, երբ կոմու-
նիստը այս կամ այն զանցանքի համար դատապարտվում ու վտարվում է
պարտիայի շարքերից։ Հետագայում նորից նա վերականգնվում է պարտիայի
շարքերում, բայց զանցանք կատարելու համար վերստին վտարվում է ՍՄԿՊ-ի
շարքերից։ Այդպիսիների նկատմամբ պետք է մեկընդմիշտ փակել պարտիայի
դռները։ Այդ առումով նպատակահարմար է Կանոնադրության նախագծի վերո-
հիշյալ կետը լրացնել հետևյալ կերպ. «Այն կոմունիստները, որոնք նախկի-
նում կրկին անգամ վտարվել ու ապա վերականգնվել են ՍՄԿՊ շարքերում և
թույլ են տալիս նոր զանցանք, ապա նրանք իրենց մեկընդմիշտ դուրս են դնում
պարտիայից»։

6. Նախագծի 45-րդ կետում ասված է, որ մարզային, երկրամասային կո-
միտեների և միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմնե-
րի քարտուղարների համար պարտադիր է առնվազն 5 տարվա պարտական
ստաժ։ Ես կարծում եմ, որ քարտուղարների համար սահմանվող այդ ստաժը
շատ քիչ է. Նրանք առնվազն 10 տարվա պարտիական ստաժ և 5 տարվա պար-
տիական աշխատանքի փորձ պետք է ունենան։ Այնուհետև, առաջարկում եմ
49-րդ կետում օկրուգային, քաղաքային և շրջանային կոմիտեների քարտու-
ղարների համար նախատեսած 3 տարվա փոխարեն, սահմանել առնվազն 5
տարվա պարտիական ստաժ և 3 տարվա պարտիական աշխատանքի փորձ։

7. Գտնում եմ, որ սկզբնական պարտիական կազմակերպությունների
քարտուղարները կարող են անընդմեջ ընտրվել ոչ թե երկու, ինչպես ասված է
նախագծի 25-րդ կետում, այլ երեք ընտրաշրջան։ Չպետք է մոռանալ, որ
սկզբնական պարտկազմակերպության քարտուղարի աշխատանքը հենց այն
կարևոր նախնական դպրոցն է, որտեղ պետք է սովորեն, կոփվեն մեր պար-
տիական կադրերը, նախապատրաստեն իրենց ավելի պատասխանատու աշ-
խատանքի համար։ Երեք ընտրաշրջանը թույլ կտա քարտուղարին ինչպես
հարկն է խորամուխ լինելու կազմակերպության գործունեության մեջ և, մա-
նավանդ, որ սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու
ընտրական ժողովները նախատեսվում են անցկացնել ամեն տարի։

8. Նախագծում պարտիայի անդամության թեկնածուի ստաժը երկարա-
ձգելու մասին ոչ մի խոսք չկա։ Այնինչ պրակտիկայում լինում են այնպիսի
դեպքեր, երբ թեկնածուական ստաժը թեև լրացել է, բայց պարտիայի շարքերն
ընդունվողի համար ստեղծվել են խանգարող օբյեկտիվ հանգամանքներ։ Այս-
պես, օրինակ, քաղաքացին պարտիայի անդամության թեկնածու է ընդունվել
Սովետական Բանակում և թեկնածուական ստաժը չլրացած զորացրվել է ու
դեռևս չի աշխատում կամ 4—5 ամիս է, ինչ աշխատում է։ Ինչպես պետք է
վարվել պարտիական կազմակերպությունը նման թեկնածուների հետ, որոնց
թեկնածուական ժամկետը լրացել է, բայց վերջիններս հնարավորություն չու-
նեն համապատասխան պարտիական երաշխավորություններ ներկայացնելու
կազմակերպությանը, քանի որ մեկ տարվա համատեղ աշխատանքից նրանց
ճանաչող կոմունիստներ չկան տվյալ հիմնարկում։



Պրակտիկայում հանդիպում է և այսպես։ Պարտիայի անդամության թեկ-
նածուն, որի թեկնածուական ժամկետը լրանալուն մոտ է, թույլ է տալիս որևէ
զանցանք. կազմակերպությունը գտնում է, որ պարտիայի շարքերից նրան
չպետք է վտարել, այլ պետք է անել խիստ նկատողություն, գրանցելով հաշ-
վառման քարտում։ Կանոնադրության նախագծի համաձայն, թեկնածուին ան-
դամ ընդունելու հարցը պետք է վճռել մեկ տարվա ստաժը լրանալուն պես։
Ինչպե՞ս վարվել։ Սկզբնական պարտիական կազմակերպությանը մնում է կամ
հապճեպորեն վերացնել թեկնածուին տված տույժը կամ մերժել նրա դիմումն
ու վտարել անդամության թեկնածությունից։ Իմ կարծիքով, եթե պատճառը
հարգելի է, սկզբնական պարտիական կազմակերպությանը իրավունք պետք է
տրվի երկարաձգելու թեկնածուական ստաժը մինչև մեկ տարի ժամանակով,
ինչպես այդ մասին նշված է ներկայումս գործող Կանոնադրության մեջ։

Այժմ մի քանի դիտողություններ մամուլում հրապարակված առանձին
ընկերների առաջարկությունների վերաբերյալ։

1. «Երևան» թերթի օգոստոսի 12-ի համարում տպագրվել է ընկ. Վ. Շահ-
բազյանի «Իմ առաջարկը» վերնագրով թղթակցությունը. Նա առաջարկում է
բոլորովին հանել պարտիայի անդամության թեկնածուին վերաբերող 14-րդ
կետը, պատճառաբանելով, որ այժմ հազվագյուտ է պատահում, որ պարտիա-
յի անդամության թեկնածուն վտարվի պարտիայի շարքերից իրեն չարդարաց-
նելու համար, որ երիտասարդությունը մինչև քսան տարեկանը պարտիայի
շարքերն է անցնում լենինյան կոմերիտմիության միջոցով։ Պարտիան, գրում է
նա, վստահում է կոմերիտմիությանը, պատանիներից ու աղջիկներից իր շար-
քերն է ընդունում կոմերիտմիության երաշխավորությամբ և դա բավական է,
առանց թեկնածուական ստաժի, երիտասարդներին պարտիայի մեջ իբրև ան-
դամ ընդունելու համար։

Ես գտնում եմ, որ ընկ. Շահբազյանի առաջարկությունը հիմնավորված
չէ և դրա ժամանակը չի հասել, քանի որ ոչ բոլոր քաղաքացիներն են որ իրենց
դրսևորում են դրական կերպով, ոչ բոլորն են հասարակության շահերը բարձր
դասում իրենց անձնական շահերից։ Փաստեր կան, երբ հաճախ թեկնածուն
պարտիայի շարքերից վտարվում է հենց թեկնածուական ժամանակաշրջանում։
Բացի այդ, ոչ բոլոր երիտասարդներն են, որ պարտիայի շարքերն են ընդուն-
վում ՀամԼԿԵՄ-ի միջոցով, քանի որ ՀամԼԿԵՄ Կանոնադրության համաձայն
28 տարին լրացած երիտասարդն այլևս կոմերիտական չէ։ Իմ կարծիքով, Կա-
նոնադրության նախագծի «Պարտիայի անդամության թեկնածուները» բաժնում
սահմանված կարգը ճիշտ է և հիմնավորված, ուստի այն պետք է թողնել ան-
փոփոխ, քանի որ թեկնածուական ժամանակաշրջանի սահմանումով կանխ-
վում են խորթ, անկայուն ու անարժան տարրերի թափանցումը պարտիայի մեջ։

2. Կանոնադրության նախագծի 9-րդ կետում ասված է, որ «Անհրաժեշտ
դեպքերում, որպես պարտիական տույժի միջոց, պարտիական կազմակերպու-
թյունը կարող է պարտիայի անդամին թեկնածու փոխադրել մինչև մեկ տարի
ժամկետով... Սահմանված ժամկետը լրանալուց հետո թեկնածու փոխադրվածը
պարտիայի անդամ է ընդունվում ընդհանուր հիմունքներով և պահպանվում է
նրա պարտիական նախկին ստաժը»։

Այս հարցի կապակցությամբ մամուլում հանդես եկող ընկերներից ոմանք
գտնում են, որ եթե պարտիայի անդամին, որպես տույժի միջոց, իջեցրել են
թեկնածու, ապա սահմանված ժամկետը լրանալուց հետո նրան անդամ ընդու-

նելիս չպետք է պահպանել նրա նախկին պարտիական ստաժը։ Ուզում եմ
տվյալ հարցի կապակցությամբ հայտնել նաև իմ կարծիքը։ Պարտիայի ան-
դամությունից թեկնածու իջեցնելը տույժի միջոց է, որը որոշ ժամանակից հե-
տո ենթակա է հանման։ Հետևապես ես գտնում եմ, որ նախագծի մեջ ճիշտ է
ասված՝ պետք է պահպանվի նրա պարտիական նախկին ստաժը։ Բացի այդ,
եթե պարտիական նախկին ստաժը չպահպանվի, ապա դուրս կգա, որ նույն
բանի համար կոմունիստին տրվում է երկու տույժ՝ նախ մեկ տարով նրան
իջեցվում է թեկնածու, զրկելով նրան պարտիայի անդամի իրավունքներից և,
երկրորդ՝ հետագայում պարտիայի անդամ ընդունելիս կորցնում է իր անդա-
մության նախկին ստաժը։ Ուստի գտնում եմ, որ Կանոնադրության նախագծում
տվյալ հարցին տրված է ճիշտ ու հիմնավոր լուծում և նրանում որևէ փոփոխու-
թյուն կատարելու անհրաժեշտություն չկա։

3. Ընկ. Ս. Թամրազյանը «Սովետական Հայաստան» թերթի օգոստոսի
19-ի համարում գրում է. «Եթե կոմունիստը մեկ-երկու անգամ անհարգելի
պատճառով չի ներկայանում ժողովի, որտեղ պետք է քննարկվի իր վարքագծի
հարցը, ապա պարտիական կազմակերպությունը իրավունք ունի այն քննար-
կելու նրա բացակայությամբ»։ Գտնում եմ, որ այդ առաջարկությունն իրավա-
ցի է և Կանոնադրության մեջ պետք է նախատեսել, որ եթե կոմունիստը երկու-
երեք անգամ միտումնավոր կերպով չի ներկայանում պարտիական ժողովի,
որտեղ պետք է քննարկվի իր վարքագծի հարցը, ապա պարտիական կազմակեր-
պությունը կարող է այն քննարկել նրա բացակայությամբ։ Այդ միջոցառումն
էլ ավելի կամրապնդի պարտիական կարգապահությունը։

Ա. ՁԱԼԻՆՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պարտիական
միասնական տոմսի և պար-
տիական տնտեսության սեկ-
տորի վարիչ

# ՄԻ ՔԱՆԻ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ՍՄԿՊ Կանոնադրության նախագծի երկրորդ կետում, ուր խոսվում է պար-
տիայի անդամների պարտականությունների մասին, ա) ենթակետում ասվում
է, որ պարտիայի անդամը պարտավոր է «... պահպանել ու բազմապատկել
հանրային, սոցիալիստական սեփականությունը՝ սովետական Հայրենիքի հզո-
րության և ծաղկման հիմքը»։ Շատ լավ է ասված։ Բայց իրականում մենք ակա-
նատես ենք լինում առանձին դեպքերի, երբ մի հիմնարկի կոմունիստ դիրեկ-
տորը, պահեստապետը կամ մի ուրիշ կոմունիստ տնտեսական ղեկավարը
կատարում է շռայլություն, գողություն, հարստանում է պետության հաշվին,
վարում է ցոփ կյանք և երբ բացվում է նրա կողմից կատարված հափշտակում-
ների շղթան, սկսում են բազմաթիվ խնամախոսությունները և մեծ մասամբ
գործը վերջանում է, ասենք, «նկատողությամբ» կամ «խիստ նկատողու-
թյամբ», հաճախ աշխատանքի վայրը փոխելով։

Ես առաջարկում եմ Կանոնադրության այդ կետի ա) ենթակետի վեր-
ջում գրել այսպես. «Այն կոմունիստը, որը ձեռք է մեկնում հանրային ունեց-



վածքին, առանց այլևայլության անհամատեղելի է ՍՄԿՊ շարքերում մնալու
հետ»։

Պարտիայի անդամի իրավունքների մասում ասվում է. «Քննադատությունը
ճնշելու և քննադատության համար հետապնդելու մեջ մեղավոր անձինք պետք
է պարտիական խիստ պատասխանատվության ենթարկվեն, ընդհուպ մինչև
ՍՄԿՊ շարքերից նրանց վտարելը»։ Հայտնի է, որ քննադատությունը լինում է
ոչ միայն ժողովներում ու նիստերում, այլև մամուլում։ Մամուլը մեր պարտիա-
յի սուր զենքն է, ասել է Վ. Ի. Լենինը։ Մամուլում հանդես են գալիս Սովետա-
կան Միության բազմաթիվ բանգյուղթղթակիցներ. նրանք մերկացնում են հան-
ցագործ տարրերին, գողերին ու այլասերվածներին։ Սակայն մամուլի քննա-
դատական դիտողությունները, ինչպես ցույց է տալիս կյանքը, հաճախ մնում
են անհետևանք։ Դա մամուլի քննադատական ելույթների ճնշումն է լռության
մատնելու միջոցով։ Ես առաջարկում եմ վերոհիշյալ կետի այդ մասը ձևակեր-
պել այսպես. «Քննադատությունը ճնշելու և մամուլի քննադատական ելույթնե-
րը լռության մատնելու, ինչպես և քննադատության համար հետապնդելու մեջ
մեղավոր անձինք անհամատեղելի են ՍՄԿՊ շարքերում մնալու հետ»։

56-րդ կետում ասված է «Ընթացիկ աշխատանքը վարելու համար սկզբ-
նական, ցեխային պարտիական կազմակերպությունը մեկ տարով ընտրում է
բյուրո...»։ Կյանքը ցույց է տալիս, որ առանձին դեպքերում բյուրոների կազ-
մում անցնում են ոչ ձեռներեց, մեր ընդհանուր տեմպերի հետ չքայլող կոմու-
նիստներ։ Ձեռնարկությունն ամիսներ շարունակ չի կատարում պետական
պլաններն ու առաջադրանքները։ Ի՞նչ, ուրեմն պարտիական սկզբնական կազ-
մակերպությունը մեկ տարի շարունակ պիտի քարշ գա այդպիսի բյուրոյի հե-
տևից։ Ես առաջարկում եմ վերոհիշյալ կետի «... մեկ տարով ընտրում է բյու-
րո...» բառերից հետո գրել հետևյալը. «Սկզբնական կազմակերպություններին
իրավունք վերապահել աշխատանքները չգլխավորող, պլանների կատարումը
2—3 ամիս անընդհատ չապահովող գործարաններում, տարվա ուզած ժամա-
նակ, շրջկոմի գիտությամբ անցկացնել պարտբյուրոների վերընտրություն, նոր,
գործունյա բյուրոյի կազմ ընտրելու համար»։ Այս բանը իրոք բոլոր պարտիա-
կան կազմակերպություններում կբարձրացնի պատասխանատվության զգա-
ցումը, որը և մեզ պետք է։

Կանոնադրության 58-րդ կետի ա) ենթակետից մինչև ը) ենթակետը խոս-
վում է սկզբնական պարտիական կազմակերպությունների անելիքների մասին։
Այստեղ բան չի ասվում կատարման ստուգման մասին։ Հայտնի է, որ սկզբնա-
կան պարտիական ժողովը ընդունում է մի շարք կոնկրետ որոշումներ, նույնիսկ
ժամկետներ է նշանակում թե ո՛վ ե՛րբ պետք է վերացնի, ասենք, այսինչ թե-
րությունը։ Բայց մի շարք դեպքերում հենց որ վերջանում է ժողովը, որոշ ան-
պատասխանատու կոմունիստներ չեն կատարում իրենց վրա դրված պարտա-
կանությունները, իսկ պարտիական բյուրոն էլ չցուցաբերելով հետևողականու-
թյուն, չի զեկուցում, թե ինչու չեն կատարվել նախորդ պարտժողովի ընդունած
որոշումները։ Ես առաջարկում եմ ը) ենթակետից հետո մի առանձին կետով
ջարադրել մի նոր՝ թ) ենթակետ, այսպես՝ «Պարտիական բյուրոն պարտադիր
կարգով յուրաքանչյուր ժողովի սկզբում զեկուցում է նախորդ ժողովի կողմից
ընդունված որոշումների կատարման ընթացքի մասին»։

Այս բանը խիստ կբարձրացնի կոմունիստների անձնական պատասխանա-
տվությունը, կուժեղացնի պայքարը բյուրոկրատիզմի ու քաշքշուկների դեմ։

59-րդ կետը խոսում է այն մասին, որ սկզբնական պարտիական կազմա-
կերպությունները (արտադրական, կոլտնտեսային և առևտրական) օգտվում են
ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքից։ Շարադրան-
քի այդ ձևը կա նաև գործող Կանոնադրության մեջ։ Սակայն ՍՄԿՊ Կենտկոմը
իր 1959 թ. հունիսի 26-ի որոշումով դրա մեջ մտցրեց պարզություն, այն ընդ-
լայնեց։ Դրա համար էլ ահա երկու տարի է, ինչ արտադրական, առևտրական
և կոլտնտեսային պարտիական կազմակերպություններում ստեղծված են ադ-
մինիստրացիայի գործունեությունը վերահսկող պարտիական հանձնաժողով-
ներ։ Բայց նոր Կանոնադրության նախագծում ոչ մի խոսք չկա այդ հանձնաժո-
ղովների մասին։

Ես առաջարկում եմ 59-րդ կետի առաջին պարբերության վերջից նշել նաև
պարտիական ընդհանուր ժողովի կողմից ընտրված ադմինիստրացիայի գոր-
ծունեությունը վերահսկող պարտիական հանձնաժողովների դերի մասին։

Վ. Ի. Լենինն ասել է, որ անգրագետ մարդը քաղաքականությունից դուրս
է, որ կոմունիստ կարող ես դառնալ միայն այն ժամանակ, երբ կհարստացնես
միտքդ բոլոր այն գիտություններով, ինչ որ մշակել է մարդկությունը դարերի
ու տարիների ընթացքում։ Միանգամայն պարզ է, որ կոմունիստը պետք է նախ և
առաջ լինի գրագետ, կապված լինի գրականության և մամուլի հետ, օրավուր
հարստացնի իր գիտելիքները։ Բայց մեր շարքերում կան կոմունիստներ, որոնք
թերթը չեն կարդում սիստեմատիկաբար, էլ չեմ խոսում գրքի մասին։ Նրանք
փաստորեն չեն բարձրացնում իրենց գաղափարական մակարդակը։

Ես առաջարկում եմ Կանոնադրության նախագծի 2-րդ կետի դ) ենթակետի
վերջը ձևակերպել այսպես. «Այն կոմունիստը, որը սիստեմատիկաբար չի
բարձրացնում իր գիտական-գաղափարական մակարդակը, չի տիրապետում
մարքս-լենինյան գաղափարներին, չի հաճախում սկզբնական կազմակերպու-
թյան կողմից կազմակերպված ագիտմասսայական աշխատանքներին, քաղ-
գպրոցների պարապմունքներին, անհամատեղելի է կոմունիստի բարձր կոչման
հետ»։

Զ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Երևանի մսի կոմբինատի պարտ-
կազմակերպության անդամ

## ՄԵՐ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հավանություն տալով մեր պարտիայի նոր Ծրագրի ու Կանոնադրության
նախագծերին, անհրաժեշտ ենք համարում անել հետևյալ դիտողությունները։

Մեր կարծիքով Կանոնադրության նախագծի 4-րդ կետում պետք է մտցնել
նաև կոմունիստի կրթության մասին. Կոմունիստական պարտիայի անդամ
ընդունվողը պետք է ունենա ոչ պակաս, քան յոթնամյա կրթություն։ Դրա
համար էլ 4-րդ կետը պետք է շարադրել այսպես. «Պարտիայի անդամի ընդու-
նելությունը կատարվում է բացառապես անհատական կարգով։ Պարտիայի
անդամ են ընդունվում ոչ պակաս քան յոթնամյա կրթություն ունեցող գի-
տակից, ակտիվ և կոմունիզմի գործին նվիրված աշխատավորները՝ բանվոր-
ներից, գյուղացիներից և ինտելիգենցիայից...» այնուհետև ինչպես շարա-
դրված է տեքստում։

Կրթության մասին մեր առաջարկը հիմնավորում ենք նրանով, որ պար-



տիայի անդամը, ինչպես նշված է նախագծում, պարտավոր է. «... տիրապե-
տել մարքս-լենինյան տեսությանը, բարձրացնել իր գաղափարական մակար-
դակը, նպաստել կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորմանը և
դաստիարակությանը, պայքար մղել բուրժուական գաղափարախոսության բո-
լոր դրսևորումների դեմ...» և այլն։

Կանոնադրության նախագծի առաջին գլխի 4-րդ կետի երկրորդ ծանոթու-
թյունը, մեր կարծիքով, պետք է ձևակերպել այսպես.

Ծանոթագրություն երկրորդ.—ՍՄԿՊ Կենտկոմի անդամները և անդամու-
թյան թեկնածուները երաշխավորելուց ձեռնպահ են մնում։ Սկզբնական պար-
տիական կազմակերպությունների այն անդամները, որոնք ունեն պարտիական
որևէ տույժ, իրավունք չունեն երաշխավորելու, քանի դեռ չեն վերացրել տույժը։

Կանոնադրության նախագծի 9-րդ կետում, որտեղ խոսվում է պարտիա-
կան տույժերի մասին, պետք է նշել նաև նրանց վերացման ժամկետը։ Մեր
կարծիքով պարտիական նկատողությունը, որը գրանցվում է հաշվառման քար-
տում, պետք է վերացվի մեկ տարուց հետո, այն էլ այն կազմակերպությունում,
որտեղ ստացել է տվյալ տույժը, իսկ մնացածները ոչ պակաս, քան 6 ամսից
հետո։ ՍՄԿՊ անդամին թեկնածու փոխադրելուց հետո, նրան նորից անդամ
ընդունելու դեպքում, դաստիարակման միջոցներից մեկն էլ այն կլինի, եթե
նրա նախկին պարտիական ստաժը չհաշվվի։

Նպատակահարմար ենք գտնում նշել, որ պարտիական տույժի որոշ ձևեր
պետք է նշվի նաև պարտիայի անդամության թեկնածուների համար, ինչպի-
սիք են ի ցույց դնելը, նկատողությունը, պարտիական հանդիմանությունը,
նախազգուշացումը, մատնացույց անելը և այլն։ Թեկնածուին անդամ ընդունել
եղած տույժի վերացումից հետո։ Իսկ տույժի վերացման համար նշված ժամ-
կետը ավելացնել թեկնածուական պարտադիր ժամկետին։

Կանոնադրության նախագծի 49-րդ կետում նշված է, որ օկրուգային,
քաղաքային, շրջանային կոմիտեների քարտուղարների համար պարտադիր է
առնվազն երեք տարվա պարտիական ստաժ։ Պարտիական գործին լավատեղ-
յակ լինելու համար գտնում ենք, որ նշված ստաժը հինգ տարուց պակաս
չպետք է լինի։

Սովետական դպրոցի վերակառուցումն ուսումն ավելի է կապում կյանքի
հետ. այս առումով գյուղական մյուս կազմակերպությունները իրենց գործու-
նեությամբ առնչվում են կոլտնտեսային և սովետական տնտեսությունների
հետ. այդ տեսակետից էլ նպատակահարմար է գյուղում միացնել սկզբնական
պարտկազմակերպությունները և այդ մասին նշել Կանոնադրության մեջ։

Հ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

Մարտունու շրջանի Ղարանլուղի միջնա-
կարգ դպրոցի պատմության ուսուցչուհի,
ՍՄԿՊ անդամ։

Գ. ԹՈՎՄԱՍՅԱՆ

Նույն դպրոցի ուսմասվար, ՍՄԿՊ անդամ

# ՏՈՂԵՐ ՆԱՄԱԿՆԵՐԻՑ

Իմ կարծիքով սխալ է սկզբնական կազմակերպություններում երկու տարին մեկ անգամ ընտրություններ անցկացնելու մասին որոշ ընկերների ունեցած կարծիքը, որոնք հրապարակվել են մամուլում և ռադիոյով: Ես գտնում եմ, որ կազմակերպության բյուրոն կամ կոմիտեն, նախքան նոր հաշվետու ընտրական ժողովի գումարումը, պետք է գոնե մեկ անգամ (վեց ամիս հետո) իր կատարած աշխատանքների մասին հաշվետվություն տա կազմակերպությանը:

Իմ երկրորդ առաջարկությունը վերաբերում է Կանոնադրության նախագծի առաջին կետին, որտեղ ասված է.

«ՍՄԿՊ անդամ կարող է լինել Սովետական Միության ամեն մի քաղաքացի, որն ընդունում է պարտիայի Ծրագիրն ու Կանոնադրությունը, ակտիվորեն մասնակցում կոմունիզմի կառուցմանը, աշխատում պարտիական կազմակերպություններից մեկում...» և այլն՝ մնացածը:

Վերջին պայմանի համաձայն, այն քաղաքացիները, որոնք չեն աշխատում ոչ մի կազմակերպության մեջ, չեն կարող պարտիայի անդամ ընդունվել: Իսկ մեզ մոտ քիչ չէ չաշխատող կոմունիստների թիվը (ծերության, պատերազմի և աշխատանքային հաշմանդամության թոշակառուները, տնային տնտեսուհիները և այլն):

Դրա համար էլ, իմ կարծիքով, առաջին կետում պետք է ավելացնել հետևյալը.

Ծանոթություն.— «Հարգելի պատճառներով պարտիական կազմակերպության աշխատանքներից դուրս մնացած կոմունիստները ճանաչվում են որպես աշխատողներ և մնում են ՍՄԿՊ-ի շարքերում»:

Պ. ՊԱՊՅԱՆ

**Ս. Մ. Կիրովի անվան գործարանի 30—30ա ցեխի բանվոր, ՍՄԿՊ անդամ 1952 թ.**

✻✻✻

ՍՄԿՊ նոր Կանոնադրության նախագծում ասվում է, որ երաշխավորող կոմունիստը պատասխանատու է իր երաշխավորյալի համար: Դա սարզ է, բայց լավ կլինի, որպեսզի մեր պարտիայի մեջ ընդունվող ընկերոջը երաշխավորի այնպիսի կոմունիստ, որը նախկինում չի ենթարկվել պարտիական տույժի և նկատողություն չի ստացել:

Մյուսը: Կանոնադրության նախագծի 53-րդ կետում նշվում է, որ սկզբնական պարտիական կազմակերպություններ ստեղծվում են ֆաբրիկաներում, գործարաններում և այլուր, որտեղ կա առնվազն երեք կոմունիստ: Իմ կարծիքով, սկզբնական պարտիական կազմակերպություն պետք է ստեղծել առնվազն հինգ կոմունիստի առկայության դեպքում:

Շ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

**Շահումյանի շրջանի Դավիթաշենի դպրոցի սկզբնական պարտկազմակերպության անդամ**

✻✻✻

ՍՄԿՊ Կանոնադրության նախագծի 9-րդ կետում ասվում է. «Կանոնադրական պարտականությունները չկատարելու և այլ կանցանքների համար պարտիայի անդամը ենթարկվում է պատասխանատվության...: Պարտիական պատժի առավելագույն չափը պարտիայից վտարելն է»: Այնուհետև «...պարտիական կազմակերպությունը կարող է պարտիայի անդամին թեկնածու փոխադրել մինչև մեկ տարի ժամկետով: ...Սահմանված ժամկետը լրանալուց հետո թեկնածու փոխադրվածը պարտիայի անդամ է ընդունվում ընդհանուր հիմունքներով և պահպանվում է նրա պարտիական նախկին ստաժը»:

Իմ կարծիքով, եթե պարտիայի անդամը իրեն չի դրսևորել որպես կոմունիստի և նրան տույժ է տրված (իջեցվել է թեկնածու), ապա չպետք է պահպանվի նրա նախկին ստաժը:

Ա. ՇԻՐՈՅԱՆ

**Ջաջուռի կրի գործարանի պարտկազմակերպության անդամ**

✻✻✻

Գտնում եմ, որ պարտիայի անդամ ընդունվածին, որը հետագայում իրեն չարդարացնելու պատճառով վտարվում է պարտիայի շարքերից, այլևս չպետք է ընդունել պարտիայի անդամ, իսկ բացառիկ դեպքերում ընդունելիս, չհաշվել նրա նախկին պարտստաժը, կամ որպես պարտիական տույժ, այդպիսիների պարտիական ստաժը կրճատել 1—2 տարով, այդ մասին գրելով անձնական հաշվառման քարտում:

Գ. ԲԱԼԱՅԱՆ

**Ադրբեջանական ՍՍՌ ԼՂԱՄ Մարտունու շրջանի Աշան գյուղի պարտկազմակերպության քարտուղար**



# ՄԱՐԴՈՒ ԵՐԿՐՈՐԴ ԹՌԻՉՔԸ ԴԵՊԻ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆ



*1961 թվականի օգոստոսի 6-ին, Մոսկվայի ժամանակով ժամը 9-ին, սովետական Բայկոնուր կոսմոդրոմից իրագործվեց տիեզերանավ-արբանյակ «Վոստոկ—2»-ի նոր հաջող արձակումը: Տիեզերանավը վարում էր Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Միության քաղաքացի տիեզերագնաց օդաչու մայոր Գերման Ստեպանովիչ Տիտովը:*

*Ըստ ճշտված տվյալների նավի նվազագույն հեռավորությունը Երկրի մակերևույթից (պերիգեյում) կազմում էր 183 կիլոմետր, իսկ առավելագույն հեռավորությունը (ապոգեյում)՝ 244 կիլոմետր: Հասարակածի նկատմամբ ուղեծրի հարթության թեքության անկյունը 64 աստիճան 56 րոպե էր: Երկրի շուրջը տիեզերանավի պտույտի սկզբնական պարբերությունը կազմում էր 88,46 րոպե:*

*1961 թվականի օգոստոսի 7-ին Մոսկվայի ժամանակով ժամը 10 անց 18 րոպեին տիեզերանավ-արբանյակ «Վոստոկ—2»-ը հաջող կերպով վայրէջք կատարեց Սովետական Միության տերիտորիայի առաջադրված շրջանում՝ Սարատովի մարզի Կրասնի Կուտ ավանի մոտ:*

*Քսանհինգ ժամ տասնութ րոպե տևեց այդ պատմական թռիչքը, ավելի քան յոթ հարյուր հազար կիլոմետր թռավ տիեզերանավ-արբանյակը, կատարելով ավելի քան տասնյոթ պտույտ Երկրի շուրջը:*

*Գ. Ս. Տիտովի թռիչքը նոր էտապ հանդիսացավ մարդկության կողմից տիեզերական տարածության յուրացման ճանապարհին: Ապացուցվեց տիեզերական տարածության մեջ մարդու երկարատև գտնվելու հնարավորությունը:*

*Սովետական նավ-արբանյակների թռիչքները ցույց են տալիս, որ մոտե-*

նում է ժամանակը, երբ մարդը կարող է թափանցել հեռու տիեզերական տա-
րածության մեջ, իրագործել դարավոր երազանքները դեպի Լուսին, Մարս, Վե-
ներա և Տիեզերքի դեռ ավելի հեռավոր խորքերը թռիչքներ կատարելու մասին:
Մարդկությունը մտավ տիեզերքի խորքերում թաքնված բնության գաղտնիք-
ների տիրապետման նոր դարաշրջանը:

Տիեզերական հրթիռների և նավերի արձակման գծով Սովետական Միու-
թյունում տարվող աշխատանքները չեն հետապնդում ռեկորդներ սահմանելու
և մարդկանց երևակայությունը զարմացնող արտաքին էֆեկտների հասնելու
նպատակները: Նրանք անց են կացվում տիեզերական տարածության հետա-
զոտման և յուրացման որոշակի ծրագրի համեմատ: Այդ ծրագրին համապա-
տասխան սովետական գիտնականները, կոնստրուկտորները, ինժեներները,
տեխնիկները, բանվորները կատարում են գիտա-հետազոտական և փորձնա-
-կոնստրուկտորական լայն աշխատանքներ: Հրթիռային տեխնիկայի աստպարե-
զում Սովետական Միության բացառիկ նվաճումները մեր երկրը ծառայեց-
նում է խաղաղությանը և մարդկության առաջադիմությանը: Երկիր մոլորակը
էներգիայի հսկայական կուտակիչ է, որին գլխավորում է մարդկային բանա-
կանությունը: Միայն մարդուց է կախված, թե ինչպես տնօրինել այդ էներգիան,
ինչի վրա ուղղել նրա հզոր ուժերը:

Սովետական ժողովուրդը, որին ղեկավարում է Կոմունիստական պար-
տիան, ձգտում է դեպի ապագան:

«Վոստոկ» տիպի տիեզերանավեր ստեղծելուց հետո սկսվել և կատար-
վում են կանոնավոր հետազոտություններ մարդուն տիեզերական ուղեծիրներ
դուրս բերելու, դեպի Երկիր մարդու վերադարձման մեթոդները մշակելու,
մարդկային օրգանիզմի վրա տիեզերական թռիչքի պայմանների ազդեցությու-
նը ուսումնասիրելու, անկշռության պայմաններում երկարատև գտնվելու ժա-
մանակ մարդու աշխատունակության պահպանման հնարավորությունը որոշե-
լու համար: Կատարվում է թռիչքի ժամանակ մարդու կյանքն ապահովող սիս-
տեմների խնամքով մշակումը:

Աշխարհում առաջին սովետական տիեզերագնաց Յու. Ա. Գագարինի թռ-
իչքը բացեց մարդու կողմից տիեզերական տարածության յուրացման ժամա-
նակաշրջանը:

Չորս ամիս էլ չանցավ և տիեզերագնաց Գերման Ստեպանովիչ Տիտովն
իրագործեց երկարատև տիեզերական թռիչքը: Նա անցավ մի ճանապարհ,
որ մոտավորապես հավասար է Երկրից մինչև Լուսին և դեպի հետ եղած հե-
ռավորությանը և հաջող կերպով վերադարձավ դեպի Երկիր: Այդ թռիչքը մի
նոր խոշոր քայլ է տիեզերական տարածության յուրացման ճանապարհին, սո-
վետական գիտության ու տեխնիկայի նոր պատմական հաղթանակը:

## «ՎՈՍՏՈԿ—2» ՏԻԵԶԵՐԱՆԱՎԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

«Վոստոկ—2» տիեզերանավը բաղկացած է օդաչուի խցիկից, սարքերի
հատվածամասից և արգելակային շարժիչ տեղակայումով հատվածամասից:

Օդաչուի խցիկի արտաքին մակերևույթը պատված է ջերմային պաշտ-
պանության շերտով, որը նրան պահպանում է բարձր ջերմաստիճանների ներ-
գործությունից մթնոլորտի խիտ շերտերում վայր իջնելիս: Խցիկի թաղան-
թում գտնվում են երեք լուսանցույցներ (իլյումինատոր) և երկու արագորեն
բացվող դռնակներ: Լուսանցույցները պաշտպանված են կրակադիմացկուն



ապակիներով, որոնք տիեզերագնացին թույլ են տալիս դիտումներ կատարել
ինչպես ուղեծիրով թռչելու ժամանակ, այնպես էլ վայրէջքի տեղամասում:
Տիեզերագնացի աչքերը Արեգակի ճառագայթներից պահպանելու համար յու-
րաքանչյուր լուսանցույցի վրա տեղադրված են փոքրիկ գալարավարագույր-
ներ, որոնց հաղորդակները անհրաժեշտության դեպքում թույլ են տալիս
լուսանցույցը փակել:

Նավի խցիկում տեղաբաշխվում են կենսագործունեության ապահովման,
կառավարման սիստեմների ապարատուրան, ռադիոսարքավորման մի մա-
սը, բորտային մատյանը, օպտիկական հարմարանքը լուսանցույցների միջո-
ցով տիեզերագնացի կողմից վիզուալ դիտումներ կատարելու համար, հեռուս-
տատեսային կամերաները թռիչքի ժամանակ տիեզերագնացին դիտելու հա-
մար:

Սարքերի հատվածամասում տեղաբաշխվում են ռադիոսարքավորումը, կա-
ռավարման ապարատուրան, նավի ջերմակարգավորման սիստեմը:

Նավի խցիկում տիեզերագնացը տեղավորվում է հատուկ բազկաթոռի
վրա: Վերջինս իրենից ներկայացնում է սիստեմների ու հարմարանքների մի
կոմպլեքս, որն ապահովում է նավի խցիկում տիեզերագնացի երկարատև
գտնվելու, ինչպես նաև, անհրաժեշտության դեպքում, նավից անվտանգ բա-
ժանվելու և Երկրի մակերևույթի վրա իջնելու հնարավորությունը: Բազկաթո-
ռում նախատեսված են հարմարանքներ, որոնք ապահովում են տիեզերագնա-
ցի ավտոմատիկ անվտանգ բաժանումը նավից և նրա վայրէջքը, երբ նավի
ստարտի և ուղեծիր դուրս բերվելու ժամանակ նրա մեջ ծագում է վթարային
իրադրություն: Բազկաթոռում գտնվում են թթվածնի պաշար և օդափոխող հար-
մարանք, որոնք ապահովում են կոմֆորտը տիեզերագնացի համար. վերջինս
հագած է հատուկ հերմետիկ կոստյում՝ սկաֆանդրը: Բացի դրանից, բազկաթո-
ռում դասավորված են ընդունող-հաղորդող ռադիոկայաններ, առաջին անհրա-
ժեշտության մթերքների և առարկաների պաշար, որից տիեզերագնացը կարող
է օգտվել վայրէջքից հետո: Բազկաթոռի հենման մակերևույթները ծածկված
են պլաստմասսայի փափուկ բարձերով, որոնք պատրաստված են մարմնի
հարող մասերի ձևով:

Նավից տիեզերագնացի առանձին վայր իջնելու դեպքում բազկաթոռի
պարաշյուտային սիստեմներն ապահովում են նրա կայունացված և սահուն
վայրէջքը գետնի կամ ջրի վրա: Ջրի վրա իջնելու դեպքում տիեզերագնացը կա-
րող է օգտվել փչովի նավակից, որն ավտոմատիկ կերպով ընդարձակվում է և
ջրի վրա իջնելու պահին պատրաստ է կիրառման համար: Բացի դրանից, ջրի
վրա իջնելու դեպքում սկաֆանդրը ինքնին պահում է տիեզերագնացին ջրի վրա՝
մեջքի վրա պառկած դիրքում: Սկաֆանդրի ջերմամեկուսացումը և նրա հեր-
մետիկությունը այնպիսին են, որ թույլատրում են գտնվել սառցաջրում (0°C
ջերմաստիճանով) 12 ժամվա ընթացքում առանց անախորժ զգացողություն-
ների: Տիեզերագնացը սկաֆանդրը հագնում է իր բրդյա սպիտակեղենի վրա-
յից: Սկաֆանդրի սաղավարտն ունի ապակեպատ «երեսկալ»- լուսանցույց, որը
տիեզերագնացը ձեռքով բացում է, իսկ փակվում է թե՛ ձեռքով, թե՛ ավտո-
մատիկ կերպով, եթե նավի խցիկում օդի ճնշումը կամ գազային բաղադրու-
թյունը դուրս է գալիս թույլատրելի նորմաների սահմաններից: Սկաֆանդրը և
նրա սիստեմները տիեզերագնացին թույլ են տալիս նավը կառավարելու նույն-
իսկ խցիկի վթարային ապահերմետացման դեպքում:

Սկաֆանդրի վրայից տիեզերագնացը հագած է նարնջագույն կոստյում-
կոմբինեզոն։
Սկաֆանդրի օդափոխումը իրագործվում է խցիկի օդով։
Ձեռքով կառավարման ապարատուրան տիեզերագնացին թույլ է տալիս
կառավարել նավի կողմնորոշումը տարածության մեջ, վայրէջք կատարել
ընտրված շրջանում, կարգավորել խցիկի մթնոլորտի պարամետրերը և այլն։
Երկրի հետ տիեզերագնացը կարող է խոսակցել, օգտվելով միկրոֆոննե-
րից, լարինգոֆոնից, հեռախոսներից ու բարձրախոսներից, միացնելով այս
կամ այն էլեմենտները սեփական հայեցողությամբ։
Օդի կոնդիցիոնացված և ճնշման կարգավորման ապարատուրան ավտո-
մատիկ կերպով պահպանում է խցիկում օդի գազերի նորմալ բաղադրությունը,
խոնավությունն ու ճնշումը։
Անհրաժեշտության դեպքում տիեզերագնացը կարող է միջամտել ավտո-
մատիկայի աշխատանքին, պակասեցնելով կամ ավելացնելով օդի ջերմաստի-
ճանը, փոփոխելով խոնավությունը և գազային բաղադրությունը։
«Վոստոկ—2» նավի վրա դրվել է նոր ռեգեներացիոն տեղակայում, որը
«Վոստոկ—1» նավի ռեգեներացիոն տեղեկայումից տարբերվում է բլոկների,
քիմիական ռեագենտների կազմությամբ և որն ավելի կատարյալ է։
Հատուկ պատրաստված սնունդը (հյութեր, շոկոլադ, պաշտետներ և այլն)
պարփակված է տյուբիկներում, իսկ ջուրը գտնվում է հատուկ փոքրիկ բաքում
և տիեզերագնացն այն ընդունում է փողածայրոցի և ճկուն խողովակի օգնու-
թյամբ։ Իր մոտ գտնվող «Կոնվաս» ռեպերտյորական կինոկամերայի օգնու-
թյամբ Գ. Ս. Տիտովը կարողացավ խցիկում լուսանցույցներից նկարահանում-
ներ կատարել։ Կամերայի համար կային նույնպես փոխովի օբյեկտիվ-
ների հավաքածու և գունավոր ժապավենի պաշար։
«Վոստոկ—2» նավի թռիչքը պլանավորվել էր Երկրի շուրջը 17 պտույտ
կատարելու համար։ Սակայն նավի կոնստրուկցիան, սննդի, ջրի, ռեգեներա-
ցիոն սիստեմի ռեագենտների, էլեկտրասնման աղբյուրների պաշարները թույլ
են տալիս ավելի երկարատև թռիչք կատարել։
Ուղեծիր դուրս բերվելուց հետո նավը բաժանվեց տանող հրթիռից։ Ուղե-
ծրով թռչելու ժամանակ նավի բորտային ապարատուրան աշխատում էր որո-
շակի ծրագրով։
ՍՍՌՄ տերիտորիայի վրայով թռչելիս միացվում է տելեմետրական ին-
ֆորմացիայի հաղորդման, ուղեծրի վերահսկման և օդաչուի հեռուստատե-
սական պատկերի հաղորդման ապարատուրան։ Շարժման պարամետրերի չա-
փումների տվյալները, որոնք ստացվել են վերերկրյա կայաններում, կապի
կանալներով ավտոմատիկ կերպով հաղորդվում էին հաշվողական կենտրոն-
ներին, որտեղ իրագործվում էր նրանց մշակումը հաշվողական էլեկտրոնային
մեքենաներով։ Այսպիսով, թռիչքի ժամանակ որոշվում էին ուղեծրի պարա-
մետրերը և կանխորոշվում էր նավի շարժումը։
Նավում տեղադրված «Սիգնալ» սիստեմը, որն անընդհատ աշխատում էր
19,995 մեգահերց հաճախականությամբ, ծառայում էր նավի պելենգման
(չափման) և տելեմետրական ինֆորմացիայի մի մասի հաղորդման համար։
Թռիչքի ժամանակ առաջադրանքին համապատասխան տիեզերագնացը
ռադիոկապ էր պահպանում վերերկրյա կայանների հետ, հաղորդումներ տալիս
ինքնազգացողության մասին, թռիչքային առաջադրանքի կատարման մասին,



տեղեկություններ բորտային ապարատուրայի աշխատանքի մասին, ցուցումներ
ստանում հետագա թռիչքի կարգի մասին։
Ռադիոհեռախոսային գծերով տիեզերագնացից ստացված տեղեկություն-
ները, տելեմետրական ինֆորմացիան մշակվում էր վերերկրյա կայաններում
և կենտրոնացվում թռիչքի կառավարման հրամանակայանում։ Ստացված ին-
ֆորմացիայի վերլուծման հիման վրա որոշումներ էին ընդունվում հետագա
թռիչքի ընթացքի մասին։
Թռիչքի ժամանակ առաջադրանքին համապատասխան տիեզերագնացը
պետք է՝
— հսկեր բորտային ապարատուրայի աշխատանքին,
— երկու անգամ կատարեր նավի ձեռքով կառավարման փորձարկումը,
— վիզուալ (տեսողական) դիտումներ կատարեր խցիկի լուսանցույցներից,
— ՍՍՌՄ տերիտորիայի վրայով թռչելու ժամանակ, բացի Երկրի հետ ան-
միջական ռադիոկապ հաստատելուց, ժամը երկու անգամ անցկացներ կարճ-
ալիքային կապի սեանսներ,
— կատարեր ֆիզիկական լիցք և այլն։
Տիեզերագնացի վատ ինքնազգացողության կամ բորտային ապարատու-
րայի աշխատանքի խանգարումների դեպքում կարելի էր ցանկացած պահին
իրագործել նավի վայրէջքը Երկրի վրա։ Վայրէջքի մասին տիեզերագնացը կա-
րող էր որոշում ընդունել ինքնուրույն կերպով կամ թռիչքի կառավարման հրա-
մանակայանի հետ խորհրդակցելուց հետո։ Վայրէջքը կարելի էր իրագործել
ինչպես նավի ձեռքով կառավարման, այնպես էլ ավտոմատիկ սիստեմի օգ-
տագործման միջոցով։
Նորմալ թռիչքի ժամանակ վայրէջքը ենթադրվում էր իրագործել 18-րդ
պտույտի սկզբում։ Ծրագրով նախատեսվում էր ավտոմատիկ սիստեմի օգտա-
գործումը։ Ընդ որում արգելակային շարժիչ տեղակայումը միացնելուց առաջ
կատարվում է նավի ավտոմատիկ կողմնորոշումը։ Ուղեծրի առաջադրված
կետում արգելակային տեղակայման գործելուց հետո նավն իր ուղեծրից անց-
նում է վայրէջքի հետագծի վրա։ Բարձր ջերմաստիճանների և գերբեռնվա-
ծությունների ներգործության գոտին անցնելուց հետո Երկրի մակերևույթի մոտ
միացվում է վայրէջքի սիստեմը, որն ապահովում է նավի վայրէջքը փոքր
արագությամբ։
Հնարավոր է օդաչուի վայրէջքի երկու եղանակների օգտագործումը
— նավում,
— նավից դուրս՝ փոքր բարձրության վրա բազկաթոռի հետ միասին նա-
վից տիեզերագնացի բաժանվելու և պարաշյուտներով հետագայում տիեզերա-
գնացի իջնելու միջոցով։
Այս թռիչքում Գ. Ս. Տիտովն օգտագործեց վերջին եղանակը։

## ԿԱՊԻ ՍԻՍՏԵՄՆԵՐԸ ՏԻԵԶԵՐԱՆԱՎԻ ՀԵՏ

«Վոստոկ—2» տիեզերանավի համար կապի ապարատուրայի մշակման
ժամանակ անհրաժեշտ էր ապահովել ինչպես ամբողջովին առած կապի ողջ
սիստեմի, այնպես էլ նրա մեջ մտնող յուրաքանչյուր բլոկի աշխատանքի մեծ
հուսալիությունը։
Կապի սիստեմը պետք է ապահովեր երկկողմանի խոսակցությունը։ Եր-

կըրի հետ առավելագույն հնարավոր հեռավորությունների վրա՝ թռիչքի ցանկացած պայմաններում և կապի մեջ մտնելու համար ծախսվող ամենաքիչ ժամանակում։

Կապի մեծ հուսալիությունն ապահովելու նպատակով նավում տեղադրված են կապի երկկողմանի ռադիոհեռախոսային երեք գծեր՝ երկուսը կարճալիքներով և մեկը՝ ուլտրակարճ ալիքներով։ Միաժամանակ աշխատող երկու կարճալիքային գծերը ապահովում էին ընդունումն ու հաղորդումը զանազան ալիքներով, որոնցից յուրաքանչյուրը լավ ընթանում է ցերեկվա կամ գիշերվա պայմաններում։

Կարճ ալիքների անցումը շատ խիստ կերպով կախված է իոնոսֆերայի վիճակից, հետևապես կարճալիքային կապը միշտ չէ, որ վստահություն է ներշնչում։ Այդ պատճառով, բացի նրանից, օգտագործվել է ուլտրակարճալիքային կանալը, որն ապահովում է հուսալի կապը համեմատաբար փոքր, մինչև 1500—2000 կիլոմետր հեռավորությունների վրա։ Ուլտրակարճալիքային կապի ռադիոալիքների անցումը գործնականորեն կախված չէ նավի թռիչքի բարձրությունից, օրվա, ամսվա և տարվա ժամանակից, այսինքն՝ այն բոլոր գործոններից, որոնք որոշում են իոնոսֆերայի վիճակը։

Այսպիսով, կարճալիքային կապը տիեզերագնացին հնարավորություն էր տալիս օրվա ցանկացած ժամին աշխատել մեծ հեռավորությունների վրա՝ ընդհուպ մինչև երկրագնդի մակերևույթի հակադիր գոտին, իսկ ուլտրակարճալիքային կապը լավ ռադիոկապ էր ապահովում Երկրի հետ ՍՍՌՄ տերիտորիայի վրայով թռչելու ժամանակ։

Կարճալիքային ռադիոհաղորդիչները աշխատում էին ընդհանուր անտեննայով հատուկ բաժանիչ ֆիլտրների օգնությամբ։ Նույն ձևով ընդհանուր անտեննայով աշխատում էին նաև կարճալիքային ռադիոընդունիչները։ Ռադիոընդունիչների և հաղորդիչների միաժամանակ աշխատանքի ստացման համար հարկ եղավ այդ անտեննային հարմարանքների միջև ապահովել ապաֆիլտրման բարձր աստիճանը։ Ուլտրակարճալիքային ռադիոհաղորդիչներն ու ընդունիչները աշխատում էին ընդհանուր անտեննայով։

Նավի ռադիոհաղորդիչների հաճախականությունները կազմում էին 15,765, 20,006 և 143,625 մեգահերց։

Կապի բորտային ապարատուրայի կոմպլեկտի մեջ մտնում էին բորտային մագնիտոֆոնը, որն ունի խոսքի ազդանշանից գործարկվող ավտոմատ և գրառման արագացրած հաշվումն ըստ Երկրից տրվող հրամանով, լայնահաղորդ ընդունիչը, որն ունի սահուն համալարում միջին և կարճ ալիքների դիապազոններում։

Երկրի վրա տիեզերանավի հետ կապվելու համար օգտագործվում է ուլտրակարճալիքային և կարճալիքային վերերկրյա կայանների հատուկ ցանցը։ Ուլտրակարճալիքային կայանները հագեցված են հատուկ ուղղված անտեննաներով և արագացրած վերարտադրումը գրանցելու սարքավորմամբ. կարճալիքային վերերկրյա կայաններում օգտագործվում էին ուղղված անտեննաներ, հզոր ռադիոհաղորդիչներ և բարձր զգայունության ընդունիչներ։ Վերերկրյա կենտրոնները կապված են դիսպետչերի հետ, որ վարում է կապի ծրագիրը։ Նա ցուցումներ է տալիս, թե երբ ինչպիսի ռադիոհաղորդիչ պետք է միացնել և բորտին ինչ պետք է հաղորդել. նրա մոտ էլ հավաքվում են վերերկրյա ընդունման կայանների բոլոր տեղեկությունները։



Տիեզերանավի շարժման մեծ արագության պատճառով վերերկրյա բազմաթիվ կայաններից յուրաքանչյուրի հետ դիսպետչերի պարզորոշ և օպերատիվ կապի հարցերը ձեռք են բերում հատուկ նշանակություն։ Ընդունված տեղեկությունների մասին զեկուցելիս կամ բորտին հաղորդելիս ամեն մի աննշան հապաղում կարող է կապը վիժեցնել։

Դեռ մինչև Յու. Ա. Գագարինի և Գ. Ս. Տիտովի թռիչքները, ընթացիկ տարվա մարտին կենդանիներով նավերի արձակումների ժամանակ անցկացվել է կապի սիստեմի բոլոր բլոկների ու սարքերի աշխատանքի լրիվ փորձարկումը։

Այդ թռիչքային էքսպերիմենտը հնարավորություն տվեց լիովին ստուգել կապի հեռահասությունը կարճ և ուլտրակարճ ալիքներով, պարզել դուրս բերման տեղամասում ձայնական աղմուկի ազդեցությունը խոսքի պարզորոշության վրա, որոշել ռադիոհաղորդիչների ու ընդունիչների միաժամանակ աշխատելու հնարավորությունը թռիչքի ընթացքում և այլն։ Փորձարկվել է նաև օդաչուի կապի սիստեմի էլեկտրաձայնային սարքավորումը և ստուգվել նրա կայունությունը աղմուկների հանդեպ թռիչքի իրական պայմաններում։

Այսպիսով, մինչև մարդու թռիչքների սկսելը կապի սիստեմը լիովին ստուգվել էր և խնամքով մշակվել ավտոմատիկ կերպով սահմանվող ռեժիմներում անօդաչու փորձարկումների շնորհիվ։

Թռիչքի ժամանակ տիեզերագնացին անմիջականորեն դիտելու համար նավի բորտի վրա գտնվում էր նաև հեռուստատեսական ապարատուրա։

«Վոստոկ—2» տիեզերանավ—արբիտի վրա հեռուստատեսական ապարատուրայի խնդիրները հանգում էին առաջին հերթին տիեզերագնացի պատկերների ստացմանը, որոնք օբյեկտիվ կերպով բնորոշում են նրա ինքնազգացողությունը, վարքը, շարժումների կոորդինացումը զանազան աշխատանք կատարելու ժամանակ։

Ոչ պակաս էական էր նավի բորտից հեռուստատեսական պատկերների հաղորդման պայմանների հետագա հետազոտությունը՝ տիեզերական օբյեկտների հեռուստատեսական ապարատուրայի կատարելագործման նպատակով։ Դրան համապատասխան նավի բորտի վրա տեղադրվել էին երկու հեռուստատեսական նեղաշերտ և լայնաշերտ սիստեմներ։

Երկու հեռուստատեսական սիստեմները աշխատում էին անկախ և ունեին իրենց ռադիոհաղորդիչները ուլտրակարճալիքային դիապազոնում։ Վերերկրյա ընդունման կայաններում իրագործվում էր պատկերների դիտումը նրանց ազդանշանների վերահսկման հարմարանքների էկրանների վրա և ընդունված պատկերների կինոլուսանկարչական գրանցումը։

Գրանցումն իրագործվում էր հիմնական ֆիզիոլոգիական ֆունկցիաների պուլսի, շնչառության և այլնի հաճախականության գրառման հետ սինխրոն կերպով, որը թույլ տվեց կատարել զանազան տվյալների կոմպլեքսային առադրությունը թռիչքի նյութերի մշակման ժամանակ։

## ՆԱՎՈՒՄ ԿԵՆՍԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԻ ԱՊԱՀՈՎՈՒՄԸ

«Վոստոկ—1» և «Վոստոկ—2» տիեզերանավերի թռիչքների իրագործմանը նախորդեց մեծ հետազոտական աշխատանք խցիկի միկրոկլիմայի պարամետրերը որոշելու, թռիչքի ամբողջ ժամանակի ընթացքում նրանց պահպանման և վերահսկման եղանակների ու միջոցների մշակման համար։ Հետազոտություն-

ների ժամանակ խցիկի միկրոկլիմայի տարրերի (բարոմետրական ճնշում, օդի գազային բաղադրություն և խոնավություն, գազային միջավայրի ջերմաստիճանային ռեժիմ) փոփոխումների բացահայտված օրինաչափությունների, հենց խցիկի և նրա մեջ տեղաբաշխված սարքավորման կոնստրուկցիայի մանրազնին վերլուծման հիման վրա բազմակողմանիորեն հիմնավորվել են տեխնիկական և ֆիզիոլոգիական-հիգիենիկ պահանջները հերմետիկ խցիկի նկատմամբ, որոնք իրենց հաջող կերպով արդարացրել են տիեզերանավերի կատարած արձակումների ժամանակ։

Մարդու օրգանիզմը ընդունակ է պահպանել նորմալ կենսագործունեություն շրջապատող միջավայրի պայմաններում նորմայից որոշ շեղումներով։ Սակայն, եթե շրջապատող միջավայրի միկրոկլիմայի տարրերի փոփոխումները հասնում են զգալի չափերի, օրգանիզմի պահեստային հնարավորությունները սպառված են լինում, օրգանիզմի և շրջապատող միջավայրի միջև եղած «հավասարակշռությունը» խախտվում է, երևան են գալիս առանձին ֆիզիոլոգիական սիստեմների և ամբողջովին առած կենսագործունեության խանգարումներ։ Շրջապատող միջավայրի միկրոկլիմայի տարրերի ամեն մի շեղումը նորմալ պարամետրերից, առաջացնելով օրգանիզմում ֆիզիոլոգիական լրացուցիչ բեռնավորում, վատացնում է գերբեռնավորումը, անկշռության վիճակը, գերբեռնավորումից դեպի անկշռություն և հակառակը անցման վիճակները և այլն մարդու կողմից տանելու ընդունակությունը։

Խցիկի միկրոկլիմայի հիմնական պարամետրերը նորմալ պարամետրերին մոտ պահպանելու համար «Վոստոկ—2» նավում օգտագործվել է օդի ռեգեներացման սիստեմ, որն ապահովում է, մի կողմից, անջատվող ածխաթթու գազի և խոնավության կլանումը մարդու միջոցով և մյուս կողմից շնչառության համար անհրաժեշտ որոշակի քանակությամբ թթվածնի անջատումը։

Սիստեմի միջոցով անջատվող թթվածնի քանակությունը կարգավորվում էր (որոշակի սահմաններում) հենց տիեզերագնացի պահանջմունքներով։ Նավի խցիկի մթնոլորտում թթվածնի, ածխաթթու գազի և ջրի գոլորշիների պարունակության առաջադրված մեծություններից տեղի ունեցող շեղումները գրանցվում էին հատուկ զգայուն տարրերի միջոցով, որոնց ազդանշաններն ընկալվում էին ավտոմատիկ կարգավորիչի կողմից։ Վերջինս կառավարում է ռեգեներատորում համապատասխան ռեակցիաների ընթացքի արագությունը։

Ռեգեներացիոն տեղակայման ավտոմատիկ կառավարումը կրկնվում էր ձեռքով կառավարման միջոցով, որը տիեզերագնացին թույլ էր տալիս անհրաժեշտ դեպքերում ինքնին կառավարել տեղակայման աշխատանքը, ստեղծելով խցիկի մթնոլորտի ցանկալի գազային բաղադրությունը, խոնավությունն ու ջերմաստիճանը։

Տիեզերանավի խցիկում անհրաժեշտ ջերմաստիճանային ռեժիմի պահպանումը իրագործվում էր ջերմակարգավորման հատուկ ավտոմատիկ սիստեմի միջոցով։ Նրա մշակումը կապված էր մի շարք դժվարությունների հաղթահարման հետ, որոնք պայմանավորվում են, մի կողմից, մարդու և աշխատող ապարատուրայի միջոցով ժամանակի մեկ միավորի ընթացքում անջատվող ջերմության անհաստատունությամբ, իսկ մյուս կողմից՝ Արեգակից խցիկի ճառագայթիչ տաքացմամբ։

Ջերմակարգավորման ավտոմատիկ սիստեմը կազմված էր երկու կոնտուրներից՝ օդային—հերմետիկ խցիկի տարածությունում բացված և հեղուկային—



խցիկի սարքային հատվածամասում տեղադրված ջերմության հատուկ ճառագայթիչով փակված։ Երկու կոնտուրն էլ միանում էին օդահեղուկային ջերմափոխանակիչում, որ տեղավորված էր տիեզերանավի խցիկում։

Տիեզերագնացը հնարավորություն ուներ ինքնուրույն կերպով սահմանել նավի խցիկում օդի ջերմաստիճանը +10-ից մինչև +25°C սահմաններում, որն այնուհետև պահպանվում էր ավտոմատիկ կերպով։

Բոլոր պարամետրերը, որոնք բնորոշում էին ռեգեներացիոն տեղակայման սիստեմի աշխատանքը և տիեզերանավի խցիկի մթնոլորտի վիճակը, տիեզերագնացը դիտում էր խցիկի ներսում սարքերի պուլտի վրա տեղադրված սարքերի միջոցով և հաղորդում Երկրին ռադիոտելեմետրական միջոցների օգնությամբ։

Վերերկրյա լաբորատորական պայմաններում անցկացված բազմաթիվ էքսպերիմենտները ցույց տվեցին, որ նավի խցիկի օդի կոնդիցիոնացման և ռեգեներացման մշակված սիստեմը հուսալի կերպով ապահովում է խցիկի մթնոլորտի ճնշման, ջերմաստիճանի, խոնավության և գազային բաղադրության պահպանումը անհրաժեշտ սահմաններում։

## ԱՆԿՇՌՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԻ ՖԻԶԻՈԼՈԳԻԱԿԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Երկրորդ տիեզերական թռիչքի հիմնական տարբերությունը առաջինից այն է, որ նա երկարատև էր և կատարվում էր գիտական հետազոտությունների ավելի լայն ծրագրով։

Հայտնի է, որ այն գործոններից մեկը, որոնց հետ մարդը հանդիպում է տիեզերական թռիչքի ժամանակ, հանդիսանում է անկշռությունը։ Մինչդեռ օրգանիզմի վրա նրա ունեցած ազդեցության բնույթի մասին մինչև վերջին ժամանակները քիչ բան էր հայտնի։ Մասնակի և կարճատև անկշռության դեպքերը, որոնք մարդուն ծանոթ են վերերկրյա պայմաններում, թույլ չէին տալիս գիտականորեն հիմնավորված որևէ կանխորոշում անել տիեզերական թռիչքների վերաբերյալ։ Տարածության մեջ մարդու կողմնորոշման, նրա շարժումների կոորդինացման, սիրտ-անոթային և մարսողական սիստեմների ֆունկցիայի, հոգեկան վիճակի վրա երկարատև անկշռության ունեցած ազդեցության մասին արտահայտվել են հակասական կարծիքներ։

Այդ ամենը պահանջում էր նշված կարևոր պրոբլեմի բազմակողմանի ուսումնասիրությունը։ Ընդ որում ամենից առաջ պահանջվում էր պարզել օրգանիզմի կենսականորեն կարևոր ֆունկցիաների՝ արյան շրջանառության և շնչառության վրա անկշռության ունեցած ազդեցության բնույթը, այսինքն՝ որոշել, թե անկշռության մեջ գտնվելը որքան վտանգավոր է մարդու կյանքի համար։ Քիչ կարևոր չէր նույնպես ուսումնասիրել տիեզերագնացի նորմալ կենսագործունեության հնարավորությունը թռիչքի ընթացքում, նրա աշխատունակությունը, սնունդ ընդունելու, քնելու և այլ ունակությունները։

Դրված հարցերի լուծումը ներկայացնում էր մեծ դժվարություններ։ Դա պայմանավորվում էր նրանով, որ վերերկրյա պայմաններում անկշռության վերարտադրման համար հատուկ ստենդների ստեղծումը հանդիսանում է տեխնիկապես չափազանց բարդ խնդիր։ Իրոք, որպեսզի մարդը դադարի սեփական կշիռը զգալուց, անհրաժեշտ է ստեղծել այնպիսի պայմաններ, որոնց դեպքում

գաղարեցվի ռեցեպտորական ապարատի (նյարդային վերջավորությունների) գրգռումը․ նրանից իմպուլսների հոսքը շարունակ գնում է կենտրոնական նյարդային սիստեմ, տեղեկացնելով մարդուն տարածության մեջ մարմնի դիրքի մասին, մարմնի զանազան մասերի դիրքի մասին։

Ինչպես հայտնի է տարածության մեջ մարդու կողմնորոշումը և նրա շարժման խիստ կոորդինացումը հնարավոր է լինում երեք սիստեմների՝ վեստիբուլյար (նախախորշային) ապարատի, տեսողության օրգանի և կաշվի, մկանների, ջլերի, հոդերի և կապանների հստակ գործելու շնորհիվ։

Վեստիբուլյար ապարատը տեղավորված է լաբիրինթոսում, որ գտնվում է քունքոսկրի բուրգում։ Նա կազմված է երեք կիսաշրջանաձև կանալներից, որոնք դասավորված են երեք հարթություններում, և օտոլիթային (ականջի քարի) օրգանից։ Կիսաշրջանաձև կանալների օգնությամբ ընկալվում են անկյունային արագությունները, իսկ օտոլիթային օրգանը ամենից առաջ արձագանքում է ծանրության ուժի փոփոխումներին։ Օտոլիթային օրգանը տեղավորված է կիսաշրջանաձև կանալների կցվանքում և իրենից ներկայացնում է մի խոռոչ, որի հատակը ծածկված է զգայուն նյարդային բջիջներով։ Բջիջներն ունեն նրբագույն մազիկներ, իսկ նրանց վրա դոնդողանման զանգվածում ընկած են կալցիումի կարբոնատի և ֆոսֆատի աղերի փոքր բյուրեղիկները՝ օտոլիթները։ Երբ փոփոխվում է գլխի դիրքը կամ ծանրության ուժը, փոփոխվում է օտոլիթների ճնշումը նյարդային բջիջների վրա, իսկ հետևաբար փոփոխվում է նաև վերջինների գրգռումը։ Օտոլիթային ապարատից նյարդային իմպուլսները հաղորդվում են կենտրոնական նյարդային սիստեմին և ստացված ինֆորմացիայի հիման վրա որոշակի մկանային խմբերի օգնությամբ իրագործվում է մարմնի ճիշտ կողմնորոշումը տարածության մեջ։

Բոլոր թվարկված սիստեմները (վեստիբուլյար ապարատ, տեսողություն և այլն) փոխադարձաբար լրացնում են մեկը մյուսին։

Պետք է ավելացնել, որ վեստիբուլյար ապարատը սերտորեն կապված է վեգետատիվ նյարդային սիստեմի հետ, որը կարգավորում է այնպիսի ավտոմատիկ ֆունկցիաներ, ինչպես մարսողությունը, սրտի գործունեությունը, անոթների տոնուսը, քրտնաթորումը և այլն։ Այդ պատճառով վեստիբուլյար ապարատի ֆունկցիայի կողմից փոփոխումները կարող են առաջացնել էական շեղումներ նշված սիստեմների ֆունկցիայում։

Մարդու օրգանիզմի վրա անկշռության ազդեցության ուսումնասիրման գծով առաջին հատուկ փորձերը անցկացվեցին վերերկրյա ստենդում, որը թույլ էր տալիս ստեղծել 1—2 վայրկյան տևողությամբ անկշռություն։ Այդ փորձերի արդյունքները, սակայն, չէին կարող բավարարել հետազոտողներին, քանի որ անկշռության ազդեցությունը չափազանց կարճատև էր։ Հետաքրքիր էր անկշռության վիճակն ընդօրինակելու փորձը, երբ հատուկ կոստյում հագած մարդը ընկղմվում էր հեղուկի մեջ, որի տեսակարար կշիռը հավասար էր մարդկային մարմնի տեսակարար կշռին։ Այդ փորձերը թույլ տվեցին պատկերացում կազմել օրգանիզմի ֆունկցիաների մասին անկշռության վիճակի մոտավոր պայմաններում, երբ բացառվում էր ռեցեպտորական նյարդային սարքերի մի մասի գործունեությունը։

Անկշռության ուսումնասիրման գործում էական առաջխաղացում էին ինքնաթիռներում անցկացրած փորձերը։ Պարաբոլով արագային ինքնաթիռի թռիչքի ժամանակ զարգացող կենտրոնախույս ուժը հավասարակշռում է ծանրու-



թյան ուժը։ Այդ պայմաններում կարելի է ստանալ մինչև 40—50 վայրկյան տևողության անկշռություն։

Ինքնաթիռներում էքսպերիմենտները թույլ տվեցին պատասխանել այդ արտասովոր վիճակի սուբյեկտիվ փոխանցելիության, սիրտ-անոթային սիստեմի կողմից հակազդեցության, տարածության մեջ կողմնորոշման, շարժումների կոորդինացման և մի քանի ուրիշ հարցերին։

Միաժամանակ պարզվեց, որ սիրտ-անոթային և շնչառության սիստեմների ֆունկցիայի կողմից էական փոփոխումներ չեն ստացվում՝ պուլսի և շնչառության հաճախականությունն ու ռիթմիկությունը, զարկերակային ճնշումը, էլեկտրակարդիոգրաման մնում են նորմայից առանց էական շեղումների։ Անկշռությունը նկատելի չափով չի անդրադառնում լսողության և տեսողության վրա։ Բաց աչքերի դեպքում տարածության մեջ կողմնորոշումը և շարժումների կոորդինացումը նույնպես զգալի փոփոխություններ չեն կրում։ Դա երևում է այն բանից, որ փորձարկվողները կարողանում էին կատարել բավական նուրբ շարժումներ, ինչպես, օրինակ, գրանցումներ անել մատյաններում, հեռագրական բանալիով աշխատել և այլն։ Ինչ վերաբերում է սուբյեկտիվ զգացողություններին, ապա նրանք տարբեր էին։ Ոմանք անկշռության պայմաններում իրենց շատ լավ էին զգում, մյուսներն ունենում էին մի շարք անախորժ ապրումներ և զգացողություններ։ Դրանք արտահայտվում էին սրտախառնոցի, գլխապտույտների երևան գալում, կողմնորոշման պտտման զգացողության և այլնի կորստում։ Ճիշտ է, մի շարք անձանց մոտ կրկնվող թռիչքների ժամանակ զարգանում էր հարմարվողությունը, որը վկայում է անկշռությանը վարժվելու հնարավորության մասին։ Դա շատ կարևոր փաստ է։

Այսպիսով, ինքնաթիռներով կատարած փորձերը օգնեցին շատ բան պարզելու։ Սակայն այդ բոլորը կարող էր արդարացի համարվել անկշռության ազդեցության համեմատաբար կարճ ժամկետի համար։ Դրա հետ միասին պարզ էր, որ ժամանակի գործոնին պետք է պատկանի էական դեր։ Բազմաթիվ շատ կարևոր հարցեր չէին կարող նույնիսկ դրվել ինքնաթիռներում էքսպերիմենտների միջոցով լուծելու համար։ Ուստի տիեզերական թռիչքի այդ յուրահատուկ գործոնի ուսումնասիրման գործում հետևյալ էտապը հանդիսանում էին հրթիռներում, իսկ ավելի ուշ արբանյակներում տեղավորվող զանազան տեսակի կենդանիների՝ մկների, առնետների, շների հետազոտությունները։ Մի շարք էքսպերիմենտներում անկշռության պայմաններում կենդանիների գտնվելու տևողությունը գերազանցում էր 24 ժամից և այնուամենայնիվ չի նշվել որևէ արտահայտված անբարենպաստ ազդեցություն կենդանիների ֆիզիոլոգիական ֆունկցիաների կամ կենսագործունեության վիճակի վրա։ Այդ էքսպերիմենտների դրական արդյունքները թույլ տվեցին հանգել այն եզրակացության, որ մի քանի ժամ (մինչև 24 ժամ) տևող անկշռությունը վտանգավոր չի լինի մարդու կյանքի և առողջության համար։

1961 թվականի ապրիլի 12-ին տիեզերական թռիչք կատարեց Յու. Ա. Գագարինը։ Ուղեծիր դուրս գալուց հետո նա մոտ մի ժամ գտնվում էր անկշռության վիճակում։ Յու. Ա. Գագարինը ոչ մի առանձին անախորժ հետևանք չնշեց։ Առանց որևէ հատուկ դժվարության նա ընդունում էր սնունդը, գրում, վարում էր անհրաժեշտ դիտումները։ Դրանք աշխարհում առաջին տիեզերագնացի չափազանց կարևոր դիտումներն էին։

Բայց տիեզերական թռիչքները կարող են տևել շաբաթներ, ամիսներ և

տարիներ։ Անհրաժեշտ էր այդ պրոբլեմի, ինչպես նաև երկարատև տիեզերական թռիչքի ժամանակ մարդու ողջ կենսական ցիկլի հետագա ուսումնասիրությունը։

«Վոստոկ—2» տիեզերանավի բժշկական հետազոտությունների ընդարձակ ծրագիրը ընդգրկում էր իր մեջ տիեզերանավի պայմաններում մարդու կյանքի օրական ցիկլի առանձնահատկությունների ուսումնասիրումը և երկարատև անկշռության պայմաններում տիեզերագնացի աշխատունակության հետազոտությունը։

Այդ ծրագրի իրացման համար օգտագործվեցին ինֆորմացիայի ստացման բազմազան մեթոդներ։ Այդ ինֆորմացիան ռադիոյով հաղորդվում էր Երկրին և մշակվում։ Ընդ որում օգտագործվում էին ոչ միայն սուբյեկտիվ զգացողությունների և ապրումների գնահատականները, որոնք տիեզերագնացի կողմից հաղորդվում էին նավի բորտից, այլև ավտոմատիկ կերպով գրանցվող օբյեկտիվ ցուցանիշները։

Առաջին դեպքում ինֆորմացիան տրվում էր երկկողմանի ռադիոհեռախոսային հարմարանքի սիստեմով, ինչպես նաև որոշակի ձևով ամփոփագրերի հաղորդումներով։ Երկրորդ դեպքում օգտագործվում էին հեռուստատեսության և տելեմետրիայի սիստեմները։ Ներկայումս այդ ամբողջ ինֆորմացիան ուսումնասիրվում և մշակվում է։

## ՃԱՌԱԳԱՅԹՄԱՆ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ԱՊԱՀՈՎՈՒՄԸ

Յու. Ա. Գագարինի և Գ. Ս. Տիտովի թռիչքներին նախորդած տիեզերական նավ-արբանյակներում իրականացվեց կենսաբանական էքսպերիմենտների ընդարձակ ծրագիր։ Նրանք թույլ տվեցին գալ այն եզրակացության, որ համանման պայմաններում մարդու թռիչքը հնարավոր և անվտանգ է առողջության համար։ Մասնավորապես, այդպիսի թռիչքը անվտանգ է ռադիոլոգիական տեսակետից։ Սակայն տիեզերական ճառագայթման հնարավոր կենսաբանական ազդեցության հետ կապված ոչ բոլոր հարցերը կարելի է լուծված համարել։ Այդ տեսակետից հատուկ ուշադրություն են պահանջում բռնկումները Արեգակի վրա։ Արեգակնային որոշ բռնկումներ ուղեկցվում են տիեզերական ճառագայթման ինտենսիվության խիստ մեծացմամբ, նրա որակական և քանակական բաղադրության փոփոխմամբ և կարող են վտանգ ներկայացնել նավում գտնվող տիեզերագնացի համար։ Ներկայումս դեռ անբավարար կերպով են ուսումնասիրված այդպիսի բռնկումների հայտնվելու օրինաչափությունները և նրանց կանխատեսումը դժվար խնդիր է հանդիսանում։

Գ. Ս. Տիտովի թռիչքի ճառագայթման անվտանգությունը ապահովելու համար մշակվել և կատարվել էր մթնոլորտի վերին շերտերում արեգակնային ակտիվությանը հետևելու և տիեզերական ճառագայթումն անմիջապես չափելու միջոցառումների ծրագիրը։

Արձակմանը նախորդած ժամանակաշրջանում և ողջ թռիչքի ընթացքում աստղադիտարանների լայն ցանցը իրագործում էր Արեգակի կանոնավոր դիտումները, օգտագործելով մի շարք հատուկ մեթոդներ, որոնք թույլ են տալիս մեծ հավանականությամբ նախագուշակել արեգակնային ակտիվության բարձրացումն ու բռնկումները։ Այդ նույն ժամանակ Սովետական Միության զանազան մասերում, մասնավորապես բևեռային լայնություններում, սիստեմատիկ



կերպով իրագործվում էին օդապարուկ-զոնդերի արձակումները, կատարելով ստրատոսֆերայում տիեզերական ճառագայթման ինտենսիվության անմիջական գրանցումը։ Այդ բոլոր մեթոդներով ստացվող ինֆորմացիան անհապաղ մշակվում էր և օպերատիվ կերպով հաղորդվում թռիչքի ղեկավարությանը։ Թռիչքի սկզբի և նրա հետագա ծրագրի մասին որոշումները ընդունվում էին այդ ինֆորմացիան հաշվի առնելով։

«Վոստոկ—2» նավի արձակմանը անմիջականորեն նախորդած ժամանակաշրջանում, ինչպես նաև ողջ թռիչքի ընթացքում արեգակնային ակտիվությունը գտնվում էր նորմայի սահմաններում։ Ստրատոսֆերայում տիեզերական ճառագայթման ինտենսիվությունը, որ չափվում է օդապարուկ-զոնդերի օգնությամբ, նույնպես ամբողջ ժամանակ նորմայումն էր։ Ռադիոլոգիական տեսակետից թռիչքը ընթանում էր բարենպաստ պայմաններում։

## ԻՆՉՊԵՍ ԷՐ ԸՆԹԱՆՈՒՄ ԹՌԻՉՔԸ

Կարելի է համարել, որ տիեզերական թռիչքի գործոնների առանձնահատուկ ազդեցությունը փաստորեն «սկսվում է» նավի խցիկի մեջ նստելու և դռնակը փակելու պահից։ Տիեզերագնացը մնաց մենակ, նա մեկուսացված է։ Ճիշտ է, տվյալ դեպքում մեկուսացումը թերի է, քանի որ Գ. Ս. Տիտովը անընդհատ կապ էր պահպանում կառավարման հրամանակայանի հետ։ Այդ ժամանակ նշվել էին փոքր տատանումներ շնչառության հաճախականության մեջ և սրտի կծկումների ավելացում մեկ րոպեում մինչև 90—106 զարկ։ Ստարտից մեկ րոպե առաջ պուլսի հաճախականությունը հասնում էր մեկ րոպեում 120 զարկի։ Անկասկած է, որ նշված փոփոխումներն ունեին էմոցիոնալ ծագում։

Ինչպես հայտնի է, հրթիռի թռիչքի սկսվելու պահից օրգանիզմը ենթարկվում է աստիճանաբար գերբեռնավորումների աճող ներգործությանը, որոնք կարող են առաջացնել նկատելի ֆիզիոլոգիական տեղաշարժեր մի շարք օրգանների և սիստեմների կողմից։ Անհրաժեշտ է նշել, որ ինչպես Յու. Ա. Գագարինի, այնպես էլ Գ. Ս. Տիտովի մոտ սուբյեկտիվ և օբյեկտիվ տվյալներով մինչև ուղեծիր դուրս գալը թռիչքի ակտիվ տեղամասը անցավ առանց որևէ անախորժ հետևանքների։

Օգոստոսի 11-ին պրեսկոնֆերանսում Գ. Ս. Տիտովը նշեց. «դուրս բերման տեղամասում գերբեռնումները, աղմուկն ու թրթռումները ես լավ տարա և առանց անախորժ զգացողությունների։ Դուրս բերման տեղամասում կատարում էի դիտումներ լուսանցույցներից և հետևում սարքերին, երկկողմանի ռադիոկապ պահպանում Երկրի հետ»։ Ճիշտ է, հարկավոր է նշել, որ չնայած տիեզերագնացի այդքան լավ ընդհանուր սուբյեկտիվ վիճակին, նրա մոտ նկատվում էր պուլսի որոշ ավելացում, որը մեկ րոպեում հասնում էր 118—134 զարկի։

Նշված փոփոխումները սրտի կծկումների ու շնչառության հաճախականության կողմից պայմանավորված էին թռիչքի գործոնների ողջ կոմպլեքսի ներգործությամբ (աղմուկ, թրթռումներ, գերբեռնավորումներ), ներառյալ այդպիսի թռիչքի համար բնական էմոցիոնալ լարումը։

Սակայն այդ փոփոխումները դուրս չէին գալիս այն փոփոխումների սահմաններից, որոնք Գ. Ս. Տիտովի մոտ նկատվում էին նախապատրաստական շրջանում մարզումների ժամանակ, օրինակ, ցենտրիֆուգի վրա։

Ուղեծիր դուրս գալուց և շարժիչներն անջատելուց հետո դադարեց աղմուկի, թրթռումների և գերբեռնավորումների ազդեցությունը՝ սկսվեց անկշռության վիճակը։ Առաջին տպավորությունը, Գ. Ս. Տիտովի ասելով, օրիգինալ էր. նրան թվում էր, որ ինքը թռչում է դեպի վեր ոտքերով։ Բայց շուտով, մի քանի վայրկյանից հետո, այդ զգացողությունը անհայտացավ։

Տիեզերագնացը կապի մեջ մտավ Երկրի հետ, տեղեկություններ հաղորդեց ինքնազգացողության և ապարատուրայի աշխատանքի մասին, դիտումներ էր կատարում լուսանցույցներից։

Երբ նավը մտավ Երկրի ստվերի մեջ, տիեզերագնացը դիտում էր նրա մակերևույթը։

Թռիչքի ծրագրին համապատասխան Մոսկվայի ժամանակով ժամը 10-ին Գ. Ս. Տիտովը միացրեց նավի ձեռքով կառավարումը։ Կատարեց նավի ձեռքով կողմնորոշումը և մի շարք այլ մանևրներ, որոնք անհրաժեշտ էին գիտական չափումների համար։ Նրա եզրակացության համաձայն ձեռքով կառավարումը թույլ է տալիս լիովին կատարել բոլոր անհրաժեշտ մանևրները, կառավարման ապարատուրան աշխատում էր հստակ կերպով առանց որևէ շեղման։ Երկրորդ անգամ Գ. Ս. Տիտովը միացրեց ձեռքով կառավարումը յոթերորդ պտույտին։

Երկրորդ պտույտի սկզբին տիեզերագնացը անցավ կինոնկարահանման։ Կինոնկարահանումն ու դիտումները կատարվում էին նաև հետո, կարճ սեանսներով ողջ թռիչքի ընթացքում։ Կինոժապավենի ամբողջ պաշարը ծախսվեց։ Նկարահանման արդյունքները ներկայացնում են որոշակի գիտական հետաքրքրություն։

Երկրի մակերևույթը դիտելիս կարելի էր տարբերել գետերը, լճերը, դաշտերը։ Լավ էին երևում ամպերը։ Նրանց հեշտ է տարբերել ձյունից այն ստվերով, որ նրանք գցում են Երկրի մակերևույթի վրա։ Երկրի հորիզոնը շրջապատված է երկնագույն լուսապսակով։ Երկրի ստվերից տիեզերանավի դուրս գալու ժամանակ հորիզոնը դիտվում է վառ նարնջագույն մանգաղի ձևով։

Թռիչքի ծրագրին համապատասխան տիեզերագնաց Գ. Ս. Տիտովը ռադիոկապ էր պահպանում կարճ և ուլտրակարճ ալիքներով, ընդունում վերերկրյա ռադիոհաղորդումները լայնահաղորդ ընդունիչի օգնությամբ, գրանցումներ անում բորտմատյանում և մագնիտոֆոնով։

Ողջ թռիչքի ընթացքում իրագործվում էր տիեզերագնացի երկկողմանի հուսալի կապը Երկրի հետ։

Երկրորդ պտույտի սկզբին Գ. Ս. Տիտովը զեկուցեց ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեին, Սովետական կառավարությանը, ընկեր Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին թռիչքի ընթացքի մասին։ Ստացավ ընկեր Ն. Ս. Խրուշչովի պատասխան հեռագիրը։

Թռիչքի ժամանակ տիեզերագնացը ողջույններ էր հաղորդում մոսկվացիներին, Սովետական Միության, Եվրոպայի, Ասիայի, Աֆրիկայի, Հյուսիսային ու Հարավային Ամերիկայի և Ավստրալիայի ժողովուրդներին։

Երրորդ պտույտին տիեզերագնացը ճաշեց, իսկ վեցերորդ պտույտին ընթրեց, կատարեց ֆիզիկական լիցք և այլն։

Անկշռությունը տիեզերագնացին չխանգարեց իրագործել նաև բոլոր անհրաժեշտ բնական պահանջները՝ սնունդ ընդունել, օգտվել կենսագործունեության պրոդուկտների հեռացման սիստեմից և նույնիսկ քնել։ Ճիշտ է, քունը,



հատկապես սկզբում, անհանգիստ էր, իսկ ախորժակը՝ շատ ցածր։ Կարելի է կարծել, որ ինչպես ախորժակի ցածրացումը, այնպես էլ տիեզերագնացի մոտ նկատվող թեթև գլխապտույտը և սրտի խառնոցը պայմանավորված էին անկշռության ազդեցության տակ վեստիբուլյար ապարատի արտասովոր գրգռմամբ։ Կարևոր է ընդգծել, որ փոփոխումների նշված հատկանիշները վեստիբուլյար ապարատի կողմից գրեթե լիովին անցնում էին, հենց որ տիեզերագնացը ընդունում էր սկզբնական հավաքված կեցվածքը և գլխով խիստ շարժումներ չէր անում։ Նշված երևույթները զգալի չափով պակասեցին քնելուց հետո և լիովին անհետացան գերբեռնավորումների ազդեցության սկսվելուց հետո, երբ նավը վերադառնում էր Երկիր։

Պետք է նշել, որ ուղեծիրային թռիչքի ժամանակ արթուն կենալու շրջանում Գ. Ս. Տիտովի մոտ պուլսը տատանվում էր մեկ րոպեում 80 մինչև 100 զարկի սահմաններում, որը փոքր ինչ գերազանցում էր սկզբնական ցուցանիշներից, իսկ քնի վիճակում պուլսն իջավ մինչև 54—56 զարկի և համապատասխանում էր վերերկրյա պայմաններին։ Ուղեծիրով ողջ թռիչքի ընթացքում էլեկտրակարդիոգրամի ձևն ու տարրերը որևէ էական փոփոխություններ չկրեցին։

Անկշռության պայմաններում Գ. Ս. Տիտովի երկարատև գտնվելը լավ անցավ և որևէ պատալոգիական խանգարում չառաջացրեց։ Նշվում էին միայն վեստիբուլյար ապարատի կողմից որոշ փոփոխումներ, որոնք չանդրադարձան տիեզերագնացի աշխատունակության վրա։ Առաջիկա հետազոտություններում անհրաժեշտ է պարզել, թե վեստիբուլյար ապարատի կողմից տիեզերագնացի միջոցով նշված ռեակցիաները հանդիսանում են արդյոք անհատական բարձր զգայնության հետևանք կամ թե անկշռության պայմաններում հաճախ ուղեկցելու են տիեզերագնացին։

Վերջին դեպքում կարող է նավում արհեստական ծանրություն ստեղծելու անհրաժեշտություն ծագել, որը կարող է իրագործվել հատուկ տեխնիկական միջոցներով։

«Վոստոկ—2» նավի կենսապահպանման բոլոր սիստեմները աշխատում էին նորմալ կերպով։ Ոչ մի խանգարում մթնոլորտի բաղադրության, ճնշման և ջերմափոխանակման կողմից չէր նկատվում։ Տիեզերագնացը ինքնուրույն կերպով կարգավորում էր խցիկի ջերմաստիճանը։ Ստացված տվյալների համաձայն այն տատանվում էր 10 մինչև 25° C.։ Օդի խոնավությունը 50—70 տոկոս էր։

Թռիչքի ծրագրին համապատասխան 1961 թ. օգոստոսի 7-ին հաշվարկային ժամանակի մեջ մտցվեցին կողմնորոշման ավտոմատիկ սիստեմը և ավտոմատիկան, որն ապահովում է նավի վայրէջքը և գետին իջնելը։ Երկրի ստվերից նավի դուրս գալուց հետո իրագործվեց հետախուզումը և նավի կողմնորոշումը Արեգակի նկատմամբ։ Այնուհետև հատուկ հրամանով սկսվեց ապարատուրայի նախապատրաստումը արգելակային շարժիչ տեղակայման միացման համար և, վերջապես, միացվեց արգելակային շարժիչը. նավը փոխադրվեց վայրէջքի հետագծի վրա։ Գ. Ս. Տիտովը Երկրին տալիս էր տեղեկություններ բոլոր հրամանների անցման մասին և հաղորդումներ թռիչքի ընթացքի մասին։

Կատարելով տասնյոթ պտույտ Երկրի շուրջը, «Վոստոկ—2» արբանյակ-նավը և օդաչու մայոր Գ. Ս. Տիտովը գետին իջան առաջադրված շրջանում։

Դա տեղի ունեցավ Մոսկվայի ժամանակով ժամը 10 անց 18 րոպեին Սարատովի մարզի Կրասնի Կուտ ավանի շրջանում։

Մինչև այժմ ստացված բոլոր օբյեկտիվ տվյալների համաձայն և Գ. Ս. Տիտովի սուբյեկտիվ զգացողությունների հիման վրա նրա աշխատունակությունը պահպանվել է բավականին բարձր մակարդակի վրա ողջ թռիչքի ընթացքում։

Գ. Ս. Տիտովի արտահայտումների և եղած տվյալների համաձայն, նավի արգելակման պահին անցումը անկշռության վիճակից դեպի գերբեռնավորումները սահուն էր և առաջ չբերեց որևէ անախորժ հետևանք ու ֆունկցիոնալ խախտում։ Վայրէջքը հաջող անցավ։ Տիեզերագնացի ինքնազգացողությունը ամբողջ ժամանակ մնում էր գերազանց, իսկ տրամադրությունը՝ աշխույժ։ Ոչ մի պաթոլոգիական հետևանքներ չգրանցվեցին։ Այսպիսով, «Վոստոկ—2» նավով Գ. Ս. Տիտովի թռիչքի հիմնական և ամենակարևոր արդյունքը հանդիսանում է այն, որ ապացուցվեց մարդու աշխատունակության լրիվ պահպանումը տիեզերքում ընդամենը 25 ժամ գտնվելու ընթացքում։

Թռիչքից հետո հետազոտության ժամանակ տիեզերագնացի առողջության վիճակում շեղումներ չեն հայտնաբերվել։

***

Տիեզերագնաց Գ. Ս. Տիտովը կատարեց մեծագույն սխրագործություն։ Այդ սխրագործության մեջ անդրադարձվել են Սովետական Միության, մեր գիտության և տեխնիկայի, ողջ ժողովրդական տնտեսության նոր, հսկայական նվաճումները, մարմնավորվել են աշխարհում ամենից առաջավոր սոցիալիստական հասարակարգի մեծ առավելությունները։

Գիտնականների, կոնստրուկտորների, ինժեներների, տեխնիկների, բանվորների կոլեկտիվները, որոնց անձնազոհ աշխատանքն ապահովեց «Վոստոկ—2» տիեզերանավի հաջող արձակումը, այդ թռիչքը նվիրեցին Սովետական Միության հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարին։

Տիեզերքի հետազոտության գործում ձեռք բերած նվաճումները Սովետական Միությունը ծառայեցնում է խաղաղությանը, գիտական առաջադիմությանը, մեր մոլորակի բոլոր մարդկանց բարօրությանը։

«Պրավդա», 1961 թ. սեպտեմբերի 8։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՖՈՐՊՈՍՏԸ ԵՎՐՈՊԱՅՈՒՄ




Հիտլերյան Գերմանիայի դեմ Սովետական Միության և նրա դաշնակիցների տարած վճռական հաղթանակի շնորհիվ զարգացման լայն հեռանկարներ բացվեցին գերմանական ժողովրդի առջև։ Պոտսդամի համաձայնագրով սահմանվեցին հետպատերազմյան Գերմանիայի զարգացման միջազգային—իրավական բնկղբունքները։ Այն նախատեսում էր վճռականորեն արմատախիլ անել գերմանական միլիտարիզմն ու ֆաշիզմը, «որպեսզի Գերմանիան այլևս երբեք չսպառնա իր հարևաններին կամ ամբողջ աշխարհում խաղաղության պահպանմանը». դաշնակիցները երաշխավորեցին գերմանական ժողովրդի ազգային ինքնուրույն գոյությունը և հանդիսավոր կերպով պարտավորվեցին՝ հնարավորություն տալ գերմանացիներին «դեմոկրատական ու խաղաղության հիմքի վրա իրագործելու իրենց կյանքի վերափոխումը»։ Միաժամանակ այդ համաձայնագրով որոշվեցին հետպատերազմյան Գերմանիայի սահմանները։ Դրանով իսկ իրավական կայուն հիմք ստեղծվեց Գերմանիայի վերածննդի համար՝ որպես միասնական, անկախ, խաղաղասեր ու դեմոկրատական պետություն։

Օգտագործելով ընձեռված հնարավորությունները, Արևելյան Գերմանիայում ոչնչացվեցին միլիտարիզմի և ֆաշիզմի սոցիալ—տնտեսական, քաղաքական հիմքերը, հաստատվեցին հակաֆաշիստական-դեմոկրատական կարգեր։ Հաղթահարվեց բանվոր դասակարգի պառակտումը, Գերմանիայի Միասնական Սոցիալիստական պարտիայի մեջ միավորվեցին կոմունիստական և սոցիալ-դեմոկրատական պարտիաները։ Ագրարային ռեֆորմի իրագործումով վերջ տրվեց յունկերների դարավոր տիրապետությանը, խոշոր կալվածքները հանձնվեցին աշխատավոր գյուղացիներին։ Ազգայնացվեցին պատերազմի հանցագործներին և մոնոպոլիաներին պատկանող արդյունաբերական ձեռնարկությունները, արտադրության կարևոր միջոցները դարձան համաժողովրդական սեփականություն։

Այլ կերպ դասավորվեցին գործերը Արևմտյան Գերմանիայում։ Հենց առաջին իսկ օրերից ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան բռնեցին Պոտսդամի համաձայնագրի խախտման հանցավոր ուղին. նրանց թողտվությամբ ու հովանավորությամբ պահպանվեցին արևմտագերմանական մոնոպոլիաներն ու խոշոր հողատիրությունը, անձեռնմխելի թողնվեց նրանց տնտեսական ու քաղաքական տիրապետությունը։ Ապա արևմտյան տերությունները գերմանական իմպերիալիստների հետ մեկտեղ նախապատրաստեցին Գերմանիայի պառակտումը. այդ նպատակով ամենից առաջ միավորվեց Արևմտյան Գերմանիայի ամերիկյան, անգլիական և ֆրանսիական օկուպացիոն գոտիների էկոնոմիկան, անցկացվեց վալյուտային ռեֆորմ։ Վերջապես նրանք դիմեցին Գերմանիայի ուղղակի և բացահայտ պառակտմանը. 1949 թվականի սեպտեմբերին ծնունդ առավ արևմտագերմանական սեպարատ պետությունը՝ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան (ԳՖՌ)։ Այսպիսով, ԳՖՌ-ի ստեղծմամբ և Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ ռազմական դաշինքի մեջ նրա ներգրավումով, իմպերիալիստական տերությունները միակողմանի կերպով փաստորեն պատռեցին Պոտսդամի համաձայնագիրը։

Ելնելով Բոննի սեպարատ պետության կազմավորման փաստից, գերմանական ժողովրդի հայրենասիրական ուժերը 1949 թվականի հոկտեմբերի 7-ին հռչակեցին Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան (ԳԴՌ)՝ գերմանական ժողովրդի պատմության մեջ բանվորա-գյուղացիական առաջին պետությունը։ Այդ ակտով Արևելյան Գերմանիայում ավարտվեց հակաֆաշիստական-դեմոկրատական հեղաշրջումը, խաղաղ ճանապարհով այն վերածվեց սոցիալիստական ռևոլյուցիայի։

Այսպիսով, հիտլերյան նախկին ռայխի հողի վրա կազմավորվեցին գերմանական երկու պետություն՝ տրամագծորեն իրար հակադիր սոցիալ-քաղաքական և տնտեսական սիստեմներով, իրենց ներքին ու արտաքին քաղաքականությամբ։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում սոցիալիզմի կառուցումը սկսվեց ծանր պայմաններում։ Մի կողմից՝ պատերազմի հետևանքով կազմալուծվել էր երկրի տնտեսությունը, ավերվել արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասը, մյուս կողմից՝ Գերմանիայի միասնական տնտեսական օրգանիզմի անդամահատումով խոշոր հարված էր հասցվել ԳԴՌ-ի էկոնոմիկային, այն կտրվել էր արդյունաբերության հումքի կարևոր աղբյուրներից։ Մետաղաձուլությունը, ծանր մեքենաշինությունը, ինչպես և կոքսացող



քարածխի ու երկաթահանքի հանքավայրերը համարյա ամբողջապես մնացել էին երկրի արևմուտքում։

Հարկավոր էր շուտափույթ ապաքինել պատերազմի հասցրած ծանր վերքերը, հսկայական ջանք ու եռանդ ներդնել երկրի պառակտման հետևանքով ԳԴՌ-ի ազգային էկոնոմիկայում ստեղծված անհամամասնությունը վերացնելու և ժողովրդական տնտեսությունը արագաթափ զարգացնելու համար։ Դա վերին աստիճանի դժվարին խնդիր էր։ Բայց գերմանական աշխատավորների լարված աշխատանքով և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր երկրների և, առաջին հերթին, Սովետական Միության եղբայրական անշահախնդիր օգնությամբ ու համագործակցությամբ հնարավոր եղավ ավելի բարձր տեմպերով զարգացնել արտադրողական ուժերը և մեծապես կրճատել երկրում սոցիալիզմի կառուցման ժամկետները։

Հիմք դրվեց մետաղաձուլությանը։ Եղած հին գործարանները վերականգնվեցին ու հիմնովին վերասարքավորվեցին, կառուցվեցին ժամանակակից տեխնիկայով հագեցված մի քանի խոշոր գործարաններ, դոմենյան վառարաններ։ Այդ ամենը հնարավորություն տվեցին չուգունի արտադրությունը 1936 թվականի 200 հազար տոննայից անցյալ տարի հասցնելու 2 միլիոն տոննայի, իսկ պողպատինը՝ 1,2 միլիոնից 3,3 միլիոն տոննայի։ Ռեսպուբլիկայում կան գորշ ածխի հսկայական պաշարներ և ներկայումս նրա հանույթով աշխարհում ԳԴՌ-ն գրավում է առաջին տեղը. 1936 թվականի համեմատությամբ ածխի արտադրությունն ավելացել է ավելի քան երկու, իսկ ցեմենտինը՝ շուրջ երեք անգամ։

Սոցիալիստական շինարարության տարիներին փաստորեն նոր ստեղծվեց ծանր մեքենաշինությունը, որը ներկայումս հանդիսանում է ռեսպուբլիկայի արդյունաբերության միջուկը։ Միայն առաջին հնգամյակում (1951—1955 թթ.) այստեղ կառուցվել ու ընդլայնվել է 28 մեքենաշինական գործարան։ Մագդեբուրգը դարձել է ծանր մեքենաշինության խոշոր կենտրոն, մեքենաշինական կարևոր ձեռնարկություններ կան Բեռլինում, Լայպցիգում և ուրիշ քաղաքներում։ Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման հիման վրա ԳԴՌ-ն մասնագիտացել է ճշգրիտ մեխանիկայի, մետաղաձուլական և էներգետիկ սարքավորումների, մետաղահատ հաստոցների, մամլիչների, դրոշմոցների, կռանների, օպտիկայի արտադրության մեջ։ Մեծ զարգացման է հասել պոլիգրաֆիական, տեքստիլ, դեղագործական և նավաշինական արդյունաբերությունը։

Գորշ ածխի, կալիական աղերի և Սովետական Միությունից ներմուծվող նավթի բազայի վրա ստեղծվել է քիմիական հզոր արդյունաբերություն (պլաստմասսա, արհեստական և սինթետիկ թելեր, կաշվի փոխարինիչներ, պարարտանյութեր և այլն)։ Ռեսպուբլիկայի սահմաններից դուրս հայտնի է «Լեյնե-Վերկե» քիմիական գիգանտ գործարանի արտադրանքը։ Ներկայումս ԳԴՌ-ն քիմիական արտադրանքի ընդհանուր ծավալով աշխարհում գրավում է VII, իսկ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքով՝ ԱՄՆ-ից հետո երկրորդ տեղը. արհեստական թելի արտադրանքով նա առաջինն է աշխարհում։

էլեկտրաէներգիայի հարաճուն զարգացման մասին են խոսում հետևյալ թվերը։ Եթե 1936 թվականին ԳԴՌ-ի ներկայիս տերիտորիայում արտադրվել է 14 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1960 թվականին այն հասավ 40,3 միլիարդի։ Ներկայումս բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրա-

քի պաշտպանը Արևելքից եկող այն հզոր ազդեցության դեմ, որ ներգործում է բոլորիս վրա»։ Դա բառացիորեն հենց նույն փաստարկն է, որի օգնությամբ Հիտլերը գերմանական ժողովրդին ներքաշեց ավազակային պատերազմի հորձանուտը։ Բայց նոր ագրեսիայի սիրահարները մոռանում են ոչ հեռու անցյալում հակակոմունիզմի տխրահռչակ քաղաքականության խայտառակ ձախողման պատմական դասերը։

Արևմտագերմանական իմպերիալիզմը հանդիսանում է Եվրոպայում խաղաղության գործի գլխավոր վտանգը։ Վերջին տասնամյակում միայն պաշտոնական, բացահայտորեն ոչ լրիվ տվյալների համաձայն, Բոննի կառավարությունը ռազմական նպատակների վրա ծախսել է մոտավորապես այնքան, որքան Հիտլերը ծախսել էր 1933 թվականից մինչև երկրորդ համաշխարհային պատերազմի սկիզբն ընկած ժամանակաշրջանում։ Ստեղծված է մասսայական բանակ (բունդեսվեր)՝ հիտլերյան նախկին գեներալների գլխավորությամբ. 1960 թվականի երկրորդ կեսից բունդեսվերը պաշտոնապես ձեռնամուխ եղավ ատոմային զենքով սպառազինմանը։

Բոննի ռևանշիստների բաղձանքները համընկնում են արևմտյան տերությունների և, առաջին հերթին, ամերիկյան իմպերիալիստների ձգտումներին, որոնք Արևմտյան Գերմանիայի նյութական ու մարդկային ուժերի մոբիլիզացմամբ ցանկանում են պատերազմ սանձազերծել սոցիալիզմի համաշխարհային լագերի երկրների դեմ, նորագույն տեխնիկայով զինված բունդեսվերը վերածել իրենց ագրեսիվ զավերի հարվածային բռունցքը։ «Նյու-Յորք թայմս» թերթը արտահայտելով ամերիկյան ագրեսիվ շրջանների տրամադրությունները, գրել է. «Գերմանացիները լավ ռազմիկներ են. եթե ԱՄՆ-ը ներքաշվեն պատերազմի մեջ, մեզ անհրաժեշտ կլինեն զինվորներ։ Այդ պատերազմում մենք ցանկանում ենք մեր կողմում ունենալ գերմանացիներին»։

Այդ նույն նպատակով ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան զինել ու զինում են բունդեսվերը, Արևմտյան Գերմանիայում կենտրոնացրել են մեծ քանակությամբ զորք ու ռազմական տեխնիկա և գնալով ավելի ու ավելի Հյուսիս- Ատլանտյան ռազմական բլոկում (ՆԱՏՕ) մեծ տեղ են հատկացնում արևմտագերմանական ռևանշիստներին։ ՆԱՏՕ-ի ստրատեգիական պլանները մշակում է պատերազմի հանցագործ գեներալ Հոյզինգերը, որը նշանակված է Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ դաշինքի մշտական ռազմական կոմիտեի նախագահ, Կենտրոնական Եվրոպայում ՆԱՏՕ-ի ցամաքային զորքերը գտնվում են գեներալ Շպայդելի հրամանատարության տակ. դանիական ռազմա-ծովային ուժերը ենթարկվում են արևմտագերմանական հրամանատարությանը և այլն։ Դաշինքի մասնակիցների մեջ գերմանական ռևանշիստները Եվրոպայի մայր ցամաքում ունեն ամենաբազմամարդ բանակը և արդեն իշխում են ՆԱՏՕ-ում։

Բայց արևմտագերմանական միլիտարիստները փայփայում են ավելի հեռուն տանող նպատակներ. նրանք ձգտում են ՆԱՏՕ-ի օգնությամբ Արևմտյան Եվրոպայում հասնել ռազմական, տնտեսական և քաղաքական լիակատար տիրապետության։ Մասնավոր զրույցներից մեկի ժամանակ ԳՖՌ-ի պաշտպանության մինիստր Շտրաուսը լկտիորեն ասել է. «Սկզբում մենք ՆԱՏՕ-ի մեջ կներդնենք մեր ռազմական լուման։ Սակայն, երբ բունդեսվերը կհասցվի պատրաստ վիճակի, այն ժամանակ մենք Մոսկվայի անուղեղ հետևորդների և լարվածության մեղմացման առաքյալների հետ կխոսենք իսկական գերմաներեն լեզվով և ցույց կտանք նրանց, թե ով է ՆԱՏՕ-ի փաստացի ղեկավարը»։



Արևմտյան Գերմանիան վերածվում է նոր պատերազմի վտանգավոր օջախի, սպառնալով խաղաղության գործին։ Ահա թե ինչու հարկավոր է փակել արևմտագերմանական իմպերիալիզմի ճանապարհը՝ առաջին հերթին վերացնել երկրորդ համաշխարհային պատերազմի մնացորդները, հաշտության պայմանագիր կնքել Գերմանիայի հետ և այդ հիման վրա լուծել Արևմտյան Բեռլինի հարցը։ Դա կզրկեր ռևանշիստական շրջաններին, այսպես ասած, երկրորդ համաշխարհային պատերազմի արդյունքները վերանայելու համար նոր պատերազմ սկսելու հնարավորությունից և գայթակղությունից, ուղիներ կմաքրեր Եվրոպայում խաղաղության հաստատման և խաղաղ գոյակցության համար։

Տարիներ շարունակ արևմտյան տերությունները խուսափում են Գերմանիայի հետ խաղաղ կարգավորումից, մերժում են հաշտության պայմանագրի նախապատրաստության վերաբերյալ Սովետական Միության կողմից բազմիցս արված առաջարկությունները։ Նման պայմաններում հաշտության պայմանագրի կնքումը հետաձգելը կնշանակեր խրախուսել ագրեսիվ ուժերին, նահանջել նրանց ճնշման տակ. դա թույլ կտա արևմտագերմանական ռևանշիստներին կազմելու նորանոր դիվիզիաներ, դրանք հագեցնելու ատոմային և ջերմամիջուկային զենքով։

Գերմանիայի հետ հաշտության պայմանագիրը պետք է կնքվի անհապաղ։ Այդ են պահանջում խաղաղության պահպանման ու ժողովուրդների անվտանգության շահերը։ Ելնելով այդ, ինչպես և իր երկրի անմիջական շահերից, Սովետական Միության կառավարությունը վերջերս արևմտյան տերություններին առաջարկեց փոխադարձ համաձայնությամբ մինչև ընթացիկ տարվա վերջը կնքել հաշտության պայմանագիր։ Ի դեպ, Սովետական կառավարությունը գտնում է, որ այդ հարցը լուծելիս պետք է նկատի առնել ստեղծված ռեալ իրադրությունը, ելնել գերմանական երկու պետությունների՝ ԳԴՌ-ի և ԳՖՌ-ի գոյության ճանաչումից. հաշտության պայմանագրի կնքումով իրավաբանորեն կվավերացվեն այն սահմանները, որոնք ստեղծվել և գոյություն ունեն շատ տարիներ։ Միաժամանակ Արևմտյան Բեռլինը կստանա ապառազմականացված ազատ քաղաքի ստատուս, արտաքին աշխարհի հետ մուտքի և կոմունիկացիաների ազատություն և իր ներքին գործերին չմիջամտելու երաշխիքներ։ Սովետական կառավարությունը միաժամանակ նախազգուշացրեց, որ եթե արևմտյան տերությունները և ԳՖՌ-ն հրաժարվեն խաղաղ կարգավորումից, ապա Սովետական Միությունըստիպված կլինի մյուս այլ պետությունների հետ, որոնք այդ կցանկանան, հաշտության պայմանագիր ստորագրել Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հետ։ Դա լուրջ հարված կհասցնի արևմտագերմանական միլիտարիստների հաշիվներին ու պլաններին։

Սովետական կառավարության առաջարկներն ըմբռնում և պաշտպանություն են գտնում համաշխարհային հասարակության լայն շրջաններում։ Սակայն խաղաղասիրական այդ քայլերին արևմտյան տերությունների կառավարությունները պատասխանեցին պատերազմական հիստերիայի նոր նոպայով, և զենքի ճռճռոցով։ Զունկնդրելով բանականության ձայնին, ագրեսիվ դաշինքի մասնակիցները ուժեղացնում են ռազմական պատրաստությունները, ավելացնում են ռազմական հատկացումները և զինված ուժերի թիվը։

Այսօր չկա ավելի սուր և ավելի կարևոր պրոբլեմ, քան Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի կնքումը. դա է գլխավոր պրոբլեմը։ Բայց իմպերիալիստները աղմուկ-աղաղակ են բարձրացրել Արևմտյան Բեռլինի շուրջը,

հարց, որը Գերմանիայի հետ խաղաղ կարգավորման ընդհանուր պրոբլեմի մի մասն է միայն։ Այդ միլիտարիստական աղմուկը նրանց պետք է հասարակայնության ուշադրությունը շեղելու գլխավոր խնդրից, սաստկացնելու միջազգային լարվածությունը, ավելի սրելու դրությունը։

Արևմտյան Բեռլինը, որը գտնվում է ԳԴՌ-ի տերիտորիայում, դարձել է ռեսպուբլիկայի առողջ մարմնի վրա քաղցկեղային ուռուցք։ Արևմտյան իմպերիալիստական պետությունները և արևմտագերմանական ռևանշիստներն այն վերածել են ռազմա-ստրատեգիական լագերի, ԳԴՌ-ի, Սովետական Միության և սոցիալիստական երկրների դեմ ուղղված դիվերսիոն, լրտեսական քայքայիչ գործունեության որջի։ Եվ բոլորովին էլ պատահական չէ, որ Բոննի ռևանշիստները Արևմտյան Բեռլինը հայտարարում են ճակատային քաղաք։ Քայքայիչ գործունեության ճանապարհը փակելու նպատակով ԳԴՌ-ի կառավարությունը հարկադրված եղավ դիմելու պաշտպանական մի շարք միջոցառումների՝ օգոստոսի 13-ից ռեսպուբլիկայի սահմաններում, ներառյալ Մեծ Բեռլինի արևմտյան հատվածներին հարող սահմանում մտցվեց վերահսկողություն։ Փակվեցին դիվերսիայի ու լրտեսության սողանցքները՝ արևմտյան և դեմոկրատական Բեռլինի միջև մինչև այդ եղած 81 անցումների փոխարեն թողնվեց միայն յոթը, այն էլ իշխանությունների խիստ վերահսկողության տակ։ Դա պատերազմական հիստերիայի նոր պոռթկում առաջ բերեց իմպերիալիստների մոտ, որոնք աղմկում են, թե իբր վտանգի տակ է դրված Արևմտյան Բեռլինի գերմանացիների ազատությունը և իրենք կպատերազմեն նրանց ազատության համար։ Զավեշտական է, որ գերմանացիների «ազատության» և «ինքնորոշման» պաշտպան են կանգնում նրանց ազգային միասնության ու ազատության մոլի հակառակորդները։

Ամերիկյան իմպերիալիստները և նրանց ռազմական դաշնակիցները քաջ գիտակցում են, որ ԳԴՌ-ի հետ հաշտության պայմանագրի կնքումով ավտոմատաբար վերջ կտրվի Արևմտյան Բեռլինում նրանց օկուպացիոն ստատուսին, որի հիման վրա նրանց զորքերը գտնվում են այնտեղ, և ԳԴՌ-ին լիակատար վերահսկողություն կտրվի Արևմտյան Բեռլին տանող կոմունիկացիաների նկատմամբ։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորները զբաղված են խաղաղ ստեղծագործ աշխատանքով և սոցիալիստական երկրների եղբայրական համերաշխ մեծ ընտանիքում լուծում են կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրները։ Իրենց ընտրած ուղուց նրանց հետ չեն կարող կասեցնել իմպերիալիստների ո՛չ սուտ դավերը և ո՛չ էլ նրանց սպառնալիքները։ Նրանք ամուր և աներեր կանգնած են սոցիալիզմի և խաղաղության պահպանման առաջին շարքերում։

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԱՄԸԳՈՒՄԱՐԻՑ ՀԱՄԸԳՈՒՄԱՐ

### ԱՌԱՋԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆԸ

Ցեխի պարտկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովն եմ գնում։ Քայլում եմ գլխավոր ծառուղիով։ Չորս կողմս եմ նայում. ցեխերը չեն երևում։ Ոչինչ չի երևում կանաչախիտ ծառերի պատից այն կողմ։ Պարզ լսվում է թրջունի ճռվողյունը, նրան են միանում երկրորդը, երրորդը... Ինչ հաճելի է։ Մի պահ կանգ եմ առնում ու սպասում՝ մի զույգ լավի լորի ձայնը,—վաղուց է չեմ լսել, կարոտել եմ։ Ահա և ծաղկափթիթ վարդի թուփ։ Լսվում է սոխակի երգը զմայլիչ։ Հանկարծ լսում եմ.

— Հաճելի՞ է։

Շուռ եմ գալիս։ Թուխ ու գանգրահեր մի տղա է, բանվորական հագուստով։ Ժպտալով պատասխանում եմ նրա հարցին և իմ հերթին հարցնում.

— Ասացեք, որտե՞ղ է 1—5—6 ցեխը։

— Հըմ, դուք Ազարյանի ցեխն եք հարցնում՝ մեր առաջին կոմունիստական կոլեկտիվը,— պարծանքով արտասանում է նա և ավելացնում,— այ, այսպես ուղիղ կգնաք գլխավոր ծառուղիով, այնուհետև կշրջվեք դեպի աջ և հաջորդ ծառուղիով կգնաք համարյա մինչև վերջ...



Վ. ԱԶԱՐՅԱՆ

Քանի-քանի այդպիսի ծառուղիներ կան։ Եվ ինչպես չհիանալ. չէ՞ որ սովետական բանվորները իրենց այդ խոշորագույն ձեռնարկությունը վերածել են ծաղկող այգու, որտեղ դեկորատիվ ու պտղատու ծառերը և խաղողի վազերը շոյում են բոլորի հայացքը։

Ահա և Ազարյանի ցեխը։ Մտնում եմ կարմիր անկյունը, որը գտնվում է մի մեծ սենյակում։ Չորս կողմը պլակատներ, լոզունգներ, նկարներ, դիագրամներ են, որոնք պատմում են յոթնամյակի մասին, ցեխի կոլեկտիվի ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի մասին։ Պատերից մեկի կեսը զբաղեցնում են Վլադիմիր Իլյիչ Լենինի կյանքին ու գործունեությանը նվիրված պլակատները, իսկ նրանց վերևը ալ-կարմիր կտորի վրա գրված է՝ «Լենինն ապրել է, Լենինն ապրում է, Լենինն ապրելու է»։

Կոմունիստները հետզհետե հավաքվում են։ Նրանք 26 հոգի են։ Ժողովն սկսվում է։ Պարտբյուրոյի քարտուղար Սոս Խաչատրյանը հաշիվ է տալիս։ Այդ ժողովը շատ բանով տարբերվում է սովորական և հաշվետու-ընտրական մյուս ժողովներից։ Այն, կարծես, հանրագումարի բերող մի ժողով է, որտեղ, բնական է, հարց է ծագում, թե ի՞նչ փոփոխություններ են տեղի ունեցել ցեխի կյանքում երկու և կես տարվա ընթացքում, թեև Սոսը հաշիվ է տալիս պարտբյուրոյի 9 ամսվա գործունեության մասին։ Չէ՞ որ սպասվում է մեծ իրադարձություն պարտիայի կյանքում՝ ՍՄԿՊ XXII համագումարի հրավիրումը։ Եվ այն պահին էլ՝ 1958 թվականի վերջին ամիսներին նույնպես սպասվում էր մեծ իրադարձություն՝ պարտիայի XXI համագումարի հրավիրումը։ Համագումարից մինչև համագումար ընկած ժամանակաշրջանում ցեխն արժանացել է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման։

Սոսը հաշիվ է տալիս։ Եվ հետաքրքրական է, հետադարձ հայացք ձգել համագումարից համագումար ցեխի անցած ուղուն, նայել, թե ե՞րբ և ինչպե՞ս սկսվեց այդ ամենը, ինչպիսի՞ ուրախալի արդյունքներ կան արդեն։

Այո՛, դա 1958 թվականի աշնանն էր։ Երկրում ծավալվեց սոցիալիստական մրցություն ի պատիվ պարտիայի XXI համագումարի։ Այդ մրցության ընթացքում շուտով ծնունդ առավ կոմունիստական աշխատանքի համար ծավալվող շարժումը։ Մեծ ու համարձակ վերափոխումների էին կոչում յոթնամյա պլանի թվերը, որոնք ոգեշնչում էին սովետական մարդկանց և ցնցում ամբողջ աշխարհը։ Դրվեց բոլոր ուժերը, եռանդը և ունակությունները կոմունիզմի կառուցման գործին նվիրելու, իր ընկերների մեջ կոմունիստական հասարակության անդամի հատկություններ դաստիարակելու, անցյալից ժառանգություն մնացած հարբեցողության, խուլիգանության, զազրախոսության երևույթներին վճռականորեն վերջ տալու խնդիրը։ Ամբողջ երկրով մեկ հնչեցին երիտասարդ ձայներ՝ «գերազանց աշխատել», «գերազանց սովորել», «գերազանց պահել իրենց կենցաղում»։ Գալիքի հետախույզներ կոչեցին այդ շարժման նախաձեռնողներին։

— Իսկ մենք նրանցից ինչո՞վ ենք վատ,— հարց բարձրացրին Ազարյանի ցեխի կոմունիստները, երբ թերթերի առաջին համարներում կարդացին կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժման վերաբերյալ նյութերը։— Եկեք մրցենք ամբողջ ցեխով։

Բայց դա առաջացրեց գործարանի որոշ ղեկավարների զարմանքը։

— Դեռ շուտ չի՞ արդյոք, ընկերներ,— ասում էին նրանք,— չէ՞ որ ամենուրեք առայժմ այդ շարժմանը միայն երիտասարդներն են մասնակցում։

Կոմունիստները համառորեն պնդում էին. մի՞թե մեր կոլեկտիվի հասակավոր անդամները պետք է կողմնակի դիտողների դերում լինեն այդ մեծ շարժման մեջ, մինչև հերթը իրենց հասնի։ Նրանք արդարացի էին և նրանց նախաձեռնությամբ 1958 թվականի դեկտեմբերի առաջին կեսին ամբողջ կոլեկտիվը մտավ կոմունիստական աշխատանքի ցեխի կոչման համար ծավալվող մրցության մեջ։ Իսկ 1960 թվականի ապրիլի 15-ը անմոռանալի օր դարձավ 1—5—6 ցեխի աշխատողների համար. այդ օրը ցեխին, առաջինը գործարանում և ռեսպուբլիկայում, շնորհվեց կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչում։ Քանի-քանի անգամ այդ երկու և կես տարում ցեխի կոլեկտիվը ստանձնել է բարձր պարտականություններ, բայց ուրախալի է նշել,



որ միշտ պատվով են կատարվել այդ պարտավորությունները։ Եվ դրանում վճռական դեր են խաղացել կոմունիստները։

Սոսը հաշիվ է տալիս։ Նա օրինակներ է բերում, թե կոլեկտիվը տեխնիկա-տնտեսական ինչպիսի բարձր ցուցանիշներ է ձեռք բերել տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու, ռացիոնալիզատորական առաջարկներ արմատավորելու և տեխնիկական մի շարք միջոցառումներ կիրառելու միջոցով։ Զեկուցումը լսելիս ես միաժամանակ բաց լուսամուտից դուրս եմ նայում։ Գեղեցիկ տեսարան է. ապակե խողովակների օդային գծով հոսում է աղաթթուն։ 1—5—6 ցեխից աղաթթուն փոխադրվում է մյուս ցեխերը։ Այդ ի՞նչ գյուտ է։ Ո՞վ է նրա հեղինակը։ Դա աղաթթվի փոխադրման խողովակաշարքի գիծն է։ Մինչև այդ գործադրվող սոսնձված և ֆաոլիտային՝ խողովակները փոխարինվեցին ապակե խողովակներով։ Ռացիոնալիզատորական այդ առաջարկի արմատավորումից ստացվող տարեկան խնայողությունը կազմում է հարյուր հազար ռուբլի՝ գների հին մասշտաբով։

Ո՞րն է ապակե խողովակաշարքի առավելությունը։ Մինչև այդ կիրառվող խողովակները հաճախ շարքից դուրս էին գալիս և թե՛ աղաթթվի կորուստ էին առաջացնում, թե՛ աղտոտում ձեռնարկության տերիտորիան։ Այդ խողովակների անցքերը փակվելու հետևանքով բարձրանում էր ճնշումը աղաթթուն փոխադրող պոմպերի վրա և այդ պատճառով շարքից դուրս էին գալիս պոմպերը։ Բացի այդ ամենից, այժմ խիստ կրճատվել են նորոգման աշխատանքները։ Ցեխի պետ՝ կոմունիստ Վազգեն Ազարյանը գործարանի դիրեկտորի տեղակալ Բորիս Մկրտումյանի համագործակցությամբ, մատիտով ու թղթով զինված, ժամերով և օրերով գլուխ էին կոտրում, թե ի՞նչպես հնացած կոնստրուկցիայի խողովակները փոխարինել նոր, ավելի կատարյալ կոնստրուկցիայի խողովակներով։ Աշխատում էին նրանք լարված և հիանալի արդյունքների հասան։

Վազգեն Ազարյանը և իր տեղակալ Օնիկ Աջամյանը մտցրին ռացիոնալիզատորական մի նոր առաջարկ, որի արմատավորումից ստացվող տնտեսական արդյունքը կազմում է 120 հազար ռուբլի։ Կարիք չկա թվելու մյուսների ազգանունները։ Ցեխի կոմունիստների ճնշող մեծամասնությունը ակտիվորեն մասնակցում է տեխնիկական մտքի զարգացման համար մղվող պայքարին։ Ցեխում յուրաքանչյուր երկու աշխատողներից մեկը ռացիոնալիզատոր է։ Եվ ի՞նչ միջոցով են այդ բանին հասել։ Համառ, հաստատակամ աշխատանքով՝ բուհերում և տեխնիկումներում առանց արտադրությունից կտրվելու, ցեխին առընթեր կարճատև դասընթացներում, ընկերական փոխադարձ օգնությամբ տեխնիկական որակավորումը բարձրացնելու միջոցով։

Ջուր չի ասված, թե՝ գիտությունն ուժ է։ Ձեռք բերելով այդ ուժը, ցեխի կոլեկտիվի պարտիական և անպարտիական անդամներն իրենց առջև խնդիր դրեցին՝ ցեխի թողարկած քլորաջրածինը, աղաթթուն և քլորաբենզոլը ոչ միայն պետք է ունենան ամենաբարձր որակը Սովետական Միությունում, աշխարհում, այլև ամենացածրը պետք է լինի նրանց ինքնարժեքը։ Խնդիրը դժվարին է, բայց հաջողությամբ լուծվում է։

Ահա մի քանի պերճախոս թվեր. եթե քլորաբենզոլի 1958 թվականի ինքնարժեքն ընդունենք 100 տոկոս, ապա 1959 թվականին այն կազմում էր 97,1, իսկ 1960 թվականին՝ 94,1 տոկոս։ Անցյալ տարի ցեխի թողարկած արտադրանքի ինքնարժեքը պլանի դիմաց միջին թվով իջել է 2,1 տոկոսով։ Երկրին

տրվել է 80 հազար ռուբլու գերպլանային շահույթ։ Անընդհատ բարելավվում է քլորաբենզոլի որակը. պահանջվող 98,7 տոկոսի փոխարեն նրա մաքրությունը հասցվել է 99,6 տոկոսի։ Այս վերջին թվի նշանակությունը ճիշտ հասկանալու համար բավական է նշել, որ միայն բարձրորակ քլորաբենզոլի թողարկման հաշվին անցյալ տարի գործարանն ստացել է 14,7 հազար ռուբլու լրացուցիչ շահույթ։

Սոսը հաշիվ է տալիս. ցեխի կոլեկտիվն աշխատում է առանց տեխնոլոգիական ռեժիմների խախտման։ Շատ հազվագյուտ են դարձել կոլեկտիվի անդամների կողմից աշխատանքային կարգապահության խախտման և գործարանից դուրս հասարակական կարգի խախտման դեպքերը։ Ոչ ոք չի հիշում, թե վերջին անգամ երբ է կոլեկտիվը, պարտիական կազմակերպությունը քննության առել կենցաղում, ընտանիքում կոլեկտիվի այս կամ այն անդամի վատ վարքի կամ հարբեցողության, խուլիգանության հարցը։ Կոլեկտիվ այցելությունները կինո, թատրոն, մայրաքաղաքի տեսարժան վայրեր, ինչպես նաև էքսկուրսիաներ, դժբախտության մեջ ընկած ընկերոջը շտապ օգնություն ցույց տալը, նորեկին ուսուցման գծով անհատական օգնություն ցույց տալը՝ այդ ամենը այստեղ կարծես դարձել է կամ դառնում է պահանջ, կյանքի անխախտելի օրենք, որն ասում է՝ «մեկն ամենքի, ամենքը մեկի համար»։ Եվ այդ ամենում վճռական դեր է խաղում պարտիական կազմակերպությունը, որը բանավոր ու դիտողական ագիտացիան, քաղխմբակների պարապմունքները, պատի թերթերի աշխատանքը, հասարակական կազմակերպությունների գործունեությունը ճիշտ կերպով ուղղում է գլխավոր նպատակին՝ ցեխի բոլոր աշխատողների մեջ կոմունիստական հասարակության անդամների բարձր հատկությունների արմատավորմանը։ Այդպիսի պայմաններում մարդիկ աճում են ու դառնում պատրաստված կադրեր։ Այդպիսի կադրերից է Վազգեն Ազարյանը, որը վերջերս առաջ քաշվեց որպես պոլիվինիլացետատ գործարանի գլխավոր ինժեներ։

... Սոսը հաշիվ է տալիս։ Նրա զեկուցման մեջ կա նաև սկզբունքային սուր քննադատություն։ Չէ՛ որ ձեռք բերածը կարելի է գերազանցել, կարելի է ավելի շատ անել, առաջիկայում դեռ շատ բան կա անելու։ Բոլոր թերությունները չէ, որ վերացվել են մինչև վերջ։ Կան դեռևս նյութերի գերածախսի, խոտան արտադրանքի թողարկման առանձին դեպքեր։ Եղել է նաև մի դեպք, երբ նորեկներից մեկը աշխատանքային կարգապահության կոպիտ խախտում է թույլ տվել։ Դեռ շատ բան պետք է արվի, որպեսզի ցեխի բոլոր տեղամասերում ապահովվի արտադրության բարձր կուլտուրա։ Այդ և մյուս թերությունների մասին են խոսում նաև հանդես եկող կոմունիստները։ Թարմ, համարձակ, երիտասարդ են հնչում նրանց ձայները։

— Մեր ցեխում այժմ գլխավորը պլանները գերակատարելը չէ, ոչ էլ, թերևս, պայքարը արտադրանքի բարձր որակի համար,— ասում է Վազգեն Ազարյանը։— Կարծում եմ, որ դուք ինձ ճիշտ կհասկանաք։ Ես այդպես եմ ասում, որովհետև մենք արդեն սովորել ենք, շատ լավ ենք սովորել մշտապես գերակատարել արտադրական պլանները, ապահովել արտադրանքի բարձր որակը։ Գլխավորը՝ մարդկանց դաստիարակությունն է։ Այդ գործում դեռ մեր բոլոր պլանները, միջոցառումները չէ, որ իրականացվում են նպատակասլաց կերպով։ Ագիտատորների աշխատանքը, քաղխմբակների պարապմունքները և մասսայական-քաղաքական մյուս միջոցառումները հաճախ ձևական բնույթ են



կրում, իրենց նպատակին չեն հասնում, աչքի չեն ընկնում խոր բովանդակությամբ։ Ներկայումս կառուցվում է 1—5 նոր ցեխը, մոնտաժվում է և շահագործման է հանձնվելու քլորաբենզոլի նոր զորեղ ագրեգատը, քլորաջրածնի սինթեզի բաժանմունքում փորձարկվում է արհեստական ջերմահեռացուցիչ ունեցող սինթեզի հնոցի նոր կոնստրուկցիան, որի նպատակն է երկուս-երկուս և կես-անգամ ավելացնել հնոցային ագրեգատի արտադրողականությունը։ Մեզ հարկավոր են նոր կադրեր։ Նրանց պատրաստումն ու դաստիարակությունը պարտկազմակերպության առաջնակարգ խնդիրն է։

Կոմունիստներ Ս. Վարդանյանը, Գ. Հովհաննիսյանը, Ա. Շահբազյանը, Է. Մելքոնյանը, Մ. Բախշինյանը, Ա. Ասատրյանը իրենց քննադատությունն ուղղեցին այն առանձին անկարգությունների դեմ, որոնք, դժբախտաբար, դեռևս գոյություն ունեն ռեսպուբլիկայի մայրաքաղաքում։ Նրանք, իրավամբ, առանձնապես մեծ զայրույթով էին խոսում գործարանի բնակելի մասսիվի 3-րդ մասի հակասանիտարական վիճակի մասին, սուր քննադատության ենթարկեցին կոմունալ կենցաղային սպասարկման, առևտրական ցանցի, միլիցիայի, դատախազության և դատական մարմինների առանձին աշխատողների։ Դա բնական է և ճիշտ։ Չէ՛ որ մարդիկ աշխատում են կոմունիստաբար, ուժ ու եռանդ չեն խնայում բազմապատկելու Հայրենիքի հարստությունն ու հզորությունը, իսկ աշխատանքից հետո իրենց բնակավայրում թաղամասում տեսնում են այլանդակ երևույթներ, որոնց դեմ դեռևս թույլ պայքար է մղվում։

Չհանգստանալ ձեռք բերածով, դեռ շատ գործ պետք է անել առաջիկայում՝ այսպիսի հետևություն արեցին 1—5—6 ցեխի կոմունիստները։ Այդպիսի անհանգիստ ձայներ լսվեցին բոլոր ցեխերի պարտկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, այդպես էին խոսում գործարանային պարտկազմակերպության կոնֆերանսի պատգամավորները, այդպես է մտածում Կիրովի անվան գործարանի կոմունիստների ստվար բանակը։ Այլ կերպ չի էլ կարող լինել. չէ՞ որ շատ քիչ ժամանակ է մնացել մինչև համագումարի բացման օրը։ Հարկավոր է մոբիլիզացնել բոլոր ուժերը, նշանակալի նոր գործեր կատարել, որպեսզի ապահովել համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական բարձր պարտավորությունների կատարումը։ Դրան, անկասկած, կնպաստի գործարանի բոլոր աշխատողների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը, որն ավելի է բարձրացել ՍՄԿԿ նոր Ծրագրի և Կանոնադրության նախագծերի ուսումնասիրության ու քննարկման ընթացքում։

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

# ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ՊԱՏՎԻ ԳՈՐԾԸ

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, յոթնամյակի առաջադրանքներն անթերի կատարելու գործում վճռական դեր է վիճակված տեղական Սովետներին, որպես պետական ներքին և ամենամասսայական կազմակերպություններ։

Շամշադինի շրջանում, տեղական Սովետների վերջին ընտրությունների ժամանակ, շրջանային Սովետի դեպուտատներ են ընտրվել 56, գյուղական Սովետների դեպուտատներ՝ 434 ընկերներ։ Տեղական Սովետներում հիմնականում ընտրված են մարդիկ, որոնք սերտորեն կապված են արտադրության հետ և անմիջականորեն աշխատում են գյուղատնտեսության բնագավառում։ Միայն գյուղական Սովետների դեպուտատներից 303—ը աշխատում են կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Նրանք, ինչպես նաև տեղական Սովետների բոլոր դեպուտատները ստեղծագործական նախաձեռնություն են հանդես բերում անթերի կատարելու յոթնամյա պլանով նախատեսված սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման առաջադրանքները։ Դեպուտատներն ապրելով հարազատ գյուղում ու ավանում, գործելով կոլտնտեսությունում ու սովխոզում, ջանասիրաբար զբաղվում են անասնաբուծության, ծխախոտագործության, այգեգործության զարգացման, բնակչության կուլտուրական ու առողջապահական սպասարկման հարցերով։

Ինչպես շրջանային, այնպես էլ տեղական Սովետները, նրանց մշտական հանձնաժողովները ակտիվորեն մասնակցում են կոլտնտեսությունների արտադրական պլանների կատարմանը։ Տեղերում կարգ է սահմանվել՝ կոլտնտեսությունների արտադրական պլանների հաստատումը մինչև շրջանային վերադաս օրգաններին ներկայացնելը քննարկել գյուղական Սովետների գործադիր կոմիտեների նիստերում։ Գյուղական Սովետների դեպուտատները լավ տեղյակ լինելով իրենց բնակավայրի ու կոլտնտեսության պայմաններին և հնարավորություններին, արտադրական պլանները քննելիս արժեքավոր առաջարկություններ են անում։

ՍՄԿԴ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումների կենսագործման ուղղությամբ լուրջ անելիքներ ունեն գյուղական Սովետների մշտական հանձնաժողովները։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այնտեղ, որտեղ հանձնաժողովները հանդես են բերում ստեղծագործական նախաձեռնություն և խորամուխ են լինում տնտեսական հարցերի լուծմանը, շոշափելի արդյունքի են հասնում։

Վերին Կ. Աղբյուրի գյուղական Սովետի գյուղատնտեսական մշտական հանձնաժողովը, մտահոգվելով կոլտնտեսության կարտոֆիլի սերմնաբուծության բարելավման հարցով, դեռ անցյալ տարի պարզեց, որ կարտոֆիլի սերմը



վարակված է հիվանդություններով։ Հանձնաժողովի խորհրդով կոլտնտեսության վարչությունը ձեռք բերեց էլիտային սերմ։ Ընտիր սերմի և ցանքի լավ մշակման շնորհիվ պլանով նախատեսված 85-ի փոխարեն յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 250 ցենտներ կարտոֆիլ։ Նույն գյուղատնտեսական մշտական հանձնաժողովի նախաձեռնությամբ և խորհրդով կոլտնտեսությունում անցյալ տարի եգիպտացորենի ցանքը և մշակությունը կատարվեց մեքենաներով։ Արդյունքը եղավ այն, որ տնտեսվեց բավականին աշխօր և պլանավորված 35 ցենտների փոխարեն հեկտարից ստացվեց 50 ցենտներ հատիկի բերք։

Շրջանային Սովետի գործադիր կոմիտեի պլանային հանձնաժողովը օգնում է կոլտնտեսություններին անհրաժեշտ ուղղումներ մտցնելու յոթնամյա պլանում, ճիշտ զուգակցելու տնտեսության տարբեր ճյուղերի զարգացումը, ավելի ռացիոնալ օգտագործելու հողային տարածությունները։

ՍՄԿԴ Հունվարյան պլենումի որոշումներից հետո պլանային հանձնաժողովի անդամները մեկնել են կոլտնտեսություններ, ուսումնասիրել նրանց հնարավորությունները, հաշվի առել կոլտնտեսականների առաջարկությունները և տեղում օգնել տնտեսական տարվա պլանների ճիշտ կազմելուն։ Իհարկե, պլանային հանձնաժողովը եթե հույս դներ միայն իր սեփական ուժերի վրա, չէր կարող կատարել իր առջև դրված խնդիրները։ Դրա համար էլ շրջանային Սովետի գործկոմը խորհուրդ տվեց պլանային հանձնաժողովին՝ այդ գործում լայն կերպով ընդգրկել կոլտնտեսությունների մասնագետներին, պետական բանկի բաժանմունքի աշխատակիցներին, շրջանային և գյուղական Սովետների դեպուտատներին ու կոլտնտեսային ակտիվին։ Եվ իրոք, պլանային հանձնաժողովը, հենվելով նրանց վրա, հսկայական աշխատանք կատարեց յուրաքանչյուր տնտեսության ռեզերվների և հնարավորությունների հայտաբերման ուղղությամբ։ Գործի այդպիսի կազմակերպումը պլանային հանձնաժողովին հնարավորություն տվեց ուշադիր և մանրակրկիտ կերպով նայել յուրաքանչյուր կոլտնտեսության յոթնամյա պլանը, նրանց խորհուրդ տալով՝ պլանների մեջ անհրաժեշտ ուղղումներ մտցնելու համար։ Կարելի է հաստատ ասել, որ շրջանի ամեն մի կոլտնտեսություն այժմ ունի հանգամանորեն մշակված, տնտեսապես հիմնավորված յոթնամյա պլան։

ՍՄԿԴ Կենտկոմի Հունվարյան պլենումից հետո շրջանային Սովետի գործադիր կոմիտեի գյուղատնտեսական մշտական հանձնաժողովն ավելի ակտիվ մասնակցություն է հանդես բերում ծխախոտի, հացահատիկի, կարտոֆիլի, խաղողի, բանջարաբոստանային և կերային կուլտուրաների արտադրության ավելացման, հանրային անասնապահության զարգացման գործին։

Երբ աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործկոմը որոշեց գարնան-գյուղատնտեսական աշխատանքների հարցը մտցնել շրջանային Սովետի սեսիայի քննարկմանը, մշտական հանձնաժողովը եռանդուն կերպով ձեռնամուխ եղավ այդ հարցի ուսումնասիրմանը և առաջարկությունների կատարմանը։ Հանձնաժողովի բոլոր անդամները եղան տեղերում, մանրամասն ծանոթացան գործերի վիճակին, օգնեցին թերությունների վերացմանը։ Կարևորն այն է, որ հանձնաժողովն իր անդամներից բացի, այդ գործին ներգրավեց ագրոնոմների, ինժեներների, զոոտեխնիկների, շրջանային և գյուղական Սովետների դեպուտատների և ակտիվ կոլտնտեսականների։ Հարցը բազմակողմանիորեն նախապատրաստելու շնորհիվ հանձնաժողովի առաջարկները շրջանային Սովետի որոշման հիմք հանդիսացան։ Այդ որոշման կա-

տարման շնորհիվ գարնան-գյուղատնտեսական աշխատանքները կատարվեց բարձր կազմակերպվածությամբ և ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում։

Շրջանային Սովետի գյուղատնտեսական մշտական հանձնաժողովը իր հիմնական խնդիրը համարում է այն, որպեսզի բոլոր տնտեսություններում կազմակերպական աշխատանքը զուգակցվի առաջավոր փորձի և գիտության նվաճումների ներդրման հետ։ Այժմ այդ աշխատանքների համար ստեղծված են ավելի նպաստավոր պայմաններ։ Գյուղատնտեսական օրգանների վերակառուցումը, սովխոզի բազայի վրա շրջկենտրոնում փորձացուցադրական տնտեսության կազմակերպումը մշտական հանձնաժողովին հնարավորություն է տալիս ավելի ակտիվ կերպով մասնակցելու առաջավոր փորձի տարածմանը։

Պարտիայի Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումների կատարման գործում կարևոր նշանակություն ունի տեղական Սովետների նախաձեռնությունը, դեպուտատների առաջավոր դերի ապահովումը կոլտնտեսային արտադրության մեջ։ Երբ դեպուտատները նախաձեռնող են և ակտիվորեն մասնակցում են տնտեսական միջոցառումների մշակմանը, աշխատանքում ցույց են տալիս անձնական օրինակ, հասնում են մեծ ու ցանկալի արդյունքների։

Նորաշենի գյուղական Սովետը, նրա գյուղատնտեսական մշտական հանձնաժողովը, կոլտնտեսության վարչության հետ միասին, ուսումնասիրելով ՍՄԿԿ Հունվարյան պլենումի որոշումները, գտան, որ իրենց մոտ եղած ռեզերվները օգտագործելու միջոցով կոլտնտեսությունը կարող է 1961 թվականին արտադրել 1000 ցենտներ միս, 4050 ցենտներ կաթ, 100 հազար հատ ձու, 52,5 ցենտներ բուրդ։ Եվ այժմ Նորաշենի կոլտնտեսության կոմունիստները, կոմերիտականները, գյուղական Սովետի դեպուտատները, ամբողջ ակտիվը պայքարում են պատվով կատարել սոցիալիստական մրցությամբ վերցրած իրենց պարտավորությունները։ Դեպուտատներ՝ Վարդանուշ Աբրահամյանը, Մելիք Աթոյանը, Արևհատ Գրիգորյանը, Զարիկ Խանաղյանը, Շուշիկ Աթոյանը, Արփիկ Փայտյանը արտադրության առաջավորներ են։ Սոցիալիստական պարտավորություններն անթերի կատարելու համար նրանք բազմիցս արժանացել են գովասանքի և պարգևատրման։ Լավ են աշխատում Ղրղիի, Թովուզի, Այգեձորի գյուղական Սովետները և նրանց ակտիվը։ Ղրղի գյուղից շրջանային Սովետի 7 և գյուղական Սովետի 50 դեպուտատներից 40-ն աշխատում են արտադրության մեջ։ Նրանցից Պայծառ Վիրաբյանը, Հայկուշ Դալլաքյանը գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու գործում լավագույն օրինակներ են ցույց տալիս։ Շրջանային Սովետի դեպուտատներ Վարդանուշ Աբրահամյանը անցյալ տարի իր խնամած յուրաքանչյուր կովից ստացավ 2127, իսկ Լուսիկ Մանուչարյանը, Մարուսյա Զոհրաբյանը՝ 2000—2100 կիլոգրամ կաթ։ Խոզապահ Հովսեփ Ջուլհակյանը խոզերին լավ խնամելու ու բտելու շնորհիվ պետությանը վաճառել է 20 տոննա միս։

ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումը առանձնակի ուշադրություն դարձրեց ոռոգվող ցանքերի տարածությունն ընդարձակելու վրա, որը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու գործում վճռական դեր է խաղում։ Մեր շրջանում այս տարի հսկայական միջոցներ են հատկացվել ջրային շինարարությանը, որի լրիվին օգտագործման համար մեծ աշխատանք են տանում տեղական Սովետները։ Արդեն շահագործման են հանձնված Հախումի ջրամբարն ու Այգեձորի ջրհան կայանը։ Ուժեղ թափով



աշխատանք է տարվում, որպեսզի այս տարի ավարտվի Պառավաքարի ջրանցքի երկարացումը։

Չնայած այս տարվա բնակլիմայական խիստ անբարենպաստ պայմաններին, բարձր կազմակերպվածությամբ սկսվեց գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների գարնան ցանքը, մեծ հոգատարությամբ կատարվեց ցանքատարածությունների ու այգիների մշակությունը, ծխախոտի պլանտացիաներում ուժեղ թափով առաջ են գնում քաղհանի և փխրեցման աշխատանքները։ Առատ բերք է սպասվում շրջանի խաղողի և պտղատու այգիներից։ Ագրոտեխնիկական կանոնների համաձայն են ընթանում այգիների մշակության և խնամքի աշխատանքները։

Թվերը համոզիչ կերպով խոսում են այն մասին, որ այս տարվա վեց ամիսների ընթացքում անասնաբուծության բնագավառում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները հաջողությամբ են կատարվել։ Անցյալ տարվա համեմատությամբ ավելացել է անասնապահական մթերքների համախառն արտադրանքը, անասունների գլխաքանակը, խիստ կերպով նվազել է անասունների կորուստը։ Շրջանի կոլտնտեսությունները պատվով են կատարում պետությանը անասնաբուծական մթերքներ վաճառելու պլանը։ Վեց ամսում մսի տարեկան վաճառքի պլանը կատարված է 42,7 տոկոսով, կաթինը՝ 69,2, ձվինը՝ 130,5 տոկոսով։ Ջինարիի, Այգեձորի, Ջինչինի և մի քանի այլ գյուղերի կոլտնտեսություններ անասնապահական մթերքների վաճառքի տարեկան պլանները կատարել են 70—80 տոկոսով։

Կազմակերպական աշխատանքը միշտ եղել է Սովետների ուշադրության կենտրոնում։ Յուրաքանչյուր Սովետի, նրա գործադիր կոմիտեի, մշտական հանձնաժողովի և դեպուտատի աշխատանքի չափանիշն է այն, թե նա ինչպես է կազմակերպում աշխատավորների պայքարը պարտիայի և կառավարության որոշումները, պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները անթերի կատարելու համար։

Շրջանային ու գյուղական Սովետները, նրանց հանձնաժողովներն ու դեպուտատները այժմ կատարում են ամեն ինչ, որպեսզի նորանոր հաջողությունների հասնեն սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման և յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում։ Այդ պայքարում ձեռք բերված հաղթանակներով էլ նրանք կդիմավորեն մեր փառապանծ պարտիայի XXII համագումարը։

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Աշխատավորների դեպուտատների
Շամշադինի շրջանային Սովետի
գործադիր կոմիտեի նախագահ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՔՈՒՎԵՅԹ

Արաբական Արևելքը մեր հողագնդի այն շրջաններից է, որտեղ, երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից ի վեր, տեղի են ունենում բուռն իրադարձություններ: Այդ իրադարձությունների հիմնական բովանդակությունը պայքարն է գաղութատիրության դեմ: Ազգային-ազատագրական հուժկու շարժումների շնորհիվ գաղութային լուծը թոթափեց և ինքնուրույն զարգացման ուղին բռնեց Արաբական Արևելքի երկրների մեծ մասը: Դա իմպերիալիզմի գաղութային սիստեմի խոշորագույն պարտություններից մեկն էր, որը մեծ չափով խորացրեց այդ սիստեմի ճգնաժամը:

Սակայն գաղութային տերությունները դեռևս պահպանում են որոշակի դիրքեր: Կան երկրներ, որոնք դեռ ձեռք չեն բերել քաղաքական անկախություն: Դեռ ավելին, իմպերիալիստական տերությունները պատեհ առիթը բաց չեն թողնում, որպեսզի կրկին վերականգնեն իրենց նախկին դիրքերը և արդեն անկախություն ձեռք բերած ժողովրդի վզին նորից փաթաթեն գաղութային ռեժիմը: Դրա մասին են վկայում Քուվեյթի դեպքերը:

Քուվեյթը[1] արաբական մի փոքր իշխանություն է: Այն գտնվում է Արաբական թերակղզու հյուսիս-արևելյան մասում: Նրա հարևաններն են արաբական երկու պետություններ՝ Սաուդյան Արաբիան և Իրաքը: Քուվեյթի և Սաուդյան Արաբիայի սահմաններում գտնվում է Չեզոք գոտին: Քուվեյթին են պատկանում Պարսից ծոցում գտնվող Բուբիյան, Վարբա և Ֆայլակա փոքր կղզիները: Նրա ընդհանուր տարածությունը 21 հազ. քառ. կմ է, իսկ բնակչությունը մոտ 250 հազար: Մայրաքաղաքը Էլ-Քուվեյթն է, որն ունի մոտ 130 հազար բնակիչ: Ազգաբնակչության մեծ մասը արաբներ են:

Քուվեյթը միշտ էլ կովախնձոր է եղել մեծ պետությունների համար: Դրա պատճառը նրա ստրատեգիական կարևոր դիրքն է: Դեռևս 1871 թվականին այն գրավեց Թուրքիան, ապա նրա համար պայքար ծավալվեց 19-րդ դարի երկու հզոր պետությունների՝ Անգլիայի և Գերմանիայի միջև: Գերմանիան ձգտում էր Բեռլին-Բաղդադ երկաթուղագիծը հասցնել մինչև Քուվեյթ: Դա մեծ վտանգ էր ներկայացնում բրիտանական տիրապետություններին Պարսից ծոցի և Հնդկական օվկիանոսի շրջանում և Անգլիան ամեն միջոցներով դիմադրում էր գերմանական պլանների իրագործմանը:

1899 թվականի հունվարին Անգլիային հաջողվում է Քուվեյթի շեյխ Մուբարակի հետ կնքել մի պայմանագիր, որով Քուվեյթը վերածվեց Անգլիայի պրոտեկտորատի:

Առաջին համաշխարհային պատերազմից հետո Անգլիան դարձավ Քուվեյթի լիիրավ տերը:

Քուվեյթը հետամնաց ագրարային երկիր է: Գյուղատնտեսության մեջ տիրապետողը ֆեոդալական և տոհմատիրական-ցեղային հարաբերություններն են, որոնք, սակայն, արդեն քայքայման պրոցեսում են գտնվում: Գյուղատնտեսության հիմնական ճյուղը էքստենսիվ անասնապահությունն է (ուղտ, ոչխար, այծ և այլն): Անասունների մեծ մասը պատկանում է շեյխերին: Ցեղերի շեյխերին, ինչպես նաև առևտրականներին է պատկանում հողերի մեծ մասը: Հողագործությամբ զբաղվում են գլխավորապես Ջահրայի շրջանում: Հիմնականում մշակում են ցորեն, գարի, լոբազգիներ, ծխախոտ, բանջարեղեն և այլն:

Քուվեյթի բնակչության մի մասը զբաղվում է ձկնորսությամբ, մարգարիտներ որսալով, արհեստներով և այլն: Ազգաբնակչության մոտ մեկ քառորդը դեռևս քոչվորական կյանք է վարում:

Քուվեյթում նոր է ձևավորվում բանվոր դասակարգը: Նա դեռևս փոքրաթիվ է ու թույլ: Բանվորները հիմնականում զբաղված են նավթարդյունաբերության, ինչպես նաև Էլ-Քուվեյթի նավահանգստում կատարվող բեռնաթափման մեջ: ՄԱԿ-ի 1953 թ. տվյալներով Քուվեյթի նավթարդյունաբերության մեջ զբաղված են եղել 8—10 հազար բանվոր:

Քուվեյթի էկոնոմիկան միակողմանի է զարգացած, որը գաղութատիրության արդյունք է: Անգլո-ամերիկյան իմպերիալիստները թույլ չեն տալիս նրա էկոնոմիկայի բազմակողմանի և հատկապես արդյունաբերության զարգացում: Քուվեյթը հանդիսանում է իմպերիալիստական պետությունների հումքային կցորդ և ավելի ու ավելի է ներգրավվում տնտեսության կապիտալիստական համաշխարհային սիստեմի մեջ: Անգլիայի և ԱՄՆ-ի մոնոպոլիաները շահագրգռված են Քուվեյթի էկոնոմիկայի միայն մի ճյուղի՝ նավթարդյունաբերության զարգացմամբ: Երկրի հիմնական նավթաբեր շրջաններն են՝ Բուրգան, Մագվան և Ահմադին: Նավթը Քուվեյթի գլխավոր հարստությունն է, որը գտնվում է անգլիական և ամերիկյան մոնոպոլիստական ընկերությունների ձեռքին:

Նավթի շուրջը ուժեղ պայքար ծավալվեց 30-ական թվականներին: Հիմնական հավակնորդները Անգլո-իրանյան նավթային ընկերությունը և ամերիկյան «Գալֆ Օյլ կոմպանի»-ն էին: 1934 թ. դեկտեմբերին վերոհիշյալ երկու ընկերությունների միջև կնքվեց համաձայնագիր Քուվեյթի նավթը շահագործելու վերաբերյալ: Ստեղծվեց «Քուվեյթ օյլ կոմպանի»-ն, որի բաժնեթղթերն իրար միջև հավասար բաժանեցին վերոհիշյալ երկու ընկերությունները: Նույն թվականին «Քուվեյթ օյլ կոմպանի»-ն Քուվեյթի շեյխից 75 տարով նավթ հետախուզելու և արդյունահանելու կոնցեսիոն իրավունք ստացավ:

Քուվեյթի նավթի պաշարները հաշվվում են մոտ 8 միլիարդ տոննա: Դա երկու անգամ ավելի է ԱՄՆ-ի նավթի պաշարներից և կազմում է կապիտալիստական աշխարհի նավթային հետազոտված պաշարների 25 տոկոսը:

Քուվեյթի նավթն օգտագործվում է գիշատչորեն: ԱՄՆ-ը և Անգլիան շահագրգռված են նավթի հանույթի ավելացմամբ, որովհետև Քուվեյթի նավթը էժան է: Նավթարդյունաբերության մեջ բանվորն աշխատում է 14—16 ժամ և ստանում ցածր աշխատավարձ: Ըստ որում տեղացի բանվորի աշխատավարձը 5—6 անգամ ցածր է նրա հետ աշխատող եվրոպացի բանվորի և տասն անգամ ցածր ԱՄՆ-ի նավթարդյունաբերության մեջ զբաղված բանվորների աշխատավարձից: Բացի դրանից, մինչև 1951 թ. պայմանագիրը Քուվեյթն արդյունահանվող նավթի յուրաքանչյուր տոննայի դիմաց ստանում էր մի չնչին գումար՝ ½ շիլինգ: Երբ համեմատելու լինենք Քուվեյթի նավթից և ԱՄՆ-ի նավթից ստացվող ամերիկյան նավթային մոնոպոլիաների շահույթները, ապա տեսնում ենք հետևյալ պատկերը. Քուվեյթում արդյունահանված նավթի յուրաքանչյուր տոննայից նրանք որպես շահույթ կորզում են 11,55 դոլար, իսկ ԱՄՆ-ում արդյունահանված նավթի յուրաքանչյուր տոննայից՝ 2—3 դոլար: Ահա թե ինչու անգլիական և ամերիկյան մոնոպոլիստները շահագրգռված են նավթի հանույթի ավելացմամբ, քանի որ դա նրանց բերում է առասպելական շահույթներ: ՄԱԿ-ի տվյալների համաձայն Քուվեյթում նավթ արդյունահանվել է 1946 թ.՝ 800 հազար, և 1960 թ.՝ 80 մլն. տոննա: Դրա համեմատ աճել են Քուվեյթի նավթային ընկերության եկամուտները. 1950 թ. 12 մլն. դոլար, 1955 թ.՝ 305 մլն. դոլար, 1958 թ. 415 մլն. դոլար և դրանից մի փոքր ավելի՝ 1960 թվականին: Այժմ Քուվեյթը նավթի արդյունահանմամբ կապիտալիստական աշխարհում գրավում է երրորդ տեղը՝ ԱՄՆ-ից և Վենեսուելայից հետո: Քուվեյթի նավթը արտահանվում է ԱՄՆ, Արևմտյան Եվրոպայի երկրները և հատկապես Անգլիա, որն իր նավթի կարիքների 40 տոկոսը ծածկում է Քուվեյթի նավթի հաշվին:




Իմպերիալիստական պետությունների քաղաքականությունը խոր դժգոհություն է առաջացնում Քուվեյթի ժողովրդի մոտ: Հաշվի առնելով այդ հանգամանքը, ինչպես նաև նավթի ազգայնացման համար մղվող պայքարը և դրա հետ կապված իրադարձությունները Իրանում և Իրաքում, անգլիական և ամերիկյան նավթային ընկերությունները դիմեցին որոշ զիջման: 1951 թ. դեկտեմբերի 7-ին նրանց և Քուվեյթի շեյխի միջև կնքվեց նոր կոնցեսիոն պայմանագիր, ըստ որի Քուվեյթն ստանալու էր նավթից հայթայթվող եկամուտների 50 տոկոսը, իսկ կոնցեսիոն պայմանագրի ժամկետը երկարաձգվում էր մինչև 2026 թվականը:

Ի՞նչ կերպ է Քուվեյթն օգտագործում նավթից ստացվող իր եկամուտները: Այդ եկամուտները բաժանվում են երեք հավասար մասերի: Քուվեյթի շեյխը անգլիական բանկում ունի անձնական հաշիվ: Յուրաքանչյուր տարի նավթից ստացվող եկամուտների մեկ երրորդն ավտոմատ կերպով գրանցվում է շեյխի հաշվին: Դա կազմում է նրա անձնական հարստությունը: Եկամուտների մեկ երրորդը հատկացվում է շեյխի, արքունիքի և վարչական ապարատի պահպանման, նրանց

---

[1] Քուվեյթ նշանակում է բերդ, ամրություն:

ծախսերը հոգալու նպատակին: Եվ այդ բոլորից հետո միայն մնացած մեկ երրորդը հատկացվում է շեյխության տնտեսության զարգացմանը:

Քուվեյթի բնակչության կենսամակարդակն ամենացածրերից է Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում: Սնունդը անբավարար է: Բնակչության մեծ մասը, այդ թվում և կանայք, ոտաբոբիկ են, զուրկ մարդու համար անհրաժեշտ տարրական պայմաններից: Տները կավից պատրաստված հյուղակներ են, առանց պատուհանների: Բնակչության 80 տոկոսն անգրագետ է: Ճիշտ է, տարրական դպրոցներում ուսուցումը ձրի է, սակայն աղքատների երեխաները հնարավորություն չունեն դպրոց հաճախելու, որովհետև կյանքի պայմանները ծանր են: Առողջապահության վատ դրվածքի հետևանքով Քուվեյթում բարձր է մահացության տոկոսը, իսկ կյանքի միջին տևողությունը կազմում է 30—40 տարի:

Օտարերկրյա իմպերիալիստների տիրապետությունը և կյանքի թշվառ պայմանները խոր դժգոհություն են առաջացնում երկրի ներսում, հաճախ հասցնելով բացահայտ ելույթների:

Ազգային-ազատագրական շարժումը ինչպես արաբական մյուս երկրներում, այնպես էլ Քուվեյթում ուժեղացավ հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո: Այն դարձավ ավելի կազմակերպված, նրա պահանջներն ավելի որոշակի ու արմատական: Ազգային-ազատագրական շարժումը Քուվեյթում հետևյալ նպատակներն էր հետապնդում. ա) վերացնել բրիտանական պրոտեկտորատը և Քուվեյթը հռչակել լրիվ անկախ և սուվերեն պետություն, բ) երկրի նավթային հարստությունները վերցնել պետության հսկողության տակ, գ) կրճատել ազգային հարստությունից շեյխին տրվող հատկացումները և դրանք առանձնացնել երկրի տնտեսության զարգացման համար:

1956 թվականի աշնանը Եգիպտոսի դեմ սանձազերծված եռյակ ագրեսիայի ժամանակ Քուվեյթում տեղի ունեցան հուժկու ցույցեր: Քուվեյթի աշխատավորները պաշտպանում էին եգիպտացիների արդարացի պայքարը, դատապարտում անգլո-ֆրանս-իսրայելյան ագրեսիան: Նրանք պահանջում էին դադարեցնել նավթի արտահանումը Անգլիա: Շատ ժամանակ չէր անցել այդ իրադարձություններից, երբ Քուվեյթում 1957 թ. հուլիսին տեղի ունեցան նոր ժողովրդական ելույթներ: Պատճառը անգլիական ագրեսիան էր Օմանի դեմ: Քուվեյթի ժողովուրդն իր համերաշխությունն արտահայտելով Օմանի ժողովրդին ընդդեմ անգլիական ագրեսիայի, պահանջում էր, որ անգլիական իմպերիալիզմն ընդհանրապես հեռանա արաբական աշխարհից:

Դրությունը երկրում լարվում էր: Անգլիացիների դիրքերը թուլանում էին: Նրանք 1958 թ. Քուվեյթ տեղափոխեցին լրացուցիչ ռազմական ուժեր: Բայց դա ևս չկարողացավ կանխել հակաբրիտանական շարժումը երկրի ներսում: Ազգային-ազատագրական շարժման ճնշման տակ Անգլիան հարկադրված եղավ զիջել: 1961 թ. հունիսի 19-ին նա ճանաչեց Քուվեյթի անկախությունը: 1899 թ. պայմանագիրը, որով Քուվեյթը դարձել էր Անգլիայի պրոտեկտորատ, վերացվեց: Քուվեյթը հայտարարվեց անկախ պետություն: Իրավունք ձեռք բերեց ինքնուրույն կերպով, առանց Անգլիային դիմելու և նրա համաձայնությունը ստանալու, արտաքին կապեր հաստատել յուրաքանչյուր պետության հետ, վիզաներ տալ և այլն: Բացի այդ, սկսվեց Քուվեյթի ձեռնարկությունների արաբացման պրոցեսը: Օրինակ, օրենք ընդունվեց, որ ամեն մի նոր ստեղծվող ընկերությունում ազգային կապիտալը կազմելու էր 51 տոկոսից ոչ պակաս: Ստեղծվեց արաբական նավթային ընկերություն: Այս ամենը Քուվեյթի և ընդհանրապես արաբական ժողովուրդների խոշոր հաղթանակն էր:

Թվում էր, թե Քուվեյթի անկախության հռչակումով նոր հնարավորություններ են ստեղծվում նրա ազատ զարգացման համար: Սակայն դեպքերի հետագա զարգացումը ցույց տվեց, որ Քուվեյթին անկախություն «շնորհելը» դեմագոգիկ ժեստ էր և անգլիական իմպերիալիստները հարմար առիթ էին սպասում կրկին Քուվեյթ վերադառնալու համար: Նրանց համար այդպիսի առիթ հանդիսացավ Իրաքի պրեմիեր մինիստր Քասեմի 1961 թ. հունիսի 25-ի պրես-կոնֆերանսը, որտեղ նա հայտարարեց, որ Քուվեյթը Իրաքի անբաժան մասն է և մտցվելու է նրա կազմի մեջ: Իրաքի կառավարությունն իր դիրքը հիմնավորում է նրանով, որ Քուվեյթը, երբ մտնում էր օսմանյան կայսրության մեջ, կազմում էր Բասրայի վիլայեթի մի մասը, իսկ Բասրան այժմ Իրաքի 14 լիվաներից մեկն է:

Պետք է նշել, որ Իրաքի կառավարության հավակնությունները Քուվեյթի նկատմամբ, պաշտպանություն չգտան արաբական երկրներում: Դեռ ավելին: ՄԱՌ-ում և Սաուդյան Արաբիայում Իրաքի դեմ նույնիսկ թշնամական ելույթներ տեղի ունեցան: Ինչ վերաբերում է արաբական աշխարհի դեմոկրատական ուժերին, ապա նրանք գտնում են, որ փոխադարձ տերիտորիալ պահանջներ ներկայացնելու հարցում պետք է վերին աստիճանի զգույշ լինել, այդ հարցերը պետք է լուծել խաղաղ ճանապարհով, փոխադարձ ըմբռնողության պայմաններում և առիթ չտալ իմպերիալիստական ուժերին միջամտելու արաբների ներքին գործերին: Վերջին հաշվով արաբական միասնությունը և միացյալ ճակատն ընդդեմ իմպերիալիզմի ամենակարևորն է և բոլոր



հարցերը պետք է ենթարկվեն այդ գերագույն խնդրին:

Հունիսի 26-ին երկրում մտցվեց արտակարգ դրություն և Քուվեյթյան փոքրաթիվ բանակը ռազմական դիրքեր գրավեց Իրաքի սահմանի երկայնությամբ: Բաղդադում Անգլիայի դեսպանը Իրաքի կառավարության նկատմամբ դիմեց դեմարշի, հայտարարելով, որ Մեծ Բրիտանիան ոչ մի կերպ չի կարող համաձայնվել Իրաքի կառավարության դիրքի հետ այդ հարցում: ԱՄՆ-ի կառավարությունը շտապեց հայտարարել, որ ինքը Քուվեյթը ճանաչում է որպես սուվերեն պետություն: Այնուհետև Անգլիան պատրվակ բռնելով Իրաքի զորքերի տեղաշարժը (չնայած Իրաքի կառավարության հայտարարությանը, որ զորքերի ոչ մի տեղաշարժ չի եղել) և Քուվեյթի շեյխ Աբդուլլա աս-Սալիմ աս-Սաբախի «արտակարգ և պաշտոնական խնդրանքը», իր զորքերը հուլիսի մեկին նորից մտցրեց Քուվեյթ: Շեյխի վարքագիծն այդ հարցում արաբական պրոգրեսիվ հասարակությունը դիտեց որպես դավաճանություն Քուվեյթի ժողովրդի շահերին, որովհետև նա իր երկրի դռները նորից լայնորեն բացեց արաբական ժողովուրդների դարավոր թշնամի անգլիական իմպերիալիզմի առջև:

Այսպիսով, Անգլիան օգտվելով արաբական երկրների միջև գոյություն ունեցող տարաձայնություններից և անհամաձայնություններից, ագրեսիա կատարեց Քուվեյթի նկատմամբ: Անգլիական իմպերիալիստների գործողությունները պաշտպանություն գտան ԱՄՆ-ի կողմից: ԱՄՆ-ի կառավարությունը հայտարարեց, որ ինքը կպաշտպանի Անգլիային ինչպես ՄԱԿ-ում, այնպես էլ նրա սահմաններից դուրս:

Անգլիական զորքերի, տանկերի, զրահապատ մեքենաների, ռազմական ինքնաթիռների և նավերի կրկին Քուվեյթ ներխուժելը վտանգի տակ դրեց խաղաղությունը Մերձավոր և Միջին Արևելքում: Ստեղծված կոնֆլիկտը լուծելու համար հուլիսի 2-ին հրավիրվեց ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի նիստը: Նրա հուլիսի 5-ի նիստում հանդես եկած ՍՍՌՄ ներկայացուցիչ Վ. Ա. Զորինը շարադրեց Սովետական կառավարության դիրքը այդ հարցում: Սովետական կառավարությունը գտնում է, որ Անգլիայի գործողությունները ոչնչով չքողարկված գաղութարարական ագրեսիա են արաբական երկրի նկատմամբ: Նա Սովետական կառավարության անունից Անվտանգության խորհրդից պահանջեց ձեռք առնել վճռական միջոցներ և պարտադրել Անգլիայի կառավարությանն անհապաղ իր զորքերը դուրս բերել Քուվեյթից:

Սակայն Անվտանգության խորհուրդը չգտնվեց իր բարձրության վրա: Անգլիային, ԱՄՆ-ին և Ֆրանսիային հաջողվեց տապալել ՄԱՌ-ի մտցրած բանաձևը, որը պահանջում էր անգլիական զորքերը շտապ դուրս բերել Քուվեյթից և ծագած վեճը լուծել խաղաղ միջոցներով:

Անգլիական զորքերը շարունակում են մնալ Քուվեյթում, դրանով իսկ պատճառ հանդիսանալով. որ լարվածությունը պահպանվի Արաբական Արևելքում: Արաբական երկրները իրավացիորեն գտնում են, որ անգլիական զորքերի առկայությունը Քուվեյթում վտանգ է ներկայացնում արաբական պետությունների անկախությանը և դժվարացնում է իրաքո-քուվեյթյան կոնֆլիկտի լուծումը: Նրանք պահանջում են բրիտանական զորքերն անհապաղ դուրս բերել Քուվեյթից: Տարակույս չի կարող լինել, որ Քուվեյթի ժողովրդին, արաբական մյուս ժողովուրդների և աշխարհի խաղաղասեր ուժերի օգնությամբ, կհաջողվի գաղութարարներին դուրս վռնդել երկրից, ապահովել իր երկրի անկախությունն ու սուվերենությունը:

Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# Նոր կյանքի ՁԱՅՆԸ

## ԴԺՎԱՐ ԵՐԿՈՒՆՔՈՎ

(Ակնարկ)

### 1. ՆԱԽԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ

Այսպիսին է կյանքը, ոմանք աշխարհ են գալիս ու ապրում մի ակնթարթ, բայց փայլում գիսաստղի պես, ոմանք ապրում են երկար ու շողում հանց մշտավառ աստղ, ու երկու դեպքում էլ հարատևում մեր կյանքի պատմության դյուցազնամատյանում: Ու հեռանում են թեև մեկանից, թեև մարում է կանթեղի պես կյանքը նրանց, բայց շնորհաշահ նրանց ձեռքի գործերը մնում են ու սերունդների սրտում թողնում անջնջելի հետք, անմոռանալի հուշեր ու երախտիք:

Անուննե՞ր հիշենք հիմա. ոչ, հարկ չկա: Մարտին Սեմյոնովիչը իր հուշերում...

### 2. ՄԻ ՔԱՆԻ ԷՋ ՀՈՒՇԱԳՐՔԻՑ

Իմ սեղանին դրված է բաց-կապտավուն, սովորական, գրեթե ձեռք չտված մի թղթապանակ: Այն ամուր կապված է մետաքսյա գունավոր ժապավենով և այնքան խնամքով, որ մի պահ վախենում եմ բացել: Մի քանի ամիս առաջ եմ ստացել այն: Ամեն օր որոշել եմ բացել, նայել, կարդալ, բայց ժուռնալիստական աշխատանքի առօրյա հոգսերն ու անհանգիստ վիճակը ստիպել են ձեռք չտալ այդ թղթապանակին, սպասել այն բախտավոր օրվան, երբ այլևս «վաղվա» համար գրելու բան չեմ ունենա: Զուր հույսեր: Բայց այլևս հնարավոր չէ համբերել և ահա ես բացում եմ այդ «խորհրդավոր», ինչպես թվացել է ինձ ամիսներ շարունակ, թղթապանակը:

Առաջին էջում, վերնագրի տակ, մի անկյունում համեստորեն ծվարել է հեղինակի անունը՝ Մ. Ս. Վարդանյան: Ապա մի քանի տասնյակ էջերի վրա շարադրված են իր՝ Վարդանյանի հուշերը: Հենց առաջին էջերից ես կլանվում եմ ընթերցանության մեջ և մի շնչով կարդում մինչև վերջ: Կարդում եմ ու հայացքիս դեմ հառնում են գործարանային կորպուսներ, որոնց մասին ոչ մի խոսք չկա այս հուշերում, տեսնում եմ մարդիկ՝ արևից խանձված դեմքերով ու չլապինդ բազուկներով, մտովի մտնում եմ բարձրաստիճան մարդկանց առանձնասենյակներ, որտեղ տաք վեճեր ու կրքեր են բորբոքվել...

...Հայրենական պատերազմի ծանր, դաժանորեն ծանր տարիներ: Մոսկվա, ապրիլյան ցրտաշունչ առավոտ, հեռախոսի անհանգիստ կանչ:

— Մարտին Սեմյոնովիչ, բարև ձեզ, ինչ լավ է, որ Դուք արդեն եկել եք: Ձեզ այստեղ, գերատեսչությունում, որոնում են, ինքը՝ ժողկոմն է հարցրել նույնիսկ:

— Ի՞նչ է պատահել, չեմ հասկանում...

— Շտապ հեռագիր է ստացվել Հայաստանից: Ժողկոմին խնդրում են վինիլացետատ գործարանի սարքը տրամադրել... Դուք հասկանո՞ւմ եք, թե դա ինչ է նշանակում: Ուրեմն այսքան տարիներ Ձեր ջանքերն իլուր են անցնելու, ուրեմն ձեր և մեր փայփայած երազանքը չի իրականանալու:

Ես մի պահ պատկերացնում եմ Մարտին Սեմյոնովիչ Վարդանյանի դեմքի արտահայտությունը: Այն հավանաբար եղել է գունատ, վշտահար ու հիասթափությունից անիմաստ, բայց հետո պայրույթն է պատել այդ դեմքը և նա վճռականորեն, ամեն մի բառը շեշտելով, ասել է հեռախոսի մեջ.

— Դուք գիտեք, թե մենք ինչքան ջանք ենք թափել այդ գործարանի շինարարության համար, և գիտեք, որ չէինք ցանկանա այն կորցնել: Վաղը, երբ ավարտվի պատերազմը, մեզ անհրաժեշտ կլինի ավարտել շինարարությունը և արտադրանք տալ: Իսկ այդ արտադրանքը անգնահատելի արժեք ու նշանակություն ունի մեր արդյունաբերության համար: Նրա սարքավորումները ցրել չի կարելի: Դա հանցագործություն է:

— Այո, բայց...

— Ոչ մի բայց, խնդրում եմ համոզել ժողկոմին, որ ինձ գործուղի Երևան ինքնաթիռով: Քսան օրում, թվում է, ես կկարողանամ գործերը կարգի բերել, համոզել ընկերներին...

— Գժվե՞լ եք, ինչ է: Այս օրերին Ձեզ ո՞վ ինքնաթիռ կտա...

— Կտան, պետք է տան: Նրանք, ովքեր մտածում ու պայքարում են հաղթանակի համար, մտածում ու մտահոգվում են նաև արդյունաբերության զարգացման համար: Ճիշտ է, այդ գործարանը տանկ ու ռումբեր չի արտադրելու, բայց հաղթանակից հետո ավելի մեծ նշանակություն է ունենալու մեր երկրի համար, քան ռումբն ու տանկը:

Հուշատետրի հակիրճ, ժլատ խոսքերի տակ ես կզում եմ Վարդանյանի սրտի ամեն մի զարկը, հևքը, կզում եմ, թե պատանեկան ինչպիսի եռանդով է անցնում գործի, համոզում պաշտոնակիցներին, խնդրում, ստիպում: Եվ նրան բոլորը ընդառաջում են: Ահա պատրաստ են ժողկոմի հրաժանն ու գործուղումը, օդանավակայանում «ՑԱԿ—6» ինքնաթիռի կննումն է ավարտվում ու ժողկոմի հեռագիրը թռչում է Երևան՝ «Գործարանի հարցը տեղում կլուծի մեր ներկայացուցիչը»:

1943 թվական, ապրիլ... Մոսկվայից ոչ շատ հեռու, Լենինգրադի պատերի տակ, Ռոստովից ընդամենը 60 կիլոմետրի վրա ռռնում են արկերը, ճարճատում են ավտոմատները, տանկերն են հռնդում ու ինքնաթիռները ակոսում են ծմռան ամպերից նոր մաքրվող երկնակամարը: Մեր Հայրենիքի հերոս որդիները ռազմաճակատում հաղթանակն են կոփում, թիկունքում եռում է աշխատանքը մի նշանաբանով՝

— Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար...

Ռազմաճակատում արյուն է, բոց ու ծուխ, մահ: Ու ահա այդ դժվար օրը մի ինքնաթիռ է բարձրանում օդ ու փոխանակ դեպի առաջին գիծը թռչելու, ուղղություն է վերցնում դեպի հարավ, դեպի Երևան, որտեղ պետք է վճռվի ինչ որ մի գործարանի բախտը:

Մարդիկ կան, որոնք թշնամանքով են դիմավորում այս նոր գործարանի ծնունդը, առավել ևս, արհամարհում են այն: Բայց կան մարդիկ, որոնք փայփայում են նորի ծնունդը, երազանքով ու սիրով սպասում նորեկին, որը աշխարհ կգա պատերազմի բոցերի ու ծխի միջով, բայց կգա հաստատուն քայլերով ու միանգամից առնականացած:

Ես չեմ ուզում պատմել ճանապարհի դժվարությունների մասին, ինչպես իր հուշերում արել է Մարտին Սեմյոնովիչ Վարդանյանը: Իսկական բանաստեղծի սիրով ու ճարտարությամբ է նկարագրել նա այդ ամենը, գրել է իր ապրած տվայտանքների, հաղթահարած դժվարությունների մասին: Բայց նա այդ ամենի մասին գրել է իր համար, չցանկանալով այն բաժանել ընթերցողի հետ: Ուստի ես սրբությամբ մի կողմ եմ թողնում հուշերի այդ հատվածը, թողնում եմ առանց ձեռք տալու, որպես մարդու և քաղաքացու սրտի ամենաթանկագին մասունքներ: Եթե հարկ լինի, նա ինքը այդ ամենի մասին կգրի նորից, սիրտը բացելով հակարավոր ընթերցողների առջև: Այժմ ես ուզում եմ պատմել միայն, թե ինչ տեսավ նա այդ օրը, երբ մտավ Երևան, և հանգստանալու փոխարեն, հենց կայարանից մեկնեց գործարանի համար նախատեսված հողամասը:

...Ցանկապատ: Կիսակառույց կորպուսներ, շինարարական թափուկներ՝ այս ու այնտեղ, փայտ ու կիր, ցեմենտ ու քար, լռությո՛ւն, լռությո՛ւն. խորհրդավոր լռություն, ու գլխավոր մուտքի մոտ, թերթի կոպիտ թղթով փաթաթած ծխախոտը բերանին, միայնությունից ձանձրացած մի պահակ:

— Դուք գործարանի պահապանն ե՞ք...

— Այո...

— Որտե՞ղ է դիրեկտորը...

— Ֆրոնտում...

— Բանվորնե՞րը...

— Մի մասը ֆրոնտում, մյուսները՝ չգիտեմ...

— Դիրեկտորի տեղակա՞լը...

— Հարևան գործարանում գլխավոր հաշվապահ է...

— Կարո՞ղ եք կանչել...

— Իսկույն...

Գալիս է դիրեկտորին փոխարինողը:

— Ինչպե՞ս եք դուք ձեզ հանձնված տեղամասում այսպիսի խայտառակություններ թույլ տվել ինչո՞ւ եք քանդել կորպուսների հիմքերը,— պայրացած հարցնում է Վարդանյանը:

— Դե ես ի՞նչ կարող եմ անել, ինձ կարգադրել են, հասկանո՞ւմ եք, կարգադրել են այնտեղից, վերևից...

Այո, իհարկե, Մարտին Սեմյոնովիչը լավ է հասկանում: Ժամանակն այնպիսին է, որ վերևից եկող ամեն մի թեկուզ և բանավոր խոսք ու առաջարկություն անառարկելի հրամանի և օրենքի ուժ ունի:

Եվ, զսպելով պայրույթը, Մարտին Սեմյոնովիչն ասում է.

— Ես եկել եմ Մոսկվայից, եկել եմ հենց այս գործարանի հարցով: Անմիջապես դադարեցրեք հիմքերի քանդումը, տեղամասը փակեցեք և ոչ մեկին ներս չթողնեք: Պահպանեցեք շինանյութն ու սարքավորումները, մինչև Կենտկոմից համապատասխան հրահանգ ստանալը:

Իսկ որ Կենտկոմն անշուշտ պետք է ընդառաջեր, դրանում Վարդանյանը չէր կասկածում: Չէ՛ որ այդ գործն ընթացք էր ստացել դեռևս 1935 թվականից, այն օրերից, երբ Վարդանյանի սեփական հետազոտությունները նրան և շատ նշանավոր մասնագետների բերին այն համոզման, որ Կիրովի անվան գործարանի թափուկների, տեղական հումքի և էժան էլեկտրատեխնիկայի բազայի վրա կարելի է և պետք է պոլիվինիլացետատի արտադրությունը կազմակերպել հենց Երևանում: Այնուհետև այդ հետազոտությունները դարձան առաջարկություն, դարձան որոշման նախագիծ և

տալու միութենական բարձրագույն օրգանների որոշում: Հարկավ շատ ջանք ու եռանդ էր պահանջվել այդ որոշումը հրապարակ հանելու համար, սակայն դժվարությունները մնացել էին ետևում և դարձել հուշ, իսկ ահա շինարարության կեսին առաջացել էին նոր, սպառնալից խոչընդոտներ... Եվ դարձյալ հարկ եղավ ՍՍՌՄ Քիմիական արդյունաբերության ժողկոմատի կարծիքը շարադրել տեղում, կրկին ապացուցել, թե ինչպիսի հսկայական նշանակություն ունի այն ժողովրդական տնտեսության զարգացման և, հատկապես...— բայց այդ մասին հետո: Հենց միայն այն հանգամանքը, որ պատերազմի այդ դժվարին ու դաժան պայմաններում միութենական կառավարությունը համաձայն էր շարունակել և լայն ծավալ տալ այդ գործարանի շինարարությանը, բավական էր համոզվելու, թե ինչպիսի մեծ նշանակություն ունի այն մեր երկրի համար:

Եվ, բնականաբար, հարցը դրական լուծում ստացավ: Ու մինչդեռ ռազմաճակատում ռռնում էին ռումբերը՝ մահ ու ավեր սփռելով ամենուրեք, այստեղ, Երևանի մատույցների մոտ, Արարատյան դաշտի մի փոքրիկ հատվածում վերստին սկսվեցին շինարարական վիթխարի աշխատանքներ: Բարձրացան գործարանային կորպուսները, տեղադրվեցին սարքավորումները...

Ովքե՞ր էին նոր գործարանի շինարարները: Անուննե՞ր հիշենք հիմա, ոչ, հարկ չկա: Մարտին Սեմյոնովիչը իր հուշերում նրանցից ոչ մեկի անունը չի գրել: Սակայն, եթե բացենք գործարանի պատմության տարեգրքի էջերը, շատերին կհանդիպենք: Ու ես գիտեմ, թե ինչու նա անուններ չի հիշատակել: Ի՞նչ հարկ կա հերոսներ փնտրել այնտեղ, ուր բոլորն են հերոսացել, ի՞նչ հարկ կա գովերգել անհատներին, երբ շինարարների ամբողջ մի հսկայական ընտանիք է ստեղծել այն, ինչով մենք այսօր հպարտանում ու վեհանում ենք: Ճիշտ է արել Մարտին Սեմյոնովիչը, հետևենք նրան:

Եվ ահա ես փակում եմ Մարտին Սեմյոնովիչի հուշերի ձեռագիր գիրքը: Սակայն հրաժեշտ չեմ տալիս այդ լավ, հոգատար մարդուն: Նա ինձ խնդրել է այդ ամենը կարդալուց հետո այցելել գործարան, ծանոթանալ նրա առօրյային ու նրա մարդկանց և իրեն գրել այդ մասին: Ես չեմ կարող չկատարել նրա խնդրանքը, որն արդ ինձ համար դարձել է պատվեր: Եվ գնում եմ այնտեղ...

## 3. ԳՈՐԾԱՐԱՆՆ ԱՅՍՕՐ

«Պոլիվինիլացետատ» գործարանի տեխնոլոգիական բաժնի աշխատակից, ինժեներ Միխայիլ Լորյանը բարեհամբույր, համեստ երիտասարդ է: Պարտքյուրոյից նրան հանձնարարել են ուղեկցել ինձ, ծանոթացնել գործարանի ցեխերին ու մարդկանց, բացատրել արտադրության պրոցեսները, պատմել նոր կառուցվող և ընդլայնվող ցեխերի մասին:

Եվ ահա մենք քայլում ենք գործարանի կարծես վերջ չունեցող բակով, որն ավելի շուտ շինարարական մի վիթխարի հրապարակ է հիշեցնում:

— Զարմանո՞ւմ եք,— հարցնում է ուղեկիցս,— գեղեցիկ ծառուղիներ ու նրանց կողքին՝ շինարարական փայտամածներ... իրոք զարմանալի է: Հավանաբար ոչ մի գործարան այսպիսի բախտ չի ունեցել և ոչ էլ այսպիսի ապագա ունի: Երբեմն ինձ թվում է, որ մեր գործարանի կառուցումը երբեք չի ավարտվելու, թեև ամեն տարի այն ավարտված է համարվում...

— Ինչո՞ւ,— հարցնում եմ իսկապես զարմացած:

— Ինչո՞ւ, շատ պարզ: Վինիլացետատի, պոլիվինիլացետատի արտադրությունն այնպիսի նորույթ է քիմիական արդյունաբերության մեջ, որ միշտ նորանոր, երբեկ երբեք չերազած նյութերի արտադրության հնարավորություն է տալիս: Դեռ մի նյութի արտադրությունը լիովին չյուրացրած, մեկ էլ, խնդրեմ, մեր գիտնականները մի նոր բան են հայտնագործում: Եվ ահա սկսվում է այդ նորի արտադրության համար մի նոր ցեխ կառուցվել, իսկ նախնական հումքի ցեխը, բնականաբար անհրաժեշտ է լինում ընդարձակել հումքի քայան մեծացնելու համար:

Մինչդեռ նա խոսում է, ես վերհիշում եմ մի քանի րոպե առաջ պարտբյուրոյում տեղի ունեցած պրույցը:

Գործարանի կառուցումը սկսելով Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, շինարարները նրա առաջին՝ 0—1 ցեխը շահագործման հանձնեցին 1951 թվականին: Երկու տարի անց գործարկվեց երկրորդ ցեխը, ապա աստիճանաբար շարք մտան մյուս բաժանմունքներն ու ցեխերը: «Պոլիվինիլացետատը» կառուցվեց և այսօրվա տեսքը ստացավ աստիճանաբար, քայլ առ քայլ, ինչպես ասում են՝ հսկան ծնվեց դժվար երկունքով: Սակայն այսօր էլ, թեև այն մի հսկա գործարան է, Հայաստանի քիմիական արդյունաբերության պարծանքներից մեկը, բայց դեռ շարունակում է առասպելական հսկայի պես օր-օրի աճել ու հզորանալ:

Մեր կողքին աղմկում են 0—1 ցեխի ապարատները: Արտաքուստ ոչինչ չես կարող նկատել: Հսկա ցիստերններ են, բալոններ, հարյուրավոր խողովակներ են ձգվում ցեխի մի ծայրից մյուսը, ապա դուրս գալիս ցեխից, հեռանում, ձգվում ամբողջ գործարանի տերիտորիայով մեկ ու չես կարող հասկանալ, թե որ խողովակը ուր է գնում, ինչի համար, ինչ է հոսում նրա միջով, թեկուզ մի քանի անգամ քեզ բացատրեն: Չգիտես թե ինչ պրոցեսներ են տեղի ունենում այն հսկա ցիստերններում, որոնց մեջ աղմուկ կա, կա հարյուր աստիճանից ավելի ջերմություն և ինչ որ խորհրդավոր քաոս: Ու կարծես մասնագետ ուղեկցիդ մի խոսքը քեզ բավարարում է.

— Այստեղ արտադրվում է քացախաթթու...

— Հումքը տեղակա՞ն է...

— Մի մասը՝ ոչ, ստանում ենք հեռվից՝ Կարագանդայից, իսկ մի մասը մերն է, սեփական և այնքան շատ է, որ ինչքան ուզում ես վերցրու՝ երբեք չի վերջանա:— Եվ ուղեկիցս ձեռքի լայն շարժումով ցույց է տալիս երկնքի անհունը:— Օդ, թթվածին, ահա մեր անհատնում սեփականը:

— Իսկ ինչո՞ւ Կարագանդայից և ի՞նչ,— հարցնում եմ ես:

— Ացետալդեհիդ մենք չունենք, բայց կունենանք և շուտով: Ահա, տեսնո՞ւմ եք նոր կառուցվող այդ կորպուսը: Այստեղ շուտով, մի երկու ամիս հետո, մենք կարտադրենք մեր սեփական ացետալդեհիդը և Կարագանդայի մեր ընկերներին այլևս նեղություն չենք տա:

Ապարատների աղմուկի, խտացրած օդի սուլոցի ուղեկցությամբ անցնում ենք 0—2 ցեխ: Նույն փակ ցիստերնները, նույն բալոնները, նույն ներքին, միայն մասնագետի համար հասկանալի արտադրական պրոցեսները: Ինձ այդ ամենն այնքան չի զարմացնում, որքան այն հանգամանքը, որ երկու ցեխերում էլ կարծես ոչ մի բանվոր, ոչ մի ինժեներ չի երևում: Մեքենաներն ու ապարատներն աշխատում են ավտոմատ կերպով ու բանվորական ոչ մի ձեռք լծակ ու կառավարման անիվ չի շարժում:

Ուղեկիցս բարեհոգաբար ժպտում է.

— Մեզ մոտ բոլոր բարդ պրոցեսները ավտոմատացված ու մեքենայացված են: Բանվորը գործ չունի անելու այստեղ: Մենք նրան ազատել ենք այդ ծանր պարտականությունից: Բավական է միայն, որ ամեն ցեխ ունենա երկու-երեք ապարատավար՝ մեքենաների նորմալ աշխատանքին հսկելու համար, այն էլ կառավարման վահանիկների միջոցով միայն: Իսկ վթարի դեպքում կառավարման կենտրոնական վահանը ինքը կկգուշացնի մարդկանց և կկանխի, ինչպես ասում են, փորձանքը...

Հաջորդ՝ 0—3 ցեխի մասին, որտեղ վինիլացետատից վինիֆլեքս, իսկ սրանից էլ վինիֆլեքսային լաք է արտադրվում, ես արդեն լսել եմ: Սա էլեկտրամեկուսիչներին փոխարինող այնպիսի մի լաք է, որը մեր երկրին ամեն տարի միլիոնավոր ռուբլիների եկամուտ է տալիս: Հապա, պատկերացրեք: Էլեկտրական լարը անվտանգ դարձնելու համար ռեզինի և թելի գործվածքի քանի՞ շերտով են մեկուսացնում, դրա համար ինչքա՞ն հումք, միջոցներ, ժամանակ, բանվորական ուժ է ծախսվում: Իսկ վինիֆլեքսային լաքը փոխարինում է այդ ամենին: Բավական է միայն, որ մերկ էլեկտրալարը միայն մեկ անգամ անցկացվի այդ լաքի միջով և նրա վրա նստած լաքի աննշան շերտը էլեկտրական հոսանքը հիմնավորապես կմեկուսացնի և շրջապատի համար կդարձնի միանգամայն անվտանգ:

Բայց ահա և գործարանի սիրտը՝ 0—4 ցեխը: Այստեղ են արտադրվում պոլիվինիլացետատը, պոլիվինիլբուտիրատը, պոլիվինիլացետատային էմուլսիան...

— Այս էմուլսիան մեր գործարանի մենաշնորհն է,— ասում է ուղեկիցս,— ամբողջ Միության մեջ առաջին անգամ այն մենք ենք արտադրել:

Հիրավի, ժամանակակից քիմիան հրաշքներ է գործում: Պատկերացրեք միայն պոլիվինիլացետատային էմուլսիան արդեն սկսել է ամբողջովին հեղաշրջել սոսնձային նյութերի, ներկերի, լաքերի արտադրության մինչ այժմ եղած արտադրական բոլոր մեթոդները՝ իր հայտնությամբ ամեն ինչ մղելով ետին պլան: Այդ էմուլսիան այժմ դարձել է անփոխարինելի հումք տեքստիլ, կաշեգործական, պոլիգրաֆիական արդյունաբերության մեջ և շինարարության բազմաթիվ ճյուղերում: Դրանից կարելի է ստանալ արհեստական թավիշ, կարակուլ, կաշի, կահույք, գորգեր... Մի՞թե հնարավոր է թվարկել այն ամենը, ինչ կարելի է ստանալ այս հրաշալի հումքից:

0—4 ցեխը մի այլ հումքով էլ է հպարտանում. դա, այսպես ասած, «ապագայի նյութ»-ն է՝ պոլիվինիլացետատը: Դրանից ստացվում է արհեստական մետաքսի մանրաթել, որից շուտով հատուկ մի կոմբինատ մետաքսյա պանապան կտորեղեն կարտադրի: Իսկ թե պոլիվինիլացետատից էլի ինչեր են ստացվում, դա միայն, ինչպես ասում են՝ «աստված գիտի»:

## 4. ՄԱՐԴԻԿ ԵՎ ՆՐԱՆՑ ԳՈՐԾԵՐԸ

Ընթերցողը հավանաբար օրինական հարց կտա.

— Հապա ովքե՞ր են ստեղծում այդ ամենը, ովքե՞ր են արտադրության այն հրամանատարները, որոնց ձեռքով հայրենական ժամանակակից մեքենան հրաշքներ է գործում:

Ահա և ես ցանկանում եմ թվարկել այդ մարդկանց անունները, պատմել նրանցից մի քանիսի հրաշալի գործերի մասին:

Այն օրերին, երբ մեր ամբողջ երկրով մեկ տարածվեց կոմունիստաբար աշխատելու համար կոչը, «Պոլիվինիլացետատ» գործարանում բոլորը խանդավառվեցին, բոլորը՝ վերջին օժանդակ բանվորից սկսած մինչև դիրեկտորը: Եվ դա պարզ ու հասկանալի էր: Մարդիկ աշխատում էին առանց ձեռքերը ծալելու, ստեղծագործում էին, ստեղծում, տքնում էին ու հաղթանակում, վշտանում էին անհաջողություններից, բայց չէին հուսալքվում, աշխատանքի հորձա-

հիմունքները՝ յուրաքանչյուր բանվորին ու կոլտնտեսականին» հանրամատչելի գրքույկների սերիայի մեջ պետք է նաև մտցնել ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման առանձին պրոբլեմները, տեխնիկական պրոգրեսին վերաբերող հարցերը, ինչպես նաև «յոթնամյա պլանը գործողության մեջ» թեման։ Դա հնարավորություն կտա տեսական հարցերն էլ ավելի սերտորեն կապել կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ։

Ողջունելով Հայպետհրատի խրախուսելի նախաձեռնությունը, միաժամանակ գտնում ենք, որ տնտեսագիտական հանրամատչելի գրքույկների հրատարակության գործում պետք է ավելի մեծ խստապահանջություն հանդես բերել ինչպես թեմատիկան, այնպես էլ հեղինակներ ընտրելիս։

Բ. ՄԻՐԶՈՅԱՆ

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

«Լենինյան ուղիով» ամսագրի 1961 թ. հուլիսի համարում տպագրված «Կարգապահություն և պատասխանատվություն աշխատանքում» հոդվածում բացահայտվել էին Ժողովրդական տնտեսության խորհրդի բաժինների և ճյուղային վարչությունների աշխատանքում տեղ գտած որոշ թերություններ։ Այդ առթիվ Հայկ. ՍՍՌ Ժողտնտխորհի պարտիական կոմիտեից հաղորդում են, որ հոդվածում նշված փաստերը հիմնականում համապատասխանում են իրականությանը։

Ժողտնտխորհը մշակել է մի շարք միջոցառումներ՝ պլանները չկատարող ձեռնարկությունները առաջավորներին հասցնելու, ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները բարելավելու և արտադրանքի որակը թեթև արդյունաբերության ձեռնարկություններում բարելավելու ուղղությամբ։ Պարտկոմիտեն ճյուղային վարչությունների և ֆունկցիոնալ բաժինների պարտիական կազմակերպությունների քարտուղարներին, վարչությունների և բաժինների պետերին հանձնարարել է ուժեղացնել հսկողությունը վերադաս օրգանների որոշումների կատարման վրա, բարձրացնել ապարատի աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։

Հանձնարարված է Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության պետ ընկ. Սուչինսկուն և Թեթև արդյունաբերության վարչության պետ ընկ. Դարբինյանին մշակել լրացուցիչ միջոցառումներ՝ ձեռնարկությունների ետ մնալը հաղթահարելու և արտադրանքի որակը բարելավելու ուղղությամբ։



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ջ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. Ասրյան
Սրբագրիչ՝ Ջ. Ավագյան

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—56—92

ՎՖ 10374 Պատվեր 2071 Տիրաժ 8850

Տպ. 7 մամուլ, մամուլում 68 340 նիշ։ Ստորագրված է տպագրության 10/X 1961 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԸ՝ ՈՍԿԵԽՈՒՅԶ

Արդյո՞ք կարող է բուսականությունը արդյունահանել մետաղներ։ Ընթերցողներին կարող է անմիտ թվալ այդպիսի հարցը։

Սրանից 30 տարի առաջ հետազոտողները եգիպտացորենի մոխրի մեջ հայտնաբերեցին ոսկի. սկսեցին փնտրել պատճառները։ Պարզվեց, որ այդ հազվագյուտ մետաղը եգիպտացորենը կլանել է հողից։ Բնության մեջ կան բույսեր, որոնք հավաքում են՝ սելեն, ուրան, ցինկ, պղինձ և ուրիշ շատ մետաղներ։ Այսպես՝ պղինձ և ցինկ է գտնվել մանուշակի և շինկոտիմի ծաղիկների մեջ։

Բայց քիմիական պանապան տարրեր հավաքելու տեսակետից «չեմպիոններ» են ծովերի և օվկիանոսների բույսերը, որոնք կարծեք թե քիմիական գործարաններ լինեն։ Օրինակ՝ լամինարիա գորշ ջրիմուռները հավաքում են յոդ, որից հետագայում արդյունաբերական եղանակով ստանում են բժշկական նպատակների համար այդ արժեքավոր նյութը։

Բույսերն ունեն մի այլ հատկություն ևս, որ իրենց ցողուններում հավաքում են այնպիսի մետաղներ, որոնք հազվադեպ են հանդիպում հողում։ Այսպես՝ ճակնդեղի, ծխախոտի, գայլուկի մոխիրների մեջ հետազոտողները գտել են նորագույն տեխնիկայի համար շատ կարևոր և հազվագյուտ մետաղ՝ լիթիում։

Որոշ հետազոտողներ՝ երկրաբաններ փորձում են օգտակար հանածոներ փնտրելիս օգտվել բույսերի այս արտասովոր հատկություններից։

### ՓՈԽԱՐԻՆՈՒՄ Է ՅՈԹԱՆԱՍՈՒՆ ՊԱՏՃԵՆԱՀԱՆՆԵՐԻ

Լենինգրադի տնտեսական շրջանի արդյունաբերության ցուցահանդեսում հաճախորդների ուշադրությունը գրավեց ոչ մեծ, գեղեցիկ ապարատ, որն իր ձևով հիշեցնում է տնային սառցարանի։ Դա էլեկտրալուսանկարչական պատճենահան կիսաավտոմատ «ЭФКА—1» մեքենան է, որը նախատեսված է գծագրերի, սխեմաների, էսքիզների և այլ փաստաթղթերի բազմացման համար։ Ապարատը լուսավոր երանգով թղթի կամ մոմաթղթի վրա հանում է պատճեններ։ Պատճենավորումը կարող է ունենալ ցանկացած գույնը, կախված այն բանից, ինչ գույն ենք ուզում։ Այդ ապարատը մի ժամում տալիս է 300 պատճեն և կարող է հաջողությամբ փոխարինել 70 պատճենահանների աշխատանքին։

### ԴՌՆԱՊԱՆԻ «ՕԳՆԱԿԱՆՆԵՐԸ»

Մեր քաղաքների փողոցներում շուտով կերևան յուրահատուկ մեքենաներ։ Սրանք ավլելու և լվանալու են մայթերը, հավաքելու ձյունը և այլն։ Այժմ Լենինգրադի բնակվարչության ծուլման-մեխանիկական գործարանի կոլեկտիվը կատարելագործում է տրանսպորտային-հավաքող «ТУМ—75» մեքենայի կառուցվածքը։

### ԱՎՏՈՄՈԲԻԼԻ ԱՐԱԳՈՒԹՅԱՆ ՈՐՈՇՈՒՄԸ

Լեհական միլիցիայի երթևեկության անվտանգության ծառայությունը ստացել է ավտոմոբիլների շարժման արագությունը որոշելու համար սարքեր, այսպես կոչված, արագության ռադիոլոկացիոն չափիչ։ Այդ սարքը որոշում է 400 մետր շառավիղով անցնող մեքենաների արագությունը. այն ունի ֆոտոխցիկ և ֆոտոժապավենի վրա գրառում է բարձր արագության պահը և միացնում ազդանշանը։ Սարքի չափումների ճշտությունը հավասար է պլյուս-մինուս 3 տոկոս։